


# ԼԵՆԻՆԻ ՀԱՆՃԱՐԸ ԼՈՒՍԱՎՈՐՈՒՄ Է ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԵՎ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԽԻԶԱԽՈՒՄՆԵՐԻ ՈՒՂԻՆ



ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угнов» — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## *Բովանդակություն*

ԼԵՆԻՆԻԶՄՆ Է ՄԵՐ ԴՐՈՇԸ



ՍՈՎԵՏՆԵՐԻ ՀԱՂԹԱԿԱՆ ԵՐԹՈՒՄ







# Содержание







# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՄՏՔԻ ՈՒ ԳՈՐԾԻ ՌԱՀՎԻՐԱՆ

Ապրիլի 22-ին Վլադիմիր Իլյիչ Լենինի (Ուլյանովի) ծննդյան հարյուրերորդ տարելիցն է: Անզուգական այս հեղափոխականի անվան ու դյուցազնական գործունեության հետ են առնչված սոցիալիստական կարգերի հաղթանակն աշխարհի մեկերորդ մասում, միջազգային կոմունիստական շարժման անկասելի վերելքն ու գաղութային համակարգի վերջնական փլուզումը, քսաներորդ դարի սոցիալ-քաղաքական և գիտատեխնիկական մեծագույն հեղաբեկումները:

Լինելով իր անմահ ուսուցիչների՝ Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի նախաձեռնած վեհ գործի ու գաղափարների շարունակողը և զարգացնողը, Լենինն, իր իսկ հիմնադրած և կոփած բոլշևիկյան կուսակցության շնորհիվ, աննախընթաց վարպետությամբ վարեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով ավարտված մարտերը, հաղթանակ, որով մարդկությունը թևակոխեց իմպերիալիզմի խորտակման և սոցիալիզմի հաստատման դարաշրջանը:

Մեծ Հոկտեմբերը Լենինի շուրթերով ավետեց աշխարհի կեղեքվողների վերջնական ազատագրման վառ արշալույսը:

Լենինն ամենից ճիշտ և խոր էր ըմբռնել մարքսիզմի արգասալի ոգին՝ մատերիալիստական դիալեկտիկան, մի ուսմունք, որն ուսուցում էր ո՛չ միայն բացատրել, այլև *հեղափոխել* «քար աշխարհը»: Իր բազմահարուստ գործունեությամբ նա ամենից հստակ ու ցայտուն էր մարմնավորում դավանած ուսմունքի էական հատկությունը՝ հեղափոխական *արարչագործությունը:* Տակավին շատ երիտասարդ էր նա, երբ հիմնադրեց բոլշևիկյան կուսակցությունը, պատմության ասպարեզ ... 

կան շարժման քաղաքական-կազմակերպական ամրապնդմանը կուզընթաց, նա ծավալուն պայքար մղեց բոլոր նրանց դեմ, ովքեր մարքսիզմը դիտում էին որպես քարացած մի վարդապետություն: Այս առթիվ նա գրել է. «Մենք Մարքսի թեորիան բնավ չենք դիտում իբրև ինչ-որ ավարտուն և անձեռնմխելի մի բան. ընդհակառակը, մենք համոզված ենք, որ այդ տեսությունը միայն անկյունաքարերն է դրել այն գիտության, որը սոցիալիստները *պետք է* առաջ մղեն բոլոր կողմերով, եթե նրանք չեն ցանկանում ետ մնալ կյանքից: Մենք կարծում ենք, որ ռուսաստանյան սոցիալիստների համար հատկապես անհրաժեշտ է Մարքսի տեսության *ինքնուրույն* մշակումը, որովհետև այդ թեորիան միայն ընդհանուր *ղեկավար* դրույթներ է տալիս, որոնք Անգլիայում *հատկապես* այլ կերպ են կիրառվում, Ֆրանսիայում՝ այլ կերպ, քան Գերմանիայում, Գերմանիայում այլ կերպ, քան Ռուսաստանում» (ПСС, т. 4, стр. 184):

Հիրավի, Լենինին, որպես մտածողի ու հեղափոխական գործչի, խորթ էր երևույթների և իրադարձությունների դոգմատիկ մեկնաբանությունը: Ուստի, նա միշտ կգուշացնում էր համախոհներին դոգմատիզմի դեմ պայքարելիս խույս տալ վերացարկված դրույթներից և ինքնուրույն մշակել մարքսիզմի ընդհանուր սկզբունքները՝ Ռուսաստանի կոնկրետ իրադրությունից ելնելով: Ահա թե ինչու նրան վիճակվեց ստեղծագործաբար զարգացնել և հարստացնել մարքսիզմի բաղկացուցիչ մասերը՝ քաղաքատնտեսությունը, փիլիսոփայությունը և գիտական կոմունիզմը: Այդ շնորհակալ դերը նա փայլուն կերպով կատարեց, որով և լուծվեց պրոլետարիատի ազատագրական պայքարի ամենահրատապ հարցը՝ ստեղծվեց այնպիսի կուսակցություն, որը, մարքսիզմի ոգուց ելնելով, կարողացավ անօրինակ հաջողությամբ վարել այդ պայքարը, հետևողական մարտեր մղեց բուրժուական և մանրբուրժուական բոլոր հոսանքների, օպորտունիզմի և ռևիզիոնիզմի տարատեսակությունների դեմ:

Այժմ արդեն անհնար է հերքել այն ճշմարտությունը, որ պրոլետարական հեղափոխությունների ու աշխարհը սոցիալիստորեն վերափոխող մեր դարաշրջանում մարքսիզմ-լենինիզմն է այն միակ գիտական ուսմունքը, որը լուսավորում է տառապող մարդկության՝ կոմունիզմի համաշխարհային հաղթանակին հասնելու ուղին:

Ստեղծագործաբար ընդհանրացնելով Ռուսաստանի ու Եվրոպայի հեղափոխությունների հարուստ փորձը, Լենինը դեպի կոմունիզմ ընթացող հեղափոխական գնդերին օժտեց անփոխարինելի ուղեցույցով՝ հեղափոխական ուսմունքով, որն այսօր իմպերիալիզմի դեմ պայքարելիս այնպես համարձակ օգտագործում են աշխարհի կոմունիստները:

Դիալեկտիկական մատերիալիզմը համարելով աշխարհը հեղափոխականացնող և վերակերտող հզոր միջոց, Լենինը միջազգային և ռուսական բանվորական շարժման զարգացման յուրաքանչյուր պատմական փուլը հետազոտում էր հետևողական մարքսիզմի տեսանկյունից և պատասխան տալիս ժամանակի այրող հարցերին: Վարպետորեն բացահայտելով իրական եղելությունների հակասություններն ու կապակցությունները, նա կուսակցությանը զինում էր տեսական ու գործնական պայքարի ստրատեգիական ու տակտիկական պլաններով: Այսպես, տակավին անցյալ դարի վերջերին, մշակելով Ռուսաստանի հեղափոխական դեմոկրատական վերափոխման տակտիկան, իր դասական երկում *(Ինչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ)*, Լենինը մեզ թողեց դիալեկտիկական մատերիալիզմի վարպետ կիրառման չգերազանցված օրինակ, որտեղ միաժամանակ համակողմանիորեն մշակեց մարքսիստական սոցիոլոգիայի (պատմական մատերիալիզմի) առջև ծառացած բարդ պրոբլեմները, ապացուցելով, որ պրոլետարիատն իր ազատագրական մեծ միսիան հաղթությամբ կպսակի՝ միայն բուրժուա-կալվածատիրական կարգերի հեղափոխական տապալմամբ և իշխանության *նվաճումով*:



Ռուսական առաջին հեղափոխության պարտության տարիներին, ժողովրդական հոծ կանգվածների շրջանում մեծ հետաքրքրություն առաջացավ փիլիսոփայության, կրոնի ու մարքսիստական ուսմունքի նկատմամբ,— ասում է Լենինը,— անհրաժեշտ էր պատասխանել միլիոնավոր մարդկանց հուզող հարցերին, կասեցնել կուսակցության շարքերում դրսևորված գաղափարական տատանումները, հակահարված տալ իդեալիստական ռեակցիոն հոսանքներին: Նա հանդես եկավ *Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ* փիլիսոփայական ծրագրային հետազոտությամբ, որում ո՛չ միայն փայլուն կերպով պաշտպանեց մարքսիզմի անաղարտությունը, այլև ստեղծագործաբար զարգացրեց նրա մի շարք սկզբունքային դրույթները, որոնք դարակազմիկ նշանակություն ունեցան մարդկային մտքի առաջընթացի համար:

Հայտնի է, որ անցյալ դարի վերջին և մեր դարասկզբին ֆիզիկան հարստացավ մատերիայի ու դրա շարժման նյութական նոր ձևերի հայտնագործմամբ, մի իրողություն, որը դիալեկտիկական մատերիալիզմի տեսանկյունից փիլիսոփայական խոր իմաստավորում էր պահանջում: Այդ մեծանշանակ և շնորհակալ քայլը կատարեց Լենինը, վերոհիշյալ աշխատության մեջ տալով մատերիայի փիլիսոփայական, համակողմանի սահմանումը և անվերջությունը, մատերիայի անսպառության, պատճառականության, ժամանակի ու տարածության կատեգորիաների խորագույն ընդհանրացումը: Բացի այդ, պատմական ու տրամաբանական ամրակուռ փաստարկումներով նա հերքեց փիլիսոփայության չեզոքության և անկուսակցականության թյուրըմբռնումը, շեշտելով, որ չեզոքության վահանով մշտապես հանդես են գալիս իդեալիզմի ռեակցիոն քրմերը: Դասակարգային հասարակության մեջ վերդասակարգային փիլիսոփայության որոնումը մշտապես սատարել է հետադիմական գաղափարախոսության ներկայացուցիչներին:

Հիմնավորապես քննադատելով փիլիսոփայական իդեալիզմի ու ագնոստիցիզմի իմացաբանության սխալականությունը, Լենինը դրան հակադրեց արտացոլման մատերիալիստական կենսահաստատ ուսմունքը, ընդգծելով, որ մատերիալիստական դիալեկտիկան է իմացության տեսությունը, որի միջոցով միայն հնարավոր է ճիշտ ըմբռնել բացարձակ ու հարաբերական ճշմարտությունների էությունն ու կապակցությունները, առհասարակ ճշմարտությունը, որի միակ չափանիշը պրակտիկան է: Գիտության բնագավառում Լենինի մատուցած ծառայություններից մեկն էլ դիալեկտիկայի, տրամաբանության և իմացաբանության տեսության միասնության դրույթն է, մի դրույթ, որն այնպես բեղմնավոր կերպով կիրառված է Կ. Մարքսի *Կապիտալի* հատորներում:

Հանդիսանալով մեր դարի մեծագույն դիալեկտիկը, Լենինն իդեալիզմի ու դոգմատիզմի դեմ պայքարում էր մարքսիստաբար, կյանքի իրական պահանջներից ելնելով վերլուծում էր փաստերի քաոսը, և «կոնկրետ իրադրության կոնկրետ վերլուծություն» ըմբռնումից էր հետապնդում առարկան: Այս առումով ևս նրա երկերը նման վերլուծությունների սքանչելի մարմնավորումներ են: Մշակելով և կոնկրետացնելով պատմական մատերիալիզմի *կարևորագույն պրոբլեմները*, նա եզրակացրել է, որ պրոլետարիատի հեղափոխական տակ-

տիկայի ու գործողությունների մշակումը Մարքսը կատարում էր մատերիալիստական-դիալեկտիկական իր աշխարհայեցողության սկզբունքների համաձայն, հասարակության բոլոր դասակարգերի փոխհարաբերությունների օբյեկտիվ հաշվառումից ելնելով: Ըստ որում, այդ հարաբերությունները քննարկում էր ոչ թե ստատիկ, այլ հարափոփոխ վիճակում (տե՛ս Երկեր, հ. 21, էջ 81—82):

Ելնելով հասարակական կյանքի սույն ըմբռնումից, Լենինը գրել է բազմաթիվ հետազոտություններ, որոնք սպառիչ լույս են սփռել հեղափոխության, պետության, հասարակական ֆորմացիաների, ազգային և ագրարային հարցերի, գիտության, արվեստի, կրոնի, տնտեսության և քաղաքականության հարակցությունների և այլ հանգուցային պրոբլեմների վրա: Լենինյան երկերն աչքի են ընկնում շարադրանքի հստակությամբ և հուժկու տրամաբանությամբ, փաստարկումների համոզչականությամբ և խոր ընդհանրացումներով: Այնպիսի աշխատություններ, որպիսիք են՝ *Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում, Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Պետություն և հեղափոխություն, Փիլիսոփայական տետրերը, «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ* և նրա հարյուրավոր մեծ ու փոքր հետազոտությունները մնում են սերունդներին իբրև դիալեկտիկական մտքի գլուխ-գործոցներ:

Որպես հեղափոխական մտքի ու գործի ռահվիրա, Լենինին բնորոշ էր մի երջանիկ առանձնահատկություն՝ գործունեության բոլոր մարզերում թեորիայի ու պրակտիկայի կարմանալի միասնությունը: Առաջնորդի բեղմնավոր և հերոսական կյանքի բոլոր շրջադարձերին միշտ ցայտուն է եղել խոսքի ու գործի ներդաշնակությունը և դա բխել է այն ըմբռնումից, որ թեորիայի ճշմարտացիությունը պետք է ստուգվի *պրակտիկայում:* Չէ՛ որ «մարքսիզմը դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց», սիրում էր կրկնել նա: ՍՄԿԿ, որը կյանքի է կոչվել նրա տիտանական ջանքերով, իր փառավոր գործունեությամբ հազար անգամ ապացուցել է առաջնորդի գաղափարների կենսահաստատությունը, դրանց տարածման ու արմատավորման օրինաչափությունը:

Լենինին հաջողվեց պատասխանել իր ժամանակի դժվարին հարցերին, և նա գրեց հռչակավոր *Ի՞նչ անել* աշխատությունը, որը կենդանի ձեռնարկ դարձավ հեղափոխական շարժման գործիչների համար, մի ձեռնարկ, որում ամփոփված է ռուսական և միջազգային բանվորական շարժման վիթխարի փորձի պատմա-դիալեկտիկական վերլուծությունը: Աշխարհի կոմունիստներն իրավամբ հպարտանում են այդ աշխատությամբ, որը քաղաքական կռվի բարդ դիալեկտիկան վարպետորեն կարգացնելու և իրագործելու մի բացառիկ օրինակ է, գրված մտածողի և հրապարակախոսի կրակոտ ոճով:

Սակայն կյանքի փոթորկոտ օվկիանոսը հաճախ է լենինյանների երթի առջև լուրջ արգելքներ հարուցել: Բուրժուական և մանրբուրժուական հոսանքներն ու կազմակերպությունները մշտապես խանգարել են նրան ցանկալի արագությամբ վարելու պատմության ընթացքը: Ահա թե ինչու իր մի շարք դարակազմիկ աշխատություններում՝ *Մի քայլ առաջ, երկու քայլ ետ, Սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը 1905—1907 թվականների առաջին ռուսական հեղափոխության մեջ* և այլն, Լենինը վերջնական հաշվեհարդար տեսավ օպորտունիզմի ամեն կարգի դրսևորումների հետ:

Անդուլ պրոպագանդելով այն ճշմարիտ հայացքը, որ հեղափոխական ժամանակաշրջաններում անհամեմատ աճում է պատմական պրոցեսի սուբյեկտիվ



գործոնի՝ ժողովրդական զանգվածների դերը, Լենինը գաղափարապես կոփում և կազմակերպորեն մարզում էր իր համախոհներին վերահաս հեղափոխական կռիվների համար: Նա ո՛չ միայն կազմակերպական վիթխարի ջանքերով, այլև քաղաքական մեծ մասշտաբով հետևողական պայքար էր մղում մենշևիզմի դեմ թե Ռուսաստանում և թե՝ միջազգային ասպարեզում: Պատահական չէ, որ *Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ* աշխատությունը, որն այնպես տոգորված է փիլիսոփայության կուսակցականության ոգով, ուղղված է ո՛չ միայն ժամանակի բուրժուական փիլիսոփայության ռեակցիոն հոսանքների (էմպիրիոկրիտիցիզմ, նեոկանտականություն, պրագմատիզմ, իմանենտային դպրոց), այլև մենշևիկ-լիկվիդատորների, աստվածորոնողների, «ձախ» օպորտունիստների, օտզովիստների դեմ և այլն:

Իր ողջ հասարակական գործունեության ընթացքում, Լենինը քաղաքական զոտեմարտերը զուգակցում էր գաղափարական առօրյա պայքարին, մի պայքար, որն իր տրամաբանական վախճանին հասցնելու էր կոչված միայն պրոլետարական-մարքսիստական կուսակցությունը, պրոլետարիատի դիկտատուրայի հետևողական ջատագովը: Հիրավի, չկա նրա որևէ բրոշյուր կամ գիրք, գործունեության մի դրվագ, որում ցայտուն կերպով դրսևորված չլինի մեր հանճարեղ առաջնորդի մտածողության կուսակցականության սկզբունքը փիլիսոփայության մեջ և նրա այնքան սթափ ու խորաթափանց փիլիսոփայությունը՝ կուսակցության գործունեության մեջ:

Նա, ով բացառիկ խորությամբ տեսնում էր ներկան և հավվազյուտ սրությամբ նշմարում ապագան, իր *Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա* և այլ երկերում նշեց պրակտիկ ելքը խորացող ճգնաժամից, ելք այն սպանդանոցից, որը կազմակերպված էր իմպերիալիստական տերությունների ջանքերով: Մարդկությունը կարող է մեկընդմիշտ փրկվել իմպերիալիզմի պարբերաբար պատճառած ավերումներից, եթե աշխատավորները ավազակային պատերազմը վերածեն քաղաքացիական կռվի: Մարդկության փրկության միակ ելքը՝ սոցիալիստական հեղափոխությունն է: Բացահայտելով իմպերիալիզմի ճգնաժամային զարգացման բուն նկրտումները, Լենինը շեշտեց, որ այժմ իմպերիալիզմը թևակոխել է հոգևարքի փուլը, մի փուլ, որն անխուսափելիորեն սոցիալիստական հեղափոխության սեմին է կանգնեցրել մարդկությանը:

Ելնելով իմպերիալիզմի գիտական իր ուսմունքից, տակավին 1915 թվականին՝ «Եվրոպայի Միացյալ Նահանգների լոզունգի մասին» հոդվածում, նա ի լուր մարդկության հռչակեց, թե՝ տնտեսական ու քաղաքական զարգացման անհամաչափությունը կապիտալիզմի անխախտ օրենքն է: Այստեղից հետևում է, որ սոցիալիզմի *հաղթանակը հնարավոր է* նախ մի քանի կամ նույնիսկ մեկ առանձին վերցրած, կապիտալիստական երկրում (տե՛ս Երկեր, հ. 21, էջ 435):

Պատմական վիթխարի իրադարձությունների ու բախումների հանգամանալից ուսումնասիրությունից արված սույն հետևությունը, ստեղծագործական մի նոր էջ նշանավորեց մարքսիզմի զարգացման մեջ: Այս ըմբռնումը շուտով դարձավ հեղափոխական պրոլետարիատի վճռական գործողությունների ելակետն ու հավատի աղբյուրը:

Սովետական կարգերի հաստատումը մեր երկրում մեկընդմիշտ ապացուցեց առաջնորդի այդ հետևությունը, որը բխում էր իմպերիալիզմի դարաշրջանի հանգամանալի ուսումնասիրությունից: Ուստի, օրինաչափ էր, երբ այդ գաղափարը գործնական պլատֆորմի վերածվեց Լենինի հռչակավոր *Ապրիլյան*

*թեզիսներում,* թեզիսներ, որոնք հեղափոխության հաղթանակի հնարավորության գիտակցությամբ վինեցին միլիոնավոր աշխատավորական վանգվածներին: Մոտալուտ աղետից երկրի փրկությունը տեսնելով միայն Սովետներում մեծամասնության նվաճման և բանվոր դասակարգի կողմից իշխանության գրավման մեջ, Լենինը հանձն առավ մաքառող պրոլետարիատին անհապաղ լուսաբանել պետության և հեղափոխության ուսմունքը, որի իմացությունը կենսականորեն անհրաժեշտ էր իշխանության գլուխ անցնող պրոլետարիատին: Մինչ այդ, աշխարհում ոչ ոք այդպիսի հստակությամբ, տեսական խորությամբ և գործնական եզրակացություններով չէր շարադրել մարքսիստական սոցիոլոգիայի այդ դժվարագույն պրոբլեմը: Այդ բանը հաջողվեց միայն Լենինին, որը գերադասում էր հեղափոխությունը վարել, քան այդ մասին գրել:

*Պետություն և հեղափոխություն* դասական աշխատությամբ, Վլադիմիր Իլյիչը մի անգամ ևս ընդգծեց մարքսիզմի հեղափոխական ոգին, որն ուսուցում է՝ վերջնական հաղթանակի շահերը թելադրում են ոչնչացնել բուրժուական կեղեքչական դիկտատուրան, փշրել պետական հին մեքենան, այն փոխարինելով պրոլետարիատի դիկտատուրայով, որը դեմոկրատիա է բնակչության մեծամասնության համար և կոչված է ապատագրված աշխատավորության ստեղծագործական ջանքերով առաջ մղելու կոմունիստական հասարակության կառուցման դժվարին գործը:

Սովետական իշխանության հաստատմամբ ո՛չ միայն հիմնովին փոխվեց պետության էությունն ու նպատակը, այլև դերն ու ֆունկցիան: Հաղթանակած պրոլետարիատը դաշնակցած աշխատավորության վանգվածների հետ, կազմակերպեց սոցիալիստական պլանային տնտեսություն, և հասարակական կյանքի ստեղծագործական բովում կոմունիստորեն դաստիարակեց աշխատավորական վանգվածներին: Պրոլետարիատի դիկտատուրայի ժամանակաշրջանն անդասակարգ հասարակության ստեղծման այն փուլն է, որի ընթացքում վերացնելով մարդու շահագործումը, աշխատավորները կվարժվեն երկրի կառավարման բարդ արվեստին, կսովորեն խելոք լուծելու գիտության, տեխնիկայի և կուլտուրայի զարգացման բարդ պրոբլեմները, կկազմակերպեն ու կկատարելագործեն տնտեսավարման ու բարիքների բաշխման եղանակները և կհասնեն պատմական այն պահին, երբ, Լենինի խոսքերով ասած, թեորիան դառնում է պրակտիկա, կենդանանում է պրակտիկայով, շտկվում է պրակտիկայով, ստուգվում է պրակտիկայով:

Լինելով աշխարհում առաջին պրոլետարական պետության իմաստուն հիմնադիրը, կառավարության ղեկի մոտ եղած տարիներին Լենինը վիթխարի գործնական խնդիրների լուծմանը զուգընթաց, մշակեց ու գիտականորեն հիմնավորեց սոցիալիստական հեղափոխության առջև ծառացած տեսական ու գործնական պրոբլեմները, բացահայտեց նոր արտադրահարաբերությունների ծավալման ու ամրապնդման ուղիները, նշեց աշխատավորական վանգվածների ստեղծագործական եռանդի օգտագործման մեթոդները: 1918 թ. սկզբին հրապարակված *Սովետական իշխանության հերթական խնդիրները* ծրագրային աշխատության մեջ և մի շարք այլ հոդվածներում նա Ռուսաստանի սոցիալիստական վերափոխման հիմնական հարցերը համարեց՝ աշխատանքի արտադրողականության անընդհատ բարձրացումը, սոցիալիստական տնտեսության պլանայնության կատարելագործումը, ժողովրդական բարիքների ճշգրիտ հաշվառքի ու խիստ վերահսկողության սահմանումը, դեմոկրատական ցենտրալիզմի կիրառումը տնտեսության ու կառավարման բոլոր բնագավառներում, տընտեսական հին կացութաձևերից աստիճանաբար սոցիալիզմին անցնելու պետական քաղաքականության հաստատուն կուրսի անհրաժեշտությունը:

Բարձր գնահատելով կոմունիստական աշխատանքի նախնական սաղմերի առկայությունը երիտասարդ սովետական հայրենիքում, Լենինը հանգամանորեն մշակեց երկրի էկոնոմիկայի ու քաղաքականության առնչության բարդ պրոբլեմը, շեշտեց, որ սոցիալիզմի հաղթանակի առհավատչյան մեր երկրում ենթադրում է երկու նախապայման՝ կուսակցության ղեկավար դերի անշեղ կիրառում և աշխատավոր գյուղացիության ու պրոլետարիատի դաշինքի ամրապնդում:

Հեղափոխության հաղթության երրորդ տարում հանդես գալով կոմունիստական շարժման նվաճումների դրվատմամբ, պատմության մեջ սուբյեկտիվ և օբյեկտիվ գործոնների ունեցած դերի դիալեկտիկական վերլուծությամբ, իր *«Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ* հոյակապ երկում Լենինը բացահայտեց «ձախ» օպորտունիզմի աճող վնասակարությունը, դրա դոգմատիկ, աղանդավորական և սուբյեկտիվիստական էությունը, մի անգամ ևս ընդգծելով, որ ՍՍՀՄ-ում կոմունիստների կիրառած տակտիկան օրինակ է բոլոր հեղափոխական ուժերի համար:

Պայքարելով «ձախ» և աջ դոգմատիկների դեմ, Լենինը քանիցս դատապարտել է հեղափոխության «արտածման» կամ «հրման» ավանտյուրիստական քաղաքականությունը և հիմնավորել խաղաղ գոյակցության բանական կուրսը:

Պրոֆմիութենական հարցի կապակցությամբ քննադատելով օպոզիցիայի ֆորմալիստական-սխոլաստիկ մտածելակերպն ու քաղաքական պլատֆորմը, պրոլետարիատի մեծ ուսուցիչն ընդգծեց, որ պրոֆմիությունները գերազանցապես կոմունիզմի կառուցման, սոցիալիստական տնտեսավարման և երկրի դեմոկրատիկ կառավարման վանգվածային դպրոց են: Այս կապակցությամբ անդրադառնալով կոմունիստների գործունեության գլխավոր ելակետին, նա շեշտել է. Առարկան իսկապես գիտենալու համար, հարկավոր է ուսումնասիրել և ընդգրկել բոլոր կողմերը, բոլոր կապերը, «միջնորդավորումները»: Այդ բանին մենք երբեք լիովին չենք հասնի, սակայն բազմակողմանիության պահանջը մեզ կպահպանի սխալներից և քարանալուց: Սա առաջինը: Երկրորդ, դիալեկտիկական լոգիկան պահանջում է, որպեսզի առարկան հետազոտվի իր զարգացման «ինքնաշարժման» (ինչպես մերթ Հեգելն է ասում), փոփոխությունների մեջ... Երրորդ, մարդկային ողջ պրակտիկան պետք է ներառնել առարկայի լիակատար «սահմանման» մեջ, թե՛ որպես ճշմարտության չափանիշ և թե առարկայի այն կողմերի գործնական որոշիչը, որն անհրաժեշտ է մարդուն: Չորրորդ, դիալեկտիկական տրամաբանությունն ուսուցում է, որ վերացական ճշմարտություն չկա, ճշմարտությունը մշտապես կոնկրետ է... (տե՛ս ПСС, т. 42, стр. 290):

Իր ողջ կյանքի ընթացքում Լենինը հավատարիմ մնաց մատերիալիստական մտածողության վերոհիշյալ ըմբռնմանը:

Պատմությունն ապացուցեց, որ նրա հակառակորդներից և ոչ մեկը չի ունեցել մտքի այն խորությունն ու բազմերանգությունը, որպիսին նա ուներ: Բերտրան Ռասելն իրավացիորեն ասել է. մեր դարը պատմության մեջ կմտնի որպես Լենինի ու Այնշտայնի դար, որոնց հաջողվեց ավարտել սինթեզման վիթխարի աշխատանք: Ի պատասխան բազմաթիվ կրպարտիչների, որոնք Լենինին միայն քանդող են համարում, Ռասելն ասում է, կասկածում եմ, թե կարող է լինել մի ուրիշ մարդ, որը նրա պես վերստին ամեն բան լավ կառուցեր:

Լենինը ներդաշնակ և արարչագործ խելքի տեր փիլիսոփա է: Նրա մասշտաբի պետական գործիչները,— եզրակացնում է Ռասելը,— աշխարհ են գալիս հարյուր տարին մեկ անգամ և մեկնից շատերը հազիվ ապրեն մինչև այն օրը, երբ տեսնեն նրա հավասարին (տե՛ս «Политики и писатели Запада и Востока о В. И. Ленине». М., 1924, стр. 54):

Լենինը մարքսիստական տիպի ուսյալ-քաղաքագետ էր: Իր անսպառ մտավոր հյութերը նա քաղում էր կյանքի մեծ իրադարձությունների, դասակարգային և ազգային ընդհարումների թոհուբոհի խորխորատներից և պատմական կոնկրետ հանգամանքների հետազոտությունից էր բխեցնում իր ճշմարիտ եզրահանգումները, եզրահանգումներ, որոնք թեև տարբեր կողմերով, բայց և այնպես միահյուսվում էին կուսակցության պատմական գործունեության և սեփական մտքի ստեղծագործական մտահղացումների հետ: Նրա տիտանական մտքի դրոշմն ենք տեսնում այսօր կյանքի բազմաթիվ ոլորտների վրա: Մեր դարում նա է դարձել միլիոնների մտքերի տիրակալը:

Մտքի ու գործի հեղափոխական այդ հսկան օժտված էր կատարյալ համեստությամբ և մեծ մարդուն վայել տակտով էր վերաբերվում մարդկային հոգու այնպիսի մի արատի, որպիսին գոռոզամտությունն է: Ահա թե ինչու մի առիթով նա զգուշացրել է կուսակցության ղեկավարներին՝ ոչ մի դեպքում չգոռոզամտանալ, որովհետև այդ վիճակը «բավականին հիմար, ամոթալի ու ծիծաղելի է»: Նա հիշեցնում էր, որ գոռոզամտող կուսակցությունները պատմության մեջ մեկընդմիշտ խորտակվել են (տե՛ս ПСС, т. 40, стр. 326—327):

Ուսուցելով, որ կուսակցության ձեռքը միշտ պետք է շոշափի իրականության հուժկու զարկերակը, Լենինը բավականությամբ էր կրկնում Գյոթեի թևավոր խոսքը.

*Չոր է բարեկամ ամեն տեսություն,*
*Կյանքի ծառն է միշտ դալար և սիրուն:*

Լենինի կենսանպատակը՝ կոմունիստական հասարակարգի ստեղծումը նրա գոյության իմաստն էր: Կանխազծելով երկրի սոցիալիստական կարգացման հանճարեղ պլանը, կյանքի վերջին տարիներին նա կրկին ու կրկին խորհուրդ էր տալիս կուսակցությանը՝ ամրապնդել բանվորա-գյուղացիական դաշինքը, արագ առաջ մղել երկրի ինդուստրացման գործը, զգույշ և կամավոր սկզբունքով կոոպերացնել մանր արտադրողներին, մինչև վերջ հասցնել սկըսված կուլտուրական հեղափոխությունը:

Պատմության մեջ առաջին անգամ ազգային հարցի արմատական լուծման փայլուն օրինակը տվեց Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը: Հեղափոխությունից շատ առաջ բոլշևիկների կուսակցությունը միակն էր աշխարհում, որը հանդես էր եկել ազգային հարցի հիմնավոր լուծման իր գիտական ծրագրով: «Աշխատավոր մասսաների սոցիալական հավասարությունն ու միասնությունն ապահովելու կարևոր նախադրյալը Լենինը համարում էր ազգային հարցի լուծումը: Ազգերի ինքնորոշում և իրավահավասարություն, տարբեր ազգությունների բանվորների և աշխատավորների համախմբում դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող պայքարում, սոցիալիստական ուղին բռնած ժողովուրդների քաղաքական, ռազմական ու տնտեսական սերտ դաշինք, ազգերի փաստական հավասարության ապահովում՝ համատեղ ջանքերով, նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի սպատ զարգացման միջոցով՝ ահա լենինիզմի ազգային ծրագրի սկզբունքները» (ՍՄԿԿ Կենտկոմի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ թեզիսներից):



Կուսակցությունը կոմունիստների ինտերնացիոնալ պարտքն է համարում անշեղորեն կենսագործել ազգային քաղաքականության լենինյան ծրագիրը, անհաշտ պայքար մղել նացիոնալ-ուկլոնիզմի, մեծապետական շովինիզմի, ազգային յուրահատկությունների չափազանցման ու նիհիլիզմի դրսևորումների դեմ:

Սովետական ժողովուրդների կյանքում զարգացման նոր փուլ նշանավորեց ՍՍՀՄ կազմավորումը: «Լենինի ղեկավարությամբ ստեղծվեց ՍՍՀՄ բազմազգ սոցիալիստական պետություն՝ իրավահավասար և սուվերեն հանրապետությունների կամավոր միությունը, որը կառուցված է պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով, հասարակության տնտեսական ու քաղաքական կազմակերպման միասնության վրա, գաղափարական և կուլտուրական կյանքի ընդհանրության վրա: Մեր երկրի հարյուրից ավելի սոցիալիստական ազգերի և ազգությունների համախմբում, նրանց տնտեսական և կուլտուրական բուռն վերելք, միասնական պրոլետարական գաղափարախոսության հաստատում՝ սրանք են սոցիալիզմի նվաճումներն ազգային դարավոր պրոբլեմի լուծման ասպարեզում, որն ի վիճակի չէ լուծելու ոչ մի ուրիշ հասարակարգ: ՍՍՀ Միության ժողովուրդների միաձույլ միասնությունը կոմունիստական շինարարության խնդիրների հաջող իրականացման անհրաժեշտ պայմանն են» (ՍՄԿԿ Կենտկոմի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ թեզիսներից):

Փարելով լենինիզմի դրոշին, հայ ժողովուրդը ևս ընթացավ սոցիալական ազատագրման ուղիով, դառնալով հզոր ՍՍՀՄ ազգությունների եղբայրության իրավահավասար անդամ՝ բուռն զարգացող տնտեսությամբ, ծաղկող կուլտուրայով և սովետական պետականությամբ: Հայ ժողովուրդը քաջ գիտե, որ իր պատմական նվաճումները և ազգային մեծ վերածնունդը հավերժ պարտական է Լենինի կուսակցությանը ու եղբայրական ռուս ժողովրդին: Ինդուստրիալ Սովետական Հայաստանն ապրում է այն ստեղծագործական կյանքով, որով համակված են սոցիալիստական անպարտ լագերի բոլոր ազգերն ու ժողովուրդները: Հայ ժողովուրդն այսօր լենինյան արևի ներքո, կոմունիզմի վեհ իդեալներով տոգորված կռում ու կոփում է իր երջանկությունը: Հավատարիմ Լենինի պատգամներին, Հայաստանի աշխատավորությունը հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կոմունիզմի նյութատեխնիկական հիմքերն է կառուցում: «Ինչպես նախատեսում էր Լենինը, մեր երկրում տեղի է ունենում սոցիալիստական ազգերի հետագա բարգավաճում և մերձեցում, նրանց փոխադարձ շփման ընդլայնում: Որքան սերտ է այդ շփումը, որքան բարձր համաժողովրդական խնդիրների ըմբռնումը, այնքան ավելի հաջողությամբ են հաղթահարվում տեղայնության և ազգային եսամոլության դրսևորումները: Հետևողականորեն վարելով լենինյան ազգային քաղաքականություն, կուսակցությունն անհաշտ է նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային բացառիկության և անջատվածության ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ: Նա աշխատավորներին դաստիարակում է սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրո և ազատ ժողովուրդների եղբայրության ոգով: Սոցիալիզմն ստեղծեց հայրենասիրության նոր տիպ, որն օրգանապես միաձուլված է ինտերնացիոնալիզմի հետ» (ՍՄԿԿ Կենտկոմի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ թեզիսներից):

Այժմ, լենինյան տոնական այս օրերին, երբ հանրապետության աշխատավորությունը բուռն խանդավառությամբ է ընթանում դեպի պանծալի տարելիցը, չկա առավել մեծ խնդիր, քան կուսակցության վիթխարի մտահղացումների ու

որոշումների անշեղ կենսագործումը, մեր տնտեսության և կուլտուրայի առավել արագ կարգացումը, սովետական աշխատավորության կենսամակարդակի անշեղ բարձրացումը: Սակայն այդ ամենը պահանջում են մեկնից նոր թափ հաղորդել աշխատավորության կոմունիստական դաստիարակության, նոր սերունդը լենինիզմի գաղափարներով տոգորելու մեծ գործին: Կոմունիստական հասարակությունը կառուցելու են լենինաբար գործող աշխատավորական հոծ կանգվածները՝ խիստ կարգապահությամբ և պատշաճ բանիմացությամբ: Մեր մեծ իդեալների կենսագործման ճանապարհին եղած խոչընդոտների հաղթահարումը պարտավորեցնում է անշեղորեն կենսագործել ՍՄԿԿ որոշումները և միաժամանակ չմոռանալ, որ. «Կոմունիստական աշխարհայացքի ու բարոյականության ձևավորումը կատարվում է միջազգային ասպարեզում մղվող գաղափարական շատ սուր պայքարի իրադրության մեջ: Այդ բանը պահանջում է դասակարգային գծի հետևողական կիրառում դաստիարակության հարցերում, գաղափարական դիրքերի հստակություն ու պարզություն, հեղափոխական կզոնության հետագա բարձրացում, հետևողական պայքար ապոլիտիկության, մասնավոր սեփականատիրական մնացուկների և քաղքենիական տրամադրությունների դեմ, սոցիալիզմի նվաճումների նկատմամբ նիհիլիստական վերաբերմունքի դրսևորումների դեմ, բուրժուական և ռևիզիոնիստական հայացքների ներթափանցման դեմ» (ՍՄԿԿ Կենտկոմի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ թեզիսներից):

Հայաստանի աշխատավորները բուռն եռանդով իրագործելով Լենինի պատգամները, լի են վճռականությամբ նոր թափով առաջ մղելու կոմունիզմի կառուցման վեհ գործը, խորապես գիտակցելով այն ճշմարտությունը, որ մեծ առաջնորդի «գաղափարները մարմնավորվում են կոմունիստների գործունեության մեջ, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների պայքարում սոցիալիզմի և կոմունիզմի հաղթական կարգացման գործում, մարդկության անհաղթելի սոցիալական առաջադիմության մեջ»:

Լենինի վսեմ գաղափարների արմատները մխրճված են դարերի խորքում: Նա կապրի հավերժ, քանզի նրա սխրագործությունն անբաժանելի է աշխատավոր մարդուց:





# ՍՄԿԿ ՀԻՄՆԱԴԻՐՆ ՈՒ ՄԵԾ ԱՌԱՋՆՈՐԴԸ

*Լենինը մարքսիզմի գաղափարներին զինվորագրվեց դեռ պատանեկան տարիներից և իր ողջ կյանքն ու գործը նվիրաբերեց աշխատավորության սոցիալական ազատագրության վեհ նպատակին:*

*Լենինի մեծությունը նախ և առաջ այն է, որ նա կարողացավ գիտականորեն հիմնավորել ու պաշտպանել բանվոր դասակարգի, աշխատավորների արմատական շահերը, որոշել հասարակական զարգացման պրոբլեմները համաշխարհային պատմության շրջադարձային այն փուլում, երբ հասունացել էին կապիտալիզմից հեղափոխական ճանապարհով սոցիալիզմին անցնելու Մարքսի և Էնգելսի հայտնագործած հեռանկարի պրակտիկ իրականացման պայմանները ու նախադրյալները:*

*Լենինիզմը հանդիսանալով սոցիալիստական հեղափոխության դարաշրջանի մարքսիզմը, նշանավորվեց այն պատմական իրողությամբ, որ սպառիչ պատասխան տվեց քսաներորդ դարի հարուցած հսկայական հարցերին, նշեց մարդկության առաջընթացի մայրուղին: Նրա գործը հաջողությամբ շարունակում են ՍՄԿԿ և կոմունիստական ու բանվորական մյուս կուսակցությունները: Մեր օրերում ավելի ակնառու կերպով է դրսևորվում լենինիզմի միջազգային բնույթը, ավելի ցայտուն է դառնում լենինյան գաղափարների համաշխարհային-պատմական հաղթանակի վիթխարի նշանակությունը:*

*Ստեղծագործաբար զարգացնելով գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրներ Մարքսի ու Էնգելսի անմահ ուսմունքը, ռուսական իրականության սոցիալ-քաղաքական պրոցեսների գիտական ուսումնասիրության հիման վրա, Լենինը հանգեց այն եզրակացության, որ հեղափոխության հաղթանակի համար անհրաժեշտ է բանվոր դասակարգի գաղափարապես ու կազմակերպչորեն ձևավորված ավանգարդ, մարքսիստական կուսակցություն: Միայն նման*

կուսակցության շնորհիվ էր հնարավոր ցարական կարգերի խորտակումը: Կուսակցության ստեղծման ու կազմավորման գործում Վլադիմիր Իլյիչը վիթխարի ջանքեր գործադրեց, և մշակելով բանվոր դասակարգի քաղաքական ավանգարդի գործունեության ստրատեգիան ու տակտիկան, ռուսաստանյան բանվորական շարժումը վարեց գիտական սոցիալիզմի, մարքսիզմի նշած հաստատուն հունով:

Լենինի հիմնադրած կոմունիստական կուսակցության, ռուսաստանյան երեք հեղափոխությունների քաղաքական այդ վճռական ուժի շնորհիվ միայն հնարավոր եղավ տապալել ցարիզմի ու բուրժուազիայի դիկտատուրան և ստեղծել առաջին բանվորա-գյուղացիական սոցիալիստական պետությունը Ռուսաստանում:

Անցած դարի երկրորդ կիսամյակում Ռուսաստանում զարգացող կապիտալիստական հարաբերություններն արմատական տեղաշարժեր հարուցեցին երկրի հասարակական-քաղաքական կյանքում: Բանվորների շրջանում ստեղծվեցին հեղափոխական խմբեր, հաճախակի դարձան աշխատավորների ընդվզումները տիրող կարգերի դեմ: Պլեխանովի «Աշխատանքի ազատագրության խումբը» թարգմանական և ինքնուրույն գրականության միջոցով Ռուսաստանում պրոպագանդում էր Մարքսի ու Էնգելսի հայացքները: Հեղափոխական գաղափարներին աշխատավորությանը ծանոթացնելու գործում էական դեր խաղացին նաև մարքսիստական մյուս խմբակները: Թեև սոցիալիստական շարժման ծավալմանը մեծապես խոչընդոտում էր վերասերված նարոդնիկությունը, որն իր պրակտիկ գործողություններով արգելակում էր հասարակական առաջադիմությունը, Պլեխանովը և նրա խումբը պայքարի հիմնական սլաքն ուղղեցին նարոդնիկության դեմ, բացահայտեցին վերջինիս սխալները: Բայց կապված չլինելով Ռուսաստանի բանվորական շարժման հետ, իրենց գործունեության մեջ թույլ տալով որոշակի սխալներ, նրանք իրականում չկարողացան հետևողական լինել:

Պատշաճը հատուցելով Պլեխանովի խմբի գործունեությանը և վեր հանելով նրա սխալները, Լենինը միաժամանակ ընդգծեց, որ այն տեսականորեն հիմնեց սոցիալ-դեմոկրատիան և առաջին քայլը կատարեց բանվորական շարժման ասպարեզում:

Պրոլետարիատի կուսակցության բուն հիմնադրումը Լենինին էր վիճակված: Ղեկավարելով բանվորական հեղափոխական խմբերի գործունեությունը, Իլյիչը կուսակցության ստեղծման առաջին նախապայմանը համարեց նարոդնիկության դեմ մղվելիք պայքարը: Նա գտնում էր, որ միայն նարոդնիկության գաղափարական պսակազերծման շնորհիվ, մասսայական բանվորական շարժման հետ պրակտիկ ու տեսական կապերի միջոցով է հնարավոր ստեղծել մարքսիստական հեղափոխական կուսակցություն: Քննադատելով նարոդնիկների մանրբուրժուական տեսությունների ռեակցիոն բնույթը, Լենինն ապացուցեց հասարակության զարգացման վերաբերյալ նրանց հայացքների սնանկությունը:

Նարոդնիկների գաղափարական ջախջախումը խոշոր առաջընթաց քայլ էր մարքսիստական կուսակցություն ստեղծելու ճանապարհին: Նրանց պարտությունից հետո բանվորական շարժումը ծավալվեց նոր թափով, մարքսիզմի տարածման համար ստեղծվեցին նպաստավոր պայմաններ, այն սկսեց արմատավորվել ռուսաստանյան իրականության մեջ:

Ելնելով ռուսաստանյան կյանքի խոր իմացությունից, Լենինը մատնանշեց



Ռուսաստանում հասունացող սոցիալական հեղաշրջումների օբյեկտիվ և սուբյեկտիվ գործոնները, հասարակական շարժման հեռանկարները: Իրադրությունների ու դեպքերի գիտական վերլուծմամբ նա հաստատեց, որ կապիտալիզմի կործանումը և այն հեղափոխական ճանապարհով սոցիալիստականի փոխարկելը պատմական անհրաժեշտություն է: Նա էր, որ խոր ու բազմակողմանի հիմնավորեց ռուսական բանվոր դասակարգի հեգեմոն դերը վերահաս հեղափոխության մեջ: Կուսակցության առաջնորդը, պաշտպանելով ու զարգացնելով մարքսյան ուսմունքը, նոր ուժով ընդգծեց, որ այժմ բոլոր դասակարգերից, որոնք կանգնած են բուրժուազիայի դեմ, իրապես հետևողական հեղափոխական դասակարգ է պրոլետարիատը:

Բուրժուական աշխարհում պրոլետարիատը քաղաքական ազատության և դեմոկրատական հաստատությունների համար պայքարող առաջավոր մարտիկ է, որովհետև սոցիալական ճնշումն ամենից ավելի ուժեղ է անդրադառնում նրա վրա: Դա այն պրոլետարիատն է, ինչպես նշել են գիտական կոմունիզմի հիմնադիրները, որը հեղափոխության մեջ ոչինչ չունի կորցնելու, բացի իր շղթաներից, բայց ձեռք է բերելու ամբողջ աշխարհը:

Պատմական այդ մեծ գոտեմարտում պրոլետարիատը նախ և առաջ պետք է զինված լինի հեղափոխական տեսությամբ, առանց որի չի կարող լինել և հեղափոխական շարժում: Լենինը քանիցս նկատել է, որ ռուսական սոցիալ-դեմոկրատիայի համար տեսությունն ունի առանձնահատուկ նշանակություն: Կուսակցությունը նոր էր կազմավորվում, այն դեռ լրիվ չէր ձերբազատվել բուրժուական և մանրբուրժուական հոսանքների ազդեցությունից: Ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատական շարժումն իր էությամբ լինելով միջազգային, ուներ ազգային յուրօրինակություններ և խնդիրներ: Այդ առումով ևս Լենինն ուսուցանում էր, որ անհրաժեշտ է բանվոր դասակարգին զինել հեղափոխական պայքարի մարքսիստական ուսմունքով, ուսմունք, որի հեղափոխական ոգու պահպանումը Լենինը համարում էր կուսակցության առաջնահերթ խնդիրը:

Քննադատելով «էկոնոմիստների» սխալ հայացքը, ըստ որի իբր սոցիալիստական գաղափարախոսությունը կարող է ծագել բանվոր դասակարգի տարերային շարժումից, Լենինը գիտականորեն ապացուցեց, որ պատմությունը լրիվ հակառակն է հաստատում. դասակարգային քաղաքական գիտակցությունը բանվորների շրջանում ձևավորում է սոցիալ-դեմոկրատիան, որի շարքերում ներգրավված են հասարակության առաջադիմական խավերի ներկայացուցիչները: Առաջավոր մարտիկի դերը կարող է կատարել միայն այն կուսակցությունը, որը ղեկավարվում է առաջավոր տեսությամբ: Կուսակցության տեսական, քաղաքական ու կազմակերպչական հիմքերի մշակմանը նվիրված ծրագրային աշխատություններում («Ի՞նչ անել», «Մի քայլ առաջ, երկու քայլ ետ»), Լենինը մեծ համոզչականությամբ հիմնավորեց, որ պրոլետարիատը իշխանության համար մղվող պայքարում չունի այլ զենք, բացի կազմակերպությունից:

Ռուսաստանում մարքսիստական կուսակցության հիմնադրմանը նախորդեց Լենինի գլխավորած Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը», որը խարսխվում էր դեմոկրատական ցենտրալիզմի վրա: Այն իրավ հանդիսացավ Ռուսաստանում մարքսիստական պրոլետարական կուսակցության կենսունակ սաղմը: Լենինը բարձր գնահատեց ՌՍԴԲԿ I համագումարը (1898 թ.):





Կուսակցություն ստեղծելու գործում Լենինը մեծ դեր էր հատկացնում տպագիր օրգանին, որը կոչված էր գաղափարապես ու կազմակերպչորեն համախմբելու սոցիալ-դեմոկրատներին: Լրագիրը,— ասել է Լենինը,— ոչ միայն կոլեկտիվ պրոպագանդիստ և կոլեկտիվ ագիտատոր է, այլև կոլեկտիվ կազմակերպիչ: Եվ ահա նրա գործադրած ջանքերի շնորհիվ արտասահմանում լույս տեսնող համառուսաստանյան քաղաքական լրագիրը՝ «Искра»-ն, մեծ աշխատանք ծավալեց սոցիալ-դեմոկրատական կոմիտեները գաղափարապես և կազմակերպորեն համախմբելու, կուսակցական գործիչներին և առաջավոր բանվորներին մարքսիզմի ոգով դաստիարակելու համար, նրանց անհաշտ պայքարի հանեց մարքսիզմի ամեն կարգի թշնամիների դեմ:

1903 թվականի հուլիս-օգոստոս ամիսներին արտասահմանում, լենինյան «Искра»-ի նախաձեռնությամբ, գումարվեց ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատների II համագումարը, որն ընդունեց, իրոք, հեղափոխական, իսկական մարքսիստական ծրագիր և կանոնադրություն, որոնք արմատապես տարբերվում էին արևմտաեվրոպական սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների ծրագրային ու կանոնադրական սկզբունքներից: Ի տարբերություն արևմտաեվրոպական կուսակցությունների ծրագրերի, այստեղ հատուկ կետ էր զետեղված պրոլետարիատի դիկտատուրայի մասին:

ՌՍԴԲԿ II համագումարը դարակազմիկ նշանակություն ունեցավ նոր տիպի, մարքս-լենինյան կուսակցության հիմնադրման գործում: Լենինը կուսակցությունը դիտում էր որպես պրոլետարիատի առաջավոր, կազմակերպված ջոկատ, ղեկավար կազմակերպություն ու գլխավոր շտաբ, առանց որոնց հնարավոր չէ նվաճել պրոլետարիատի դիկտատուրան, կառուցել նոր հասարակարգ: Ըստ Լենինի, կուսակցությունը պրոլետարիատի դասակարգային կազմակերպվածության դրսևորման բարձրագույն ձևն է, որովհետև զինված է գիտական կոմունիզմի տեսությամբ, ունակ է ճանաչելու հասարակական զարգացման ու դասակարգային պայքարի օրենքները, դրանք ծառայեցնելու պրոլետարիատի շահերին: Լենինը պայքարում էր հանուն կուռ ու միասնական կուսակցության՝ կառուցված դեմոկրատական ցենտրալիզմի հիմունքներով, ամրապնդված բոլորի համար պարտադիր կարգապահությամբ: Նա միաժամանակ կարևոր նշանակություն էր տալիս կոլեկտիվ ղեկավարման սկզբունքին և անհրաժեշտ էր գտնում խիստ հսկողություն սահմանել այն կիրառելու նկատմամբ: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը նա դիտում էր որպես կուսակցության անդամների ակտիվությունը բարձրացնելու, մասսաների հետ կուսակցության կապն ամրապնդելու, հնարավոր սխալներից խույս տալու կարևորագույն գործոն:

Նա առանձին կրքոտությամբ ու հետևողականությամբ պաշտպանում էր կուսակցության կազմակերպական հիմունքները, մշտապես մտահոգված էր կուսշարքերի միասնության պահպանմամբ ու ամրապնդմամբ: Լենինն անխնա դատապարտում էր կուսակցությունը վերացնելու օպորտունիստների ոտնձգությունները, բացահայտում նրանց խոսքի ու գործողությունների միջև եղած վիհը:

Պրոլետարիատի անհկուն առաջնորդի և նրա շուրջը համախմբված բոլշևիկների ջանքերով կուսակցությունը դիմացավ մեծ փորձություններին, հաջող քննություն բռնեց ռեակցիայի ծանր տարիներին, ձեռք բերեց քաղաքական պայքարի հմտություն, առաջընթաց խոշոր քայլ կատարեց մասսաներին



նվաճելու ճանապարհին և պրոլետարիատին նախապատրաստեց դասակարգային նոր մարտերի՝ ընդդեմ ցարիզմի և կապիտալիզմի:

Կուսակցության գործունեության մեջ Լենինը կարևոր տեղ էր հատկացնում բանվորների և գյուղացիների դաշինքի հարցին: Նա այդ դասակարգերի հեղափոխական միության մեջ տեսնում էր այն հասարակական գլխավոր ուժը, որը պետք է տապալեր ցարիզմը, կալվածատիրական ու կապիտալիստական կարգերը: Կուսակցության համագումարներում գյուղացիության պահանջների առաջքաշումը բխում էր հեղափոխության մեջ այդ դաշինքի անհրաժեշտությունից: Լենինը գտնում էր, որ հենց գյուղացիությունը պետք է դառնա պրոլետարիատի դաշնակիցը, որովհետև նա շահագրգռված է ցարիզմի տապալումով ու հողի բռնագրավմամբ, հետևաբար, պրոլետարիատի և նրա կուսակցության կողմից առաջ քաշված հարցերը բավարարում էին աշխատավոր գյուղացիության պահանջները:

Վերլուծելով ապրած դարաշրջանի բնույթը մի շարք երկերում, Լենինն ապացուցեց, որ կապիտալիզմը վերաճել է իր բարձրագույն ստադիային՝ իմպերիալիզմին: Մոնոպոլիստական կապիտալիզմն իրենից ներկայացնում է պարազիտային, նեխող, մեռնող հասարակություն, ուր անհամաչափ զարգացման հետևանքով ուժեղանում են տնտեսական-քաղաքական, դասակարգային և ազգային հակասություններն ու հակամարտությունները, պայմաններ են ստեղծվում անգամ տնտեսապես ավելի թույլ զարգացած մի երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի համար:

Իր հռչակավոր Ապրիլյան թեզիսներում Լենինը կուսակցությանն ու բանվոր դասակարգին նպատակամղեց սոցիալիստական հեղափոխության: «Ռուսաստանում ընթացիկ մոմենտի առանձնահատկությունը,— գրել է Վլադիմիր Իլյիչը,— անցումն է հեղափոխության առաջին էտապից, որը պրոլետարիատի բավականաչափ գիտակից և կազմակերպված չլինելու պատճառով իշխանությունը տվեց բուրժուազիային, դեպի նրա երկրորդ էտապը, որն իշխանությունը պետք է տա պրոլետարիատի և գյուղացիության ամենաչքավոր խավերի ձեռքը» (Երկեր, հ. 24, էջ 4):

Կուսակցության VI համագումարը, լենինյան նոր դրույթներին համապատասխան, պրոլետարիատին սոցիալիստական հեղափոխության կոչելով, զինված ապստամբության կուրս վերցրեց: Լենինն անձամբ գլխավորեց Հոկտեմբերյան հեղափոխության դժվարագույն նախապատրաստումն ու ղեկավարումը, հանդիսացավ դրա հաղթանակի ոգեշնչողն ու անզուգական կազմակերպիչը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակն ազդարարեց սոցիալիստական հասարակարգի ծնունդը:

Հետհոկտեմբերյան շրջանի իր հոդվածներում, մասնավորապես Սովետական իշխանության հերթական խնդիրները բրոշյուրում, Լենինը մշակեց մեր երկրում սոցիալիզմի կառուցման կոնկրետ, գիտականորեն հիմնավորված ծրագիրը: Նա ընդգծեց, որ կապիտալիզմի դեմ պրոլետարիատի հաղթական հեղափոխությունից հետո սկսվում է անցման մի շրջան, որը Ռուսաստանում արտահայտվում է մի շարք տնտեսական կացութաձևերի առկայությամբ: Այդ տնտեսաձևերից աստիճանական անցումը սոցիալիստականին, նա համարում էր նոր հասարակարգի ռեալ մայրուղին: Սոցիալիզմի կառուցման հնարավորությունը կուսակցության ու սովետական պետության մեծ հիմնադիրը տեսնում էր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինդուստրիալ համամասնական զարգացման, գյուղատնտեսության կոոպերացման և սոցիալ-

կուլտուրական մի ամբողջ շարք միջոցառումներ իրականացնելու մեջ։ Նա սոցիալիզմի կառուցման հիմնական պայմանը համարում էր պրոլետարիատի դիկտատուրայի առկայությունը, իսկ կոմունիստական կուսակցությունը դիտում որպես սոցիալիզմի կառուցման միակ ղեկավար ուժը, որն արտահայտում է բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերը, որոնց հետ ամուր կապեր ունի։ Նա նշում էր, որ պրոլետարիատի դիկտատուրան անհնար է առանց կոմունիստական կուսակցության ղեկավարության, մի ճշմարտություն, որը փայլուն կերպով ապացուցվեց սովետական կարգերի պատմության փաստով։

Գլխավորելով նոր կարգերի հաստատման ու զարգացման դժվարագույն գործը, Լենինն իր տիտանական ջանքերով կուսակցական ղեկավարության բարդ արվեստի կիրառման բազմաթիվ վառ օրինակներ տվեց։ Դեռ ավելին, նա ստեղծեց ու համակարգեց մեր կուսակցության բազմակողմանի գործունեության ոճը, որն իրավամբ նրա անվան հետ է առնչված։

Ինտերվենցիայի, քաղաքացիական կռիվների բարդ իրադրություններում, ինչպես և ժողովրդական տնտեսության վերականգնման վճռական միջոցների մշակման բնագավառում, մեկ անգամ ևս փայլատակեց նրա մշտապես սթափ և հեռատես միտքը։ Տակավին սովետական իշխանության հաստատման արշալույսին Լենինի հանճարն իր ամբողջ խորությամբ դրսևորվեց երկիրը քաոսային վիճակից դուրս բերելու և սոցիալիստական հասարակության կերտման վիթխարի պլանը մշակելիս։ Կուսակցության ու ժողովրդի սիրված առաջնորդը երբեք չէր թաքցնում, որ նոր, սոցիալիստական էկոնոմիկայի կառուցումը անհամեմատ դժվարին է, քան կարծում էին շատերը։ Նա ընդգծում էր, որ մեր կուսակցությունը նպատակին կհասնի ջանքերի վիթխարի լարումով, տնտեսության ու երկրի կառավարման նոր մեթոդների ու եղանակների տևական ու խելացի մշակմամբ, թափթփվածության ու անկազմակերպվածության հաղթահարմամբ, արտադրության պրոցեսների գիտական կազմակերպմամբ։ Միայն սոցիալիստական պրակտիկայի խնդիրների կենսագործման ոլորտներում էր Իլյիչը տեսնում այն կենդանի զարբնոցը, որտեղ կարող են կոփվել կոմունիզմ կառուցող միլիոնավոր աշխատավորների կամքն ու հոգեկան ատաղձը։

Զինված սոցիալիզմի կառուցման լենինյան ծրագրով, կուսակցությունը, ինչպես առաջնորդի կենդանության օրոք, այնպես էլ հետո, մերժելով «ձախերի» ավանտյուրիստական և աջերի կապիտուլյանտական առաջարկները, իր շարքերը մաքրելով տրոցկիստական և ամեն կարգի հակալենինյան տարրերից, հսկայական աշխատանք կատարեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության նվաճումները պաշտպանելու, մեր երկրում սոցիալիզմը կառուցելու համար։ Աներեր ընթանալով լենինյան ուղիով, ՍՄԿԿ մեկընդմիշտ ապահովեց սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակը ՍՍՀՄ-ում։

Ավելի քան կես դար հարատևում ու ծաղկում է Վլադիմիր Իլյիչ Լենինի մեծագույն ջանքերի և ստեղծագործական խիզախումների արգասիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը։

Նոր հասարակարգի օրինակի ուժը սոցիալիզմի լավագույն առհավատչյան է կապիտալի աշխարհի աշխատավորության համար։ Այժմ մեր նվաճումների բարձունքից հետադարձ հայացք ձգելով անցած ուղու վրա, կարելի է ասել, որ սոցիալիստական էկոնոմիկայի կառուցումը մեր ժողովրդից պահանջեց ուժերի գերլարում, տիտանական ջանքեր։ Մեր երկրում նոր կյանքի հաստատման համար պայքարն առանձնապես լարված եղավ այն պատճառով, որ անցյալից ժառանգություն էինք ստացել տնտեսական հետամնացությունը և իմպերիալիզմի պարտադրած պատերազմների վիթխարի ավերածությունները։



Չնայած այդ ամենին, վաթսունական թվականների ընթացքում ՍՍՀՄ-ում արդյունաբերական արտադրանքի արտադրությունը մեծացել է ավելի քան երկու անգամ, գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը՝ մեկ երրորդով։ Նույն ժամանակամիջոցում աշխատավորության ռեալ եկամուտները ավելացել են 43 տոկոսով։ Խորապես ըմբռնելով տնտեսական ընդհանուր աճի արագ տեմպերի պահպանման ողջ կարևորությունը, կուսակցությունն այժմ շեշտը դնում է արտադրվող արժեքների որակական կողմի վրա։ ՍՄԿԿ խնդիր է դրել ստեղծել աշխարհում ամենաառաջավոր ժողովրդական տնտեսությունը՝ թե՛ տնտեսական արդյունավետությամբ, թե՛ գիտատեխնիկական մակարդակով։

Կոմունիստական շինարարության խնդիրների մասշտաբներն ու բարդությունն է՛լ ավելի են բարձրացնում ՍՄԿԿ դերը հասարակության կյանքում։ Լենինյան կոմունիստական կուսակցությունը վայելում է աշխատավորների վստահությունը, արտահայտում ժողովրդի կամքը։ Այն ուժեղ է մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին ու հեղափոխական ավանդույթներին իր հավատարմությամբ, կոմունիստների միասնությամբ, գաղափարական կայունությամբ, բարոյա-քաղաքական բարձր հատկություններով։ Ելնելով մեծ գործի շահերից, կուսակցությունը բարդ խնդիրներ է առաջադրում կոմունիստներին, բարձրացնում նրանց տեսական ու քաղաքական մակարդակը, դաստիարակում լճացածության և հնամոլության նկատմամբ անհաշտության ոգով, պաշտպանում նորն ու առաջավորը։

Կուսակցության ղեկավար դերի բարձրացումը մեծացնում է նրա պատասխանատվությունը այն ամենի համար, ինչ արվում է երկրում՝ հանուն սովետական պետության ներկայի և ապագայի։ Իսկ դա նշանակում է, որ կուսակցությունն իր զարգացման պրոցեսում պետք է բարձրացնի իր շարքերի մարտունակությունը, ավելի ամրապնդի դրանց գաղափարական ու կազմակերպական միասնությունը։

ՍՄԿԿ վերջին տարիներին հսկայական աշխատանք կատարեց կուսակցական կյանքի լենինյան նորմերը, կուսակցական, պետական, գաղափարական ու տնտեսական գործունեության բոլոր բնագավառներում ղեկավարման լենինյան սկզբունքները վերականգնելու և կատարելագործելու բնագավառում։ Կուսակցության աշխատանքի կատարելագործումը ենթադրում է ներկուսակցական դեմոկրատիայի հետևողական զարգացում՝ զուգակցված դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի անշեղ կիրառման հետ։

ՍՄԿԿ մարտական ու հնագույն ջոկատներից է Հայաստանի կոմունիստական կուսակցությունը, որն իր ավելի քան կեսդարյա գործունեության ընթացքում աներեր ընթացել և ընթանում է լենինյան դրոշի ներքո։ Լենինի հասարակական-քաղաքական գործունեության առաջին իսկ տարիներին, նրա գաղափարներին զինվորագրվեցին և նրա ականավոր զինակիցները դարձան մեր ժողովրդի երևելի զավակներ Ի. Լալայանցը, Ս. Շահումյանը, Բ. Կնունյանցը, Ս. Սպանդարյանը, Ա. Մյասնիկյանը և շատ ուրիշներ։

Հայաստանի կոմկուսը հսկայական աշխատանք է կատարել հանրապետության ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի զարգացման, աշխա-

տավորության բարեկեցության բարձրացման ասպարեզներում: Հայաստանի կոմունիստները կոմունիզմի համար մղվող պայքարի առաջամարտիկներն են, նորի ու առաջադիմականի արմատավորողները, լենինյան պատգամների անձնուրաց կենսագործողները:

Սովետական Հայաստանի, եղբայրական մյուս հանրապետությունների էկոնոմիկայի և կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերված աննախընթաց նվաճումները լենինյան ազգային քաղաքականության փայլուն արգասիքն են:

Տակավին XX դարի սկզբին, ժողովրդական մասսաներին գրոհի տանելով ընդդեմ ցարական ինքնակալության ու բուրժուազիայի, հանուն նոր հասարակարգի ստեղծման, Լենինը, բոլշևիկները խնդիր էին դնում վերացնել ազգային պառակտումն ու ճնշումը: Հետևողականորեն իրականացնելով ազգային հարցում լենինյան ծրագիրը, կոմունիստական կուսակցությունը, սովետական ժողովուրդը լուծեցին այդ խնդիրը, ամբողջ աշխարհին պարզելով մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների՝ միասնական, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսության վրա խարսխված եղբայրական մեծ բարեկամության դրոշը:

Սովետական Միության պատմական փորձը ցույց տվեց, որ ազգային դարավոր պրոբլեմի իսկական լուծումը հնարավոր է միայն սոցիալիզմի բազայի վրա՝ լենինիզմի սկզբունքների անշեղ կիրառման պայմաններում:

Սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժը Վ. Ի. Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունն է: Նրա շարքերի աճը մեր երկրի աշխատավորության բոլոր խավերի շրջանում լենինիզմի բարձր հեղինակության փայլուն վկայություն է:

Այժմ ՍՄԿԿ շարքերն են ընդգրկված 14 միլիոն կոմունիստ: Նրա կազմի կեսից ավելին բանվորներ ու գյուղացիներ են: Բանվոր դասակարգը առաջավոր դիրք է գրավում կուսակցության մեջ: Դա համապատասխանում է մեր կուսակցության դասակարգային էությանը, հասարակության կյանքում բանվոր դասակարգի տեղին ու դերին: Կուսակցությունը միավորում է ժողովրդական տնտեսության միլիոնավոր մասնագետների, գիտնականների, կուլտուրայի գործիչների, մտավորականության այլ ներկայացուցիչների:

Կոմունիստական կուսակցությունը,— ասված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի թեզիսներում,— հանդես է գալիս որպես ամբողջ սովետական ժողովրդի ավանգարդ, աշխատավորների բոլոր կազմակերպությունների քաղաքական ղեկավար: Ժողովրդի հանդեպ պատմական պատասխանատվության և պարտքի գիտակցումը կուսակցությանը պաշտպանում է ինքնահանգստացումից: Կոմունիստների համար սրբազան է Լենինի այն պատգամը, որ «մենք ոչ մի կերպ չենք դնի մեր կուսակցությունը գոռոզացած կուսակցության դրության մեջ» (Երկեր, հ. 30, էջ 677): Ամեն մի կենդանի և կենսունակ կուսակցության համար, նշել է Լենինը, անկասկած, հարկավոր են քննադատություն և ինքնաքննադատություն: Դա օրենք է, կուսակցության զարգացման, նրա կողմից հասարակության ղեկավար դերի իրականացման անհրաժեշտ պայման:

Մեծ է Լենինի դերը որպես կոմունիստական ու բանվորական շարժման առաջնորդի: Հայտնի է, որ առաջին համաշխարհային իմպերիալիստական



պատերազմի տարիներին նա անողոք մերկացրեց II ինտերնացիոնալի կուսակցությունների հակապրոլետարական, դավաճանական քաղաքականությունը և առաջադրեց նոր, III ինտերնացիոնալ հիմնելու խնդիրը: Նրա ստեղծած III ինտերնացիոնալը նոր էջ գրեց միջազգային կոմունիստական շարժման պատմության մեջ:

Իլյիչն առանձնակի հոգատարություն էր ցուցաբերում նորաստեղծ կոմկուսակցությունների նկատմամբ, բարեկամաբար ու զգուշորեն ուղղում նրանց սխալները, ցույց տալիս գործունեության ճիշտ ճանապարհ: Այդ տեսակետից հատկանշական է Լենինի «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ կլասիկ աշխատությունը, որը մինչև այսօր մնում է հեղափոխական ստրատեգիայի ու տակտիկայի հիմնավորման չգերազանցված ձեռնարկ:

Այստեղ ռուսական սոցիալ-դեմոկրատական կուսակցության, նրա բոլշևիկյան թևի գործունեության պայքարի հաջողությունների ու սխալների խոր ու բազմակողմանի վերլուծության հիման վրա՝ Լենինը բացահայտեց նորաստեղծ կոմունիստական կուսակցությունների սխալները: Միաժամանակ պատճառաբանված է բանվորական շարժման տարբեր փուլերում պայքարի զանազան ձևերի կիրառման անհրաժեշտությունը. առաջադրված են տեսական նոր դրույթներ, գործունեության պարզորոշ ծրագիր:

Կոմինտերնի լենինյան դպրոցով անցան կոմունիստական շատ կուսակցություններ, որոնք պահպանեցին, զարգացրին և ամրապնդեցին հեղափոխական ուղղությունը միջազգային բանվորական շարժման մեջ: Առաջնորդվելով լենինյան գաղափարներով, կոմունիստական ինտերնացիոնալը, քառորդ դար շարունակ, պարզորոշ պատասխաններ էր տալիս բանվոր դասակարգի, մարդկության առջև ծառացած՝ պատերազմի ու խաղաղության, հանուն դեմոկրատիայի, ընդդեմ ֆաշիզմի մղվող պայքարի, ազգային-ազատագրական շարժման զարգացման, սոցիալիզմի դերի և մասսաներին սոցիալիստական հեղափոխությանը մոտեցնելու ուղիներին վերաբերող արմատական հարցերին:

Հետպատերազմյան շրջանում կոմունիստական շարժումն աճեց ու դարձավ մի վիթխարի ուժ: Այն հիմա համաշխարհային զարգացման վճռական գործոնն է: Առաջնորդվելով մարքսիստական-լենինյան տեսությամբ, կոմունիստական կուսակցությունները ժողովուրդներին պայքարի են հանում, գլխավորում սոցիալական առաջադիմության վեհ նպատակների օգտին հանդես եկող մասսայական շարժումները: Կոմունիստները միշտ գտնվում են աշխատավորության կենսական պահանջների, խաղաղության համար մարտնչողների ավանգարդում: Նրանք բարձր են պահում սոցիալիստական հեղափոխության անպարտելի դրոշը:

Կյանքն ապացուցել է, որ կոմունիստական շարժման ուժը մարքսիզմ-լենինիզմին հավատարիմ լինելն է: Մշակելով իր ստրատեգիան ու տակտիկան, սոցիալիստական պետությունների, կապիտալի, ազատագրված երկրների բանվոր դասակարգի կոմունիստական ավանգարդը զարգացնում և հարստացնում է գիտական կոմունիզմի ուսմունքը: Մարքսիստ-լենինյանների համատեղ, կոլեկտիվ աշխատանքի ստեղծագործական արդյունքը 1957, 1960 և 1969 թվականների Մոսկվայի խորհրդակցությունների Դեկլարացիայում, Հայտարարության մեջ և հիմնական փաստաթղթերում ձևակերպված գլխավոր գիծն է:

Կյանքը պահանջում է կոմունիստական շարժման միասնությունը հասցնել արդի խնդիրներին համապատասխանող բարձր մակարդակի: Դա բո-

լոր կուսակցություններից պահանջում է վճռական և մշտական ջանքեր: Կոմունիստական կուսակցությունների փոխհարաբերությունների հիմքը պրոլետարական ինտերնացիոնալիզմի, համերաշխության և փոխադարձ աջակցության, ինքնուրույնությունն ու իրավահավասարությունը հարգելու, միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքներն են: Դրանց խստիվ կիրառումը եղբայրական կուսակցությունների ընկերական համագործակցության զարգացման, կոմունիստական շարժման միասնության ամրապնդման անհրաժեշտ պայմանն է:

«Ներկայումս, երբ միջազգային կոմունիստական շարժման մեջ գոյություն չունի ղեկավար կենտրոն, առանձնապես մեծանում է նրանց գործողությունների կամավոր կոորդինացման նշանակությունը՝ հօգուտ նրանց առջև դրված խնդիրների հաջող լուծման»:

Կոմունիստական կուսակցությունների ձեռք բերած հաջողություններն անվիճելի են: Սակայն նրանք իրենց ուշադրությունը բևեռում են չլուծված խնդիրների, հակաիմպերիալիստական պայքարի նոր, առավել ուժեղացման, և այդտեղից ծագող դժվարությունների հաղթահարման վրա: Փաստ է, որ կոմունիստական շարժման որոշ օղակներում լրջորեն խախտվել է միասնությունը: Որքան էլ իրարից տարբեր լինեն մարքսիզմ-լենինիզմից դեպի աջ կամ «ձախ» կատարված շեղումները, դրանք, վերջին հաշվով, հավասարապես վնասակար են, թուլացնում են կոմունիստական կուսակցությունների մարտունակությունը, քայքայում բանվոր դասակարգի հեղափոխական դիրքերն ու հակաիմպերիալիստական ուժերի միասնությունը: Կասկածից վեր է, որ այդ դժվարությունները կհաղթահարվեն: Նման հետևությունը բխում է այն փաստից, որ միջազգային բանվոր դասակարգի նպատակներն ու շահերն ընդհանուր են յուրաքանչյուր կուսակցության համար: Իրականում նրանք արտահայտում են իրենց ժողովրդի ազգային, թե ինտերնացիոնալ շահերը: Կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, չնայած հայացքների միջև եղած որոշ տարբերություններին, լի են վճռականությամբ՝ միասնական ճակատով պայքարելու ընդդեմ իմպերիալիզմի: Սերելով լենինյան կենսահաստատ գաղափարներից, ժամանակակից կոմունիստական շարժումը դարձել է մեր դարաշրջանի ամենաազդեցիկ քաղաքական ուժը:

Մեր օրերում համաշխարհային ասպարեզում շատ է սրվել գաղափարական պայքարը: Սոցիալիզմի հաջողությունները, համաշխարհային կապիտալիզմի խորացող հակասությունները, իմպերիալիզմի ջատագովներին հարկադրում են կիրառել գաղափարական պայքարի նոր մեթոդներ: Բուրժուական պրոպագանդան ճգնում է սքողել արդի կապիտալիստական աշխարհի գլխավոր սոցիալական հակամարտություններն ու արատները, բթացնել մասսաների քաղաքական գիտակցությունը, ջլատել աշխատավորների կամքը սոցիալիզմի համար մղվող պայքարում: Այդ նպատակով իմպերիալիզմն այժմ ստեղծել է պրոպագանդիստական մի վիթխարի մեքենա, որն օգտագործում է գաղափարական ներգործության բոլոր արդիական միջոցները: Իմպերիալիստական գաղափարախոսությունը մասսաներին պատվաստում է անհատապաշտություն, ապոլիտիկություն և մարդկանց ամեն կերպ զերծ է պահում հասարակական արմատական պրոբլեմների լուծմանը մասնակցելուց: Նա հույսը դնում է մարդկանց գիտակցության մեջ անցյալի նախապաշարմունքների և մնա-



ցուկների կենսունակության վրա: Այժմ, ինչպես երբեք, կարևոր է հիշել Լենինի այն նախազգուշացումը, որ կոմունիստների կողմից գաղափարական աշխատանքի ամեն մի թուլացում, մարքսիզմի ամեն մի խեղաթյուրում ուժեղացնում է բուրժուական գաղափարախոսության ազդեցությունը: Գաղափարական պայքարում տեղ չունեն չեզոքությունն ու կոմպրոմիսները: Կոմունիստները մերժում են այդ բնագավառում խաղաղ գոյակցության օպորտունիստական թեզը: Բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարի ամենահուժկու զենքը՝ մարքսիզմ-լենինիզմն է: Ներհակ գաղափարախոսությունների պայքարը, ընդգծել է Լենինը, արտացոլում է պրոլետարիատի ու բուրժուազիայի դասակարգային դիրքերի անհաշտությունը, երկու սոցիալական սիստեմների հակադրությունը:

Լենինը մեզ պատգամել է աչքի լույսի պես պահպանել ու հարստացնել սոցիալիստական սեփականությունը: Խնայողությունը, տնտեսումն ու հաշվառումը սոցիալիստական տնտեսական կարևոր սկզբունքներից են, արտադրության գիտական կառավարման պայմաններից մեկը: Արտադրողական ուժերի զարգացման արդի մակարդակը պահանջում է արտադրության հրամանատարներից, տնտեսվարներից, ինժեներա-տեխնիկական կազմից, մշտապես կատարելագործել գիտելիքները, զգաստ հետևել ժամանակակից գիտատեխնիկական առաջադիմությանը, խորամուխ լինել արտադրության տնտեսագիտական բնույթի հարցերում: Արտադրության կառավարման բարդացումը և պլանավորման գիտական հիմնավորումն արտադրողական ուժերի տեղաբաշխման նոր պրոբլեմներ ու նոր խնդիրներ են հարուցում, խնդիրներ, որոնք պահանջում են արդյունավետ լուծում:

Տակավին Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի առաջին տարիներին կուսակցության առաջնորդն անդուլ հոգում էր աշխատավորության կուլտուր-կենցաղային սպասարկման վիճակը բարելավելու համար: Կուսակցական կազմակերպությունների և պետական մարմինների առաջնահերթ խնդիրն է մնում քաղաքի և գյուղի աշխատավոր հոծ զանգվածների կենցաղավարության կուլտուրայի բարձրացումը, մարդկանց աճող պահանջմունքների լիակատար բավարարումը: Սոցիալիստական տնտեսության զարգացման արդի մակարդակը մեզ հնարավորություն է ընձեռում մոտակա տարիներին պատշաճ բարձրության վրա դնելու բնակչության սպասարկման կուլտուրան: Մեր կարծիքով այս կուլտուրայի առկայությունը պետք է դառնա հասարակական կազմակերպությունների գործունեության չափանիշներից մեկը:

Հասարակական ողջ կյանքի զարգացման համար մեծ նշանակություն ունի աշխատավորության քաղաքական ակտիվության բարձրացումը: ՍՄԿԿ XXIII համագումարն ընդգծեց, որ թերությունների ու բացերի գործարար քննադատության ու ինքնաքննադատության ծավալումը, այն ամենի բացասումը, ինչն անպետք է ու հնացած՝ կուսակցության առաջնահերթ խնդիրներից են: «Կուսակցությունը,— ասված է Թեզիսներում,— ինչպես դա պահանջում էր Լենինը, իր ամբողջ գործունեության մեջ վճռականորեն արմատախիլ է անում բյուրոկրատիզմը, անկազմակերպվածությունը, քաշքշուկը, թափթփվածությունը, անփութությունը, կենդանի գործը շաղակրատանքով փոխարինելու հակումը: Սոցիալիզմին խորապես խորթ այնպիսի հասարակական երևույթների դասակարգային-քաղաքական գնահատումը, ինչպիսիք են սոցիալիստական սեփականության հափշտակումը, ընչաքաղցությունը, աշխատանքային կարգապահության և հասարակական կարգ ու կանոնի խախտումը, այդ բա-

ցասական երևույթների դեմ մղվող պայքարը սոցիալիստական պետության, ամբողջ հասարակայնության կարևոր ֆունկցիան են, սովետական մարդու քաղաքացիական պարտքը»։

Մեծ է տեսության դերը կոմունիստական շինարարության հրատապ խնդիրների գիտական մշակման գործում, որի մակարդակից է կախված կուսակցության գաղափարական ազդեցության ներգործությունը։ Կատարելով լենինյան պատգամը, ՍՄԿԿ-ն առանձնակի ուշադրություն է նվիրում սոցիալիստական պրակտիկայի թեորիական իմաստավորմանը։

Մարքսիզմ-լենինիզմի խոր տիրապետումը եղել ու մնում է մեր կուսակցական կազմակերպությունների ու կոմիտեների առաջնահերթ հոգսը։ Քաղաքական լուսավորության ցանցի գործունեության կատարելագործումը պահանջում է ուսուցման նոր մեթոդների ու եղանակների արմատավորում, ժամանակակից ինֆորմացիայի ու գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների ծրագրված օգտագործում։ Ահա թե ինչու այժմ ավելի քան բարդանում է գաղափարական ներգործման միջոցների և օրգանների դերը։

Լենինը պատգամել է մեզ ուշադրության կենտրոնում պահել նոր մարդու բազմակողմանի զարգացման հարցը, որի հաջող լուծման համար մեր երկիրն ունի բոլոր նյութական ու հոգևոր նախադրյալները։ Այժմ կենսական պահանջ է ամբողջ աշխատավորությանը և հատկապես երիտասարդությանը տոգորել լենինյան վեհ գաղափարներով, զինել նրանց լենինիզմի մարտական աշխարհայացքով և հասնել այն բանին, որ մեր կյանքի և գործունեության բոլոր բնագավառներում անշեղորեն կենսագործվեն կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքները։

Սա նշանակում է, որ մեր ժողովուրդը, որպես մեկ մարդ, պետք է մեծ բեկում ստեղծի աշխատանքի արտադրողականության մարզում, ավելի բարձրացնի աշխատանքային կարգապահությունը, հասնի այն բանին, որ առավելագույն խնայողությամբ գործադրվեն ժողովրդական հարստության բոլոր միջոցները։ Բացի այս, Հայաստանի աշխատավորները, կուսակցական կազմակերպությունների անմիջական ղեկավարությամբ, կոչված են հնգամյակի վճռական տարին ավարտել որակական ու քանակական բարձր ցուցանիշներով։ Խանդավառությամբ նշելով հանճարեղ առաջնորդի պանծալի հոբելյանը, նրանք քաջ գիտակցում են, որ կուսակցության առաջադրած մեծագույն խնդիրների հաջող լուծումը պահանջում է ջանքերի մեծ լարում, կազմակերպական և քաղաքական ծավալուն գործունեություն մասսաների շրջանում, մեծ առաջնորդի դարակազմիկ պատգամների անշեղ կենսագործում։

Լենինի անունն ու գործը հավերժ կապրեն։





Հ. ԱՂԱՋԱՆՅԱՆ

# ՄԵՐ ԴԱՐԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՄՏԱԾՈՂԸ

Լենինը որպես հասարակական-քաղաքական հանճարեղ գործիչ և մեծագույն մտածող, հրապարակ եկավ պատմության այն դարաշրջանում, երբ կապիտալիզմը թևակոխել էր զարգացման իր վերջին՝ իմպերիալիստական-մոնոպոլիստական փուլը։

Պատմական հանգամանքների բերումով նրան վիճակվեց գործնական ու տեսական առումով մատնանշել մարդկության պրոգրեսի ընթացքը, իմպերիալիզմի պատճառած ահավոր կեղեքումներից ու արհավիրքներից դուրս գալու միակ ելքը։ Դա հասունացող սոցիալիստական հեղափոխությունն էր։

Միաժամանակ նա ցույց տվեց գիտության դիալեկտիկական-մատերիալիստական զարգացման ռեալ ուղիները։ Ահա թե ինչու Լենինի գրչին պատկանող աշխատությունները բազմակողմանիորեն արտահայտելով հասարակական կյանքի փոթորկալի հակասությունները, ճշգրտորեն նշել են նաև դրանց հաղթահարման ուղիները։

Լենինը,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում,— մեծագույն գիտնական էր հեղափոխության մեջ և հեղափոխական գիտության մեջ, նա նոր էտապ բացեց մարքսիստական տեսության զարգացման գործում, հարստացրեց մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը՝ փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը և գիտական կոմունիզմը։

Լենինին՝ որպես մտածողի ամենից առաջ բնորոշ է այն, որ նա մարքսիզմի փիլիսոփայությունը չէր դիտում որպես ինքնանպատակ, կյանքի պահանջներից կտրված, ընդհակառակը՝ այն սերտորեն կապում էր բանվորական շարժման, սոցիալիստական հեղափոխության, պրոլետարիատի դիկտա-

տուրայի հաստատման խնդիրների հետ։ Նրա համար փիլիսոփայությունը բանվորական շարժման հոգևոր զենքն է, նոր հասարակարգի թեորիական հիմնավորման հուսալի կռվանը։

«Հասարակական կյանքը,— գրել է Մարքսը,— ըստ էության, գործնական է։ Բոլոր միստերիաները, որոնք թեորիան դեպի միստիցիզմ են մղում, իրենց ռացիոնալ լուծումը գտնում են մարդկային պրակտիկայում և այդ պրակտիկան ըմբռնելու մեջ»։ Այնուհետև՝ «Մարդը պրակտիկայով պետք է ապացուցի իր մտածողության ճշմարտությունը, այսինքն՝ իրական լինելը, զորությունը, այսկողմանիությունը» (Մարքսի թեզիսները Ֆոյերբախի մասին)։

Ելնելով մարքսիստական փիլիսոփայության ստեղծագործական ոգուց, Լենինն իմպերիալիզմի դարաշրջանում մատերիալիստական դիալեկտիկան հարստացրեց նոր ընդհանրացումներով ու դրույթներով։ Իր քաղաքական և թեորիական գործունեության ընթացքում նա վճռական պայքար մղեց II ինտերնացիոնալի «քաղաքագետների» և «տեսաբանների» դեմ, որոնք, ըստ էության, մարքսիզմը զրկել էին իր հեղափոխական ոգուց, հեղափոխական թեորիան կտրել բանվորական շարժումներից և այն հարմարեցրել իմպերիալիստական բուրժուազիայի դասակարգային շահերին։

Երկրորդ ինտերնացիոնալի «քաղաքագետների» և «տեսաբանների» այդ փորձերը տեսության մեջ արտահայտվեցին ռևիզիոնիզմի, իսկ քաղաքականության՝ օպորտունիզմի ձևով։ Վերջիններս, ըստ էության, չհասկացան իմպերիալիզմի դարաշրջանի հասարակական կյանքի զարգացման առանձնահատկությունները՝ կապիտալիզմի հակասությունների ծայրահեղ սրումը, իմպերիալիզմի դեմ պրոլետարիատի մղած հեղափոխական պայքարի անհրաժեշտությունը։ Այդ պայմաններում Լենինը պաշտպանեց ու զարգացրեց մարքսիզմը, ապահովեց նրա սկզբունքների կենսագործումը հեղափոխական պրակտիկայում։

Տակավին երիտասարդ Լենինը փիլիսոփայական վեճի բռնվեց նարոդնիկների հոգևոր նահապետ Նիկոլայ Միխայլովսկու հետ և քննադատեց նրա մետաֆիզիկական հայացքը մարքսյան դիալեկտիկայի մասին, որն այն նույնացնում էր Հեգելի իդեալիստական դիալեկտիկային։ Նա հիմնովին ժխտեց Միխայլովսկու այն սխալ դրույթը, թե, իբր, Մարքսի մեթոդում վճռականը հեգելյան տրիադան է։ Մինչդեռ, մարքսիստների հայացքներն ու դատողությունները հիմնվում են ոչ թե «տրիադայի», այլ իրականության երևույթների ճիշտ ըմբռնման վրա։

Քննադատելով նարոդնիկների էկլեկտիզմը (որոնք չէին տարբերակում երևույթի էական և ածանցյալ կողմերը, դրանք ուսումնասիրում էին քմահաճորեն), Լենինն ապացուցեց, որ դիալեկտիկական մեթոդը պահանջում է իրականության բազմակողմանի ուսումնասիրություն, առանձնացնելով բազմապիսի երևույթներից հիմնականը և վճռականը։ Մարքսիզմը, նկատել է Լենինը, հասարակական հարաբերությունների բարդ ոլորտից առանձնացնում է հիմնականը, գլխավորը՝ արտադրահարաբերությունները և այդպիսով գիտականորեն մեկնաբանում հասարակության զարգացումը։

Վերլուծելով կապիտալիզմի զարգացման պատմական պրոցեսը Ռուսաստանում, Լենինն ընդգծել է, որ դրա հիմքում ընկած է տնտեսական, հասարակական հակասությունների բախումը։ Իսկ նարոդնիկները փոխանակ ընդունելու կյանքի հակասությունները, դրանց բացահայտումը, անտեսում էին դրանք և փորձում հաշտեցնել հասարակական հակամարտությունները։



Սոցիոլոգիայում, նարոդնիկների կիրառած այսպես կոչված սուբյեկտիվ մեթոդի համաձայն, անհնար է հասարակական երևույթներն ի մի բերել, որևէ ընդհանուր օրենքի հանգեցնել։ Պատմությունը, ըստ նրանց, պատահականությունների, քննադատաբար մտածող անհատների կամքի ազատության գործողություններ է։ Դրան հակառակ, Լենինը ցույց տվեց, որ հասարակության զարգացումը բնապատմական օրինաչափ պրոցես է, որը չի պայմանավորվում անհատների կամքով։ Նա, միաժամանակ, քննադատեց հասարակական կյանքում օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների՝ նարոդնիկների մետաֆիզիկական ըմբռնումը։

Սիստեմատիկաբար և բազմակողմանիորեն մշակելով ու զարգացնելով մարքսիստական փիլիսոփայության բոլոր կողմերը, Լենինը բանվորական շարժման յուրաքանչյուր փուլում առաջին պլանի վրա էր դնում կյանքի թելադրանքով հարուցված հարցերը, որոնց լուծումը նպաստելու էր քաղաքական-գաղափարական պայքարին, գիտության և հեղափոխական պրակտիկայի առաջընթացին։ Այսպիսով, մարքսիստական փիլիսոփայության լենինյան փուլի առաջին շրջանն ընդգրկում է մարքսիստական նոր տիպի կուսակցության կազմավորման տարիները, ռուսական առաջին հեղափոխության նախապատրաստումը և նրա գլխավորումը ՌՍԴԲԿ կողմից (1894—1907)։ Այդ ժամանակ մարքսիստական փիլիսոփայության գործուն ոլորտը պատմական մատերիալիզմն էր։

Ուստի, Լենինը մշակեց պատմության մատերիալիստական ըմբռնման կարևորագույն պրոբլեմները՝ հասարակության զարգացման օրինաչափությունների, հասարակական-տնտեսական ֆորմացիաների ու դրանց զարգացման, բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստականի վերաճման կենսաթրթիռ հարցերը։ Մարքսիստական փիլիսոփայության համար այդ տարիներին կարևոր նշանակություն ուներ հեղափոխության սուբյեկտիվ գործոնի, հասարակական կյանքում առաջավոր գաղափարների, բանվոր դասակարգի քաղաքական կուսակցության կատարած դերի տեսական, բազմակողմանի հիմնավորումը։

Փիլիսոփայությունը Լենինի հոգևոր գործունեության ամենանվիրական բնագավառներից էր, հեղափոխական պրակտիկայի ընդհանրացման բանալին։ Նա խոր ու բազմակողմանի է ուսումնասիրել փիլիսոփայությունը. փիլիսոփայության պատմության հարցերով առանձնապես զբաղվել է ռուսաստանյան առաջին հեղափոխության պարտությունից հետո՝ ռեակցիայի տարիներին։ Այդ ժամանակ, ինչպես հայտնի է, մարքսիզմի հակառակորդները հարձակման անցան ո՛չ միայն քաղաքականության, այլև իդեոլոգիայի՝ մասնավորապես փիլիսոփայության բնագավառում։ Ռեակցիան ամեն կերպ փորձում էր հեղափոխությունը գլխատել, այն զրկել թեորիական զենքից, ապագաղափարայնացնել։ Այդ գործում նրան ծառայություն մատուցեցին Ռուսաստանի ռևիզիոնիստներն ու օպորտունիստները։

Հատկանշական է, որ իմպերիալիզմի շրջանում եվրոպական երկրներում ուժեղացող քաղաքական ռեակցիան տարածվում էր նաև գաղափարախոսության բնագավառում։ Ռեակցիայի պայքարը մարքսիզմի փիլիսոփայության դեմ միայն ռուսաստանյան երևույթ չէր։ Ուստի, փիլիսոփայության ասպարեզում ռուսաստանյան ռեակցիայի դեմ մղվող պայքարն ուղղված էր նաև վերջինիս արտասահմանյան համախոհների դեմ։

Լենինն իր երկերում խորապես և բազմակողմանի արժարժեց ժամանակի

*փիլիսոփայական մտքի հանգուցային պրոբլեմները, մասնավորապես ընդգծեց իդեալիստական և մատերիալիստական հոսանքների միջև ընթացող թեորիական սուր պայքարը։ Վեճերի հիմնական թիրախը իմացաբանության պրոբլեմներն էին։ Բուրժուական մտածողներն իմացաբանությունը համարում էին մարքսիզմի փիլիսոփայության անբավարար մշակած բնագավառը, հետևաբար, ամենախոցելի մասը և իրենց հարվածներն ուղղում վերջինիս դեմ։*

*Փիլիսոփայության պատմությունից հայտնի է, որ XVIII դարի մետաֆիզիկ մատերիալիստները միակողմանի էին քննարկում իմացաբանության խնդիրները։ Նրանց հասկացությամբ իմացության աղբյուրը միայն զգայությունն է, զգայական փորձը, որի բովանդակությունն արտաքին աշխարհի արտացոլումն է։ Սակայն, ինչպես նշում էր Էնգելսը, նրանք համարյա չէին ուսումնասիրում իմացության ձևերը, չէին հետաքրքրվում, թե ինչպիսի՞ն է իմացության բնույթը, ինչպե՞ս է այն արտացոլում արտաքին աշխարհը, որո՞նք են արտացոլման օրենքները և այլն։*

*Ի տարբերություն մետաֆիզիկական մատերիալիզմի, իմացության պրոբլեմներով բազմակողմանի զբաղվեցին նաև գերմանական կլասիկ իդեալիզմի ներկայացուցիչները, մասնավորապես Հեգելը։ Լինելով իդեալիստ, վերջիններս մտածողության ձևերը պատկերացնում էին արտաքին աշխարհից կտրված, որոնց առաջացման աղբյուրն, իբր թե մտածողությունն է։ Նրանց տեսությամբ՝ իմացությունը դարձավ մտածողության ինքնամտածողություն։*

*Փիլիսոփայության պատմության մեջ Մարքսին և Էնգելսին առաջինը հաջողվեց իմացաբանությունը քննել դիալեկտիկական մատերիալիզմի դիրքերից։ Իմացաբանության դիալեկտիկա-մատերիալիստական սկզբունքները պատշաճ լուսաբանում գտան* Ֆ. Էնգելսի Անտի-Դյուրինգ, Լյուդվիգ Ֆոյերբախը և գերմանական կլասիկ փիլիսոփայության վախճանը, Բնության դիալեկտիկան *և մյուս աշխատություններում։ Բացառիկ նշանակություն ունեցավ Մարքսի* Կապիտալը, *ուր, ինչպես Լենինն է նշել, մի գիտության, այսինքն քաղաքատնտեսության մեջ Մարքսը վարպետորեն կիրառել է մատերիալիստական տրամաբանությունը, դիալեկտիկան և իմացաբանությունը։*

*Մարքսը և Էնգելսը գործում էին նախաիմպերիալիստական դարաշրջանի պատմական պայմաններում, երբ գիտության նվաճումները հիմք էին ստեղծում մատերիալիստական աշխարհայեցողության հաստատման համար։ Թեև այդ ժամանակամիջոցում հիմնականում տարածված էր XVIII դարի մատերիալիզմն իր թերի ու սխալ ըմբռնումներով։ Փիլիսոփայական միտքն այդ ժամանակ անկարող եղավ գիտության նվաճումներից և հեգելյան դիալեկտիկայից անհրաժեշտ հետևություններ անել։ Նրա ներկայացուցիչներն անընդունակ գտնվեցին մատերիալիզմը տարածելու հասարակական երևույթների վրա։ Այդ պայմաններում, Մարքսը և Էնգելսն իրենց գլխավոր ուշադրությունը դարձրին մատերիալիզմի զարգացման, պատմության մատերիալիստական ըմբռնման վրա։ Նրանք ամբողջականացրին դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմը, այն դիտելով միասնության մեջ։*

*·Իր* Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ *աշխատության մեջ Լենինը նշում է, որ Մարքսը և Էնգելսը փիլիսոփայության ֆրոնտում հրապարակ եկան այն ժամանակ, երբ առաջավոր ինտելիգենցիայի և բանվորական շրջաններում իշխում էր մատերիալիզմը։ Նրանք իրենց գլխավոր ուշադրությունը դարձրին մատերիալիստական տեսությունը զարգացնելու և այն տարածելու հասարակական երևույթների իմացության վրա։ Իմացաբանության բնագավա-*



*ռում նրանք սահմանափակվեցին ուղղելով Ֆոյերբախի սխալները, հեգնելով մատերիալիստ Դյուրինգի գռեհկությունները, քննադատեցին Բյուխներին և այլն (տե՛ս Երկեր, հ. 14, էջ 322)։*

*Այստեղից պարզ է դառնում, որ Լենինը, զարգացնելով գիտական կոմունիզմի հիմնադիրների փիլիսոփայական հայացքները, իր աշխատություններում, ելնելով ժամանակի փիլիսոփայության ու գիտության նվաճումներից, հիմնականում ուշադրություն դարձրեց մարքսիստական իմացաբանության զարգացման խնդիրների վրա։*

*Հետագայում Լենինն առանձնակի ջանասիրությամբ զբաղվեց իմացու-
թյան դիալեկտիկական տեսության էական հարցերով։ Նա զարգացրեց ու
մշակեց արտացոլման մարքսյան տեսությունը, այն հարստացրեց ժամանակի
գիտության նորագույն տվյալներով, բանվոր դասակարգի հեղափոխական
շարժման փորձով։ Նա շեշտեց, որ արտացոլման տեսության էությունը մեզ-
նից դուրս գոյություն ունեցող արտաքին աշխարհի ընդունումն է։ Մեր ընկա-
լումները և պատկերացումները նրա արտապատկերներն են։ Դրանց ստուգու-
մը, ճշմարտացիությունը հաստատվում են պրակտիկայով։*

*Փիլիսոփայության և հեղափոխական պրակտիկայի միասնության սկզբ-
բունքը Լենինի ստեղծագործական անհատականության բնորոշ գիծն է։ Այդ
բացատրվում է, ամենից առաջ, նրանով, որ իմպերիալիզմի դարաշրջանում,
պրոլետարական հեղափոխության հաղթանակը դառնում էր օրվա պահանջ և
նրա հետ կապված կոնկրետ խնդիրների լուծումը ավելի, քան երբևիցե, պա-
հանջեց մարքսիստական փիլիսոփայության սերտ և բազմակողմանի կապը
դարաշրջանի հեղափոխական պրակտիկայի հետ։ Հատկանշական է նաև այն,
որ այդ ժամանակ գաղափարական պայքարում,— ինչպես Լենինն է գրում,—
բուրժուական փիլիսոփայությունը «մասնագիտանում է» իմացաբանության
խնդիրներում, հակադրվում մարքսիստական իմացաբանությանը, որը դառ-
նում է փիլիսոփայական կուսակցությունների (մատերիալիզմի և իդեալիզմի)
անհաշտ պայքարի ասպարեզ։*

*Իմացաբանության ոլորտում ծավալված գաղափարական պայքարում ան-
հրաժեշտ էր գիտականորեն հիմնավորված հակահարված տալ մարքսիզմից
իդեալիզմի դիրքերը նահանջած և էկլեկտիզմով տառապող ընդդիմախոսնե-
րին։ Նույնիսկ Գ. Վ. Պլեխանովը, որը համարվում էր միջազգային մարքսիս-
տական մտքի խոշորագույն ներկայացուցիչը, չհանդգնեց ձեռնամուխ լինել
փիլիսոփայական ու գաղափարական այդ բարդ պրոբլեմի լուծմանը։*

*Այն միակ հանճարեղ մտածողը, որը գաղափարական պայքարում պաշտ-
պանեց մարքսիստական ուսմունքի անաղարտությունը և ձեռնամուխ եղավ
մատերիալիստական իմացաբանության պրոբլեմների հիմնավոր մշակմանն
ու զարգացմանը, դա Վ. Ի. Լենինն էր։ Իմացաբանության պրոբլեմատիկան
լենինյան փիլիսոփայական ժառանգության հիմնական հարցերից է, որը հան-
գամանորեն քննարկված ու մշակված է* Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ
*երկում։ Այս հետազոտությամբ Լենինը գիտության մեծագույն նվաճումների
փիլիսոփայական ընդհանրացմամբ նոր աստիճանի բարձրացրեց փիլիսոփա-
յության կուսակցականության մարքսիստական սկզբունքը։ Նա միաժամանակ
մանրազնին քննում է իմացության պրոցեսի դիալեկտիկան, կատեգորիաները։
Այստեղ գիտականորեն հիմնավորված է, որ իմացաբանության գլխավոր աղ-
բյուրն արտաքին աշխարհի արտացոլումն է մարդու գիտակցության մեջ. այդ*

Կապակցությամբ հիմնավոր ու սպառիչ մերկացված է մախիզմի իդեալիստական էությունը։

Իմպերիալիզմի դարաշրջանում բուրժուական փիլիսոփայության մեջ մախիզմը հանդիսացավ այն հոսանքը, որը ցայտուն կերպով դրսևորեց իդեալիզմի ձգտումները՝ «հերքելու» մարքսիստական իմացաբանությունը։ Այդ իսկ պատճառով Լենինը վերհանեց մախիզմի իմացաբանության միակողմանիությունը, հակագիտական բնույթը, սոցիալական արմատները։ Լենինյան քննադատության կարևորությունն ու գործնական նշանակությունը մեծ են նաև մեր օրերում։ Արդի բուրժուական փիլիսոփայությունը մասնավորապես սուբյեկտիվ իդեալիստական հոսանքները, տարբեր ձևերով կրկնում են մախիզմի իմացաբանության սկզբունքները։

Մախիզմը փիլիսոփայության մեջ իր սկզբունքներով արտահայտում է իմպերիալիստական բուրժուազիայի սոցիալական պատվերը, ձգտում մատերիալիզմի և իդեալիզմի հաշտեցման քողի տակ հերքել մատերիալիզմը։ Այդ ընդհանրապես բնորոշ է և արդի բուրժուական, մասնավորապես, սուբյեկտիվ իդեալիստական փիլիսոփայությանը։

Մախիզմի փիլիսոփայության քաղաքական հավատամքն է՝ հաշտեցնել բանվոր դասակարգին բուրժուազիայի հետ, հավերժացնել սոցիալական անհավասարությունը, մթագնել բանվոր դասակարգի հեղափոխական գիտակցությունը և այլն։ Մախիզմը հերքում է օբյեկտիվ աշխարհի գոյությունը, բնությունը. բնության իրերն ու երևույթներն ընդունում որպես զգայությունների և պատկերացումների կոմպլեքսներ և բոլորին կոչ անում կամովի կարգավորել «զգայությունների աշխարհը», որից անկախ ոչինչ գոյություն չունի։ Մախիզմի փիլիսոփայության նման միտումը բխում է նաև բուրժուական հարաբերությունների սոցիալ-տնտեսական բնույթից։

Քննադատելով մախիզմի և այլ սուբյեկտիվ իդեալիստական հոսանքները, մասնավորապես իմացաբանության հիմնական աղբյուրները պարզելու հարցերում, Լենինը ցույց տվեց, որ գոյություն ունեն իմացաբանության միայն երկու հիմնական իրարամերժ փիլիսոփայական ուղղություններ՝ մատերիալիզմ և իդեալիզմ։ Մախիստների և նրանց ռուս աշակերտների փորձերը վեր բարձրանալու այդ ուղղություններից՝ անխուսափելիորեն հանգում էին իդեալիզմին։ Լենինը նշում է, որ դասակարգային հասարակության մեջ չի կարող լինել ապադասակարգային փիլիսոփայություն. մատերիալիզմն իմացողությունն ընդունում է որպես արտաքին աշխարհի արտացոլում մարդու գիտակցության մեջ, իսկ իդեալիզմն աշխարհը հանգեցնում է զգայություններին, պատկերացումներին, մտքերին և այլն։ Մատերիալիզմը հակոտնյա է իդեալիզմին. արդյոք իրերից ընթանանք դեպի զգայությունն ու միտքը,— գրում է Լենինը.— թե՞ մտքից ու զգայությունից դեպի իրերը (տե՛ս նույն տեղը, էջ 39)։ Առաջին դեպքում մենք գործ ունենք մատերիալիզմի հետ, իսկ երկրորդ դեպքում՝ իդեալիզմի։

Ելնելով մատերիալիզմի այդ հիմնական դրույթից, Լենինը բազմակողմանիորեն վերլուծեց մատերիա, զգայություն, գիտակցություն, փորձ, ճշմարտություն, պրակտիկա կատեգորիաները։ Նրա հայեցակետով մատերիան փիլիսոփայական կատեգորիա է, որով բնությունը սևեռվում է որպես օբյեկտիվ ռեալություն։ Սա արտացոլվում է մարդու գիտակցության մեջ տարբեր ձևերով՝ զգայություն, հասկացություն և այլն։ Զգայությունն օբյեկտիվ աշխարհի սուբյեկտիվ ակունքն է. այն արտացոլում է, նկարահանում, պատճենավո-



րում, պատկերում արտաքին աշխարհը։ Զգայությունն ինքնին գոյություն չունի և չի ներկայացնում միակ ռեալությունը, ինչպես պնդում են մախիստները։ Սակայն զգայությունը իրերի հայելանման պատճենավորումը չէ, այն կախված է զգայության օրգանների կառուցվածքից, մարդկանց օրգանիզմի առանձնահատկություններից, վիճակից։ Այս սուբյեկտիվ մոմենտը նույնպես պայմանավորված է նյութական աշխարհով։

Մարքսիստական գրականության մեջ Լենինն առաջինն էր, որ արծարծեց թռիչքների պրոբլեմն իմացության պրոցեսում։ Նա ընդգծեց՝ անօրգանական աշխարհին հատուկ չէ զգայությունը, շեշտեց, որ այն առաջանում է օրգանական աշխարհի գոյավորմամբ. նախ առաջանում է գրգռականությունը, այնուհետև՝ զգայությունը։ Նա միաժամանակ նշեց, որ թեպետ անօրգանական աշխարհին հատուկ չէ զգայությունը, բայց և այնպես մատերիայի կառուցվածքի հիմքում, կարող ենք ենթադրել, գոյություն ունի մի կարողություն, հատկություն, որը նման է զգայության։ Դա բուն արտացոլման հատկությունն է։

Հակառակ մախիստների, որոնք գտնում են, որ մատերիան՝ դա «զգայությունների (էլեմենտների)— օրինաչափական կապն է» կամ «զգայությունների— ավելի կամ պակաս կայուն խմբեր», Լենինը մատերիան դիտում է որպես օբյեկտիվ ռեալություն, որը գոյություն ունի մարդու կամքից և գիտակցությունից անկախ։ Լենինի այդ բնորոշումն իր սուր ծայրով ուղղված է իդեալիստական իմացաբանության, մասնավորապես՝ մախիզմի դեմ։

Մատերիայի լենինյան սահմանումից հետևում է, որ գիտության և փիլիսոփայության բոլոր կատեգորիաներն ու հասկացությունները ոչ այլ ինչ են, եթե ոչ օբյեկտիվ ռեալության մեջ տեղի ունեցող կապի և զարգացման արտացոլման տարբեր ձևեր։ Նրանց բովանդակությունը արտաքին աշխարհն է և ոչ թե զգայությունների կոմպլեքսը կամ թե գիտակցության տարբեր ձևերը, ինչպես կարծում են իդեալիստները, մասնավորապես, մախիստները և նրանց ռուսական համախոհները։ Այստեղ ասենք, որ այն օրերի մախիզմի պես իդեալիստական փիլիսոփայության ներկա այլատեսակությունները ևս հաճախ չարաշահում են «փորձ» հասկացությունը։ Լենինը նշում էր, որ մախիզմը ընդհանրապես հիմնված է այդ հասկացության էության խեղաթյուրման վրա. «փորձ» հասկացությունը կարելի է ըմբռնել մատերիալիստորեն և իդեալիստորեն, նայած թե ինչ ենք պատկերացնում նրա տակ։ Եթե դրա տակ պատկերացնում ենք զգայությունների գումարը, ապա այն պարզապես իդեալիզմ է, իսկ եթե՝ մարդու ակտիվ ներգործությունը բնության վրա, որի ընթացքում նա փոխելով բնությունը, փոխում է նաև իր բնությունը, ինքնին այն մատերիալիզմ է։ Փորձը,— ասում է Լենինը,— սքողում է և՛ մատերիալիստական, և՛ իդեալիստական գծերը փիլիսոփայության մեջ սրբագործելով նրանց խառնաշփոթումը (տե՛ս նույն տեղը, էջ 187)։

Լենինը հիմնավորեց և զարգացրեց իմացաբանության կուսակցականության սկզբունքը փիլիսոփայության մեջ. իդեալիստական իմացաբանությանը նա հակադրեց մատերիալիստական իմացաբանություն։ Էմպիրիոկրիտիցիզմի գնոսեոլոգիական սխոլաստիկայի հետևում չի կարելի չտեսնել կուսակցությունների պայքարը փիլիսոփայության մեջ,— գրում է Լենինը,— մի պայքար, որը, վերջին հաշվով, արտահայտում է արդի հասարակության թշնամական դասակարգերի տենդենցներն ու իդեոլոգիան։ Նորագույն փիլիսոփայությունը նույնպես կուսակցական է, ինչպես և երկու հազար տարի սրանից առաջ (տե՛ս նույն տեղը, էջ 480)։

Արտացոլման լենինյան տեսությունը մարքսիստական իմացաբանության զարգացման նոր փուլն է, գիտական նվաճումների փիլիսոփայական ընդհանրացման արտահայտությունը։ Այն ժամանակակից գիտության փիլիսոփայական հիմքն է, մեթոդոլոգիական ուղենիշը։

Լենինն իմացաբանության մեջ վճռական պայքար է մղել «սիմվոլների տեսության» դեմ, որը իդեալիզմի և ագնոստիցիզմի արտահայտման յուրահատուկ ձև է։ Իդեալիզմը և ագնոստիցիզմը փորձեր են անում զգայությունը՝ որպես օբյեկտիվ աշխարհի արտացոլում, փոխարինել պայմանական նշաններով, սիմվոլներով և այլն։ Լենինը նման փորձերի մեջ տեսնում էր մատերիալիզմն իդեալիզմով ննենգափոխելու միջոց։ Այդ կապակցությամբ նա քննադատում էր Պլեխանովի թույլ տված սխալը, վճռականորեն հերքում «սիմվոլների» և, մասնավորապես, Հելմհոլցի տեսությունը։ Այդ առթիվ Լենինը գրում է. Եթե՛ զգայություններն իրերի պատկերները չեն, այլ միայն նշանները կամ սիմվոլները, որոնք չունեն նրանց հետ «ոչ մի նմանություն», ապա Հելմհոլցի մատերիալիստական ելակետային նախադրյալը խորտակվում է, արտաքին առարկաների գոյությունը ենթարկվում է որոշ տարակուսանքի, որովհետև նշանները կամ սիմվոլները միանգամայն հնարավոր են երևակայական առարկաների վերաբերմամբ, և ամեն ոք գիտե այդպիսի նշանների կամ սիմվոլների օրինակներ (տե՛ս նույն տեղը, էջ 310)։

Լենինը շեշտում է, որ զգայությունը ոչ թե անջատում է մարդուն արտաքին աշխարհից, այլ, ընդհակառակը՝ անմիջական կապն է վերջինիս հետ։ Ուրեմն, ճանաչողությունը ո՛չ թե բաժանում է մարդուն շրջապատից, այլ կապում է նրան դրա հետ, օգնում ճանաչելու բնության օրենքները և, օգտագործելով դրանք, ներգործում բնության վրա։ Հետևաբար, եթե մատերիալիստի համար զգայությունը մարդու անմիջական կապն է բնության հետ, ապա իդեալիստի համար այն մտացածին պատնեշ է մարդու և բնության միջև։

Իր Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատության մեջ Լենինը քննել է XIX դարի վերջի բնագիտության, մասնավորապես ֆիզիկայի ճգնաժամի պրոբլեմը, որի հիմնական պատճառը նա համարում էր այն, որ փիլիսոփայական խնդիրներում բնագիտությունը հարել է իդեալիզմին։ Այն նահանջ էր մատերիալիստական իմացաբանության սկզբունքներից։ Փոխանակ բնագիտության մեջ տեղի ունեցող հայտնագործությունները դիտելու որպես օբյեկտիվ աշխարհի նոր օրինաչափությունների արտացոլում, առանձին բնագետներ սխալ բացատրեցին այդ երևույթները։

Պայքարելով իդեալիզմի և ագնոստիցիզմի դեմ, Լենինը զարգացրեց մարքսիստական ուսմունքը ճշմարտության մասին։ Ամեն դեպքում ճշմարտությունն օբյեկտիվ է, մարդու գիտակցության մեջ՝ հասկացությունների, զգայությունների և այլ ձևերով արտաքին աշխարհի արտացոլում։ Դրանք իմացության և ընկալման ձևեր են, որոնց բովանդակությունն օբյեկտիվ է։

Լենինը մշակեց և զարգացրեց մարքսիստական ուսմունքը պրակտիկայի վերաբերյալ։ Ճշմարտության չափանիշը պրակտիկան է, կյանքը։ Մատերիալիստի համար,— գրում է Լենինը,— մարդկային պրակտիկայի «հաջողությունն» ապացուցում է մեր մտապատկերների համապատասխանությունն այն իրերի օբյեկտիվ բնությանը, որը մենք ընկալում ենք (տե՛ս նույն տեղը, էջ 175)։ Պրակտիկայի պրոբլեմը Լենինը հիմնավորում է պայքարելով բուրժուական փիլիսոփայության նորագույն հոսանքների, մասնավորապես, մախիզմի



և նրա ժամանակակից այլատեսակության՝ պրագմատիզմի դեմ։ Սրանք ճշմարտության չափանիշը համարում են առօրյա «հաջողությունը» կյանքում։ Եթե այդ տեսանկյունից նայելու լինենք, ամեն մի հանցագործություն հասարակության դեմ կարող է ճշմարտության չափանիշ համարվել։ Խորացնելով Մարքսի միտքը պրակտիկայի մասին, Լենինն ընդգծում է. ճշմարտությունը պետք է համապատասխանի օբյեկտիվ բնության, ռեալ կյանքի օրինաչափություններին, «կյանքի, պրակտիկայի տեսակետը պետք է լինի իմացաբանության առաջին և հիմնական տեսակետը» (տե՛ս նույն տեղը, էջ 179)։ Լենինի հարցադրման առանձնահատկություններից մեկն այն է, որ նա պրակտիկան ըմբռնում է բացարձակ և հարաբերական իմաստով. Նախ հասարակական պրակտիկան ամեն դեպքում հանդիսանում է ճշմարտության չափանիշը, սակայն այն ձեռք է բերում հարաբերական իմաստ՝ միշտ սահմանափակված է պատմական որոշ պայմաններով։ «...Չպետք է մոռանալ, գրում է Լենինը, որ պրակտիկայի կրիտերիան բնավ չի կարող ըստ էության լիակատար կերպով հաստատել կամ հերքել որևիցե մարդկային մտապատկեր։ Այդ կրիտերիան ևս այնքան «անորոշ» է, որ թույլ չի տալիս մարդկային գիտելիքներին դառնալ «բացարձակ», և միևնույն ժամանակ այնքան որոշ է, որ անխնա պայքար է մղում իդեալիզմի և ագնոստիցիզմի բոլոր տարատեսակությունների դեմ» (նույն տեղում, էջ 180)։

Քննելով արտացոլման տեսության պրոբլեմատիկան, Լենինը լուսաբանել է նաև մարքսիստական իմացաբանության երկրորդ կողմը՝ արտացոլման օրենքները։ Այսպիսով, Լենինը Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատության մեջ պայքարելով մախիզմի դեմ, հիմնավորել և զարգացրել է առաջին կողմի հետ կապված պրոբլեմները։ Իմացաբանության այդ երկրորդ կողմին, որը սերտորեն կապված է առաջինի հետ, Լենինը հատուկ ուշադրություն է նվիրում իր Փիլիսոփայական տետրերում։

Փիլիսոփայական տետրերը Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմի ուղղակի շարունակությունն են։ Եթե վերջինում Լենինը մշակել է իմացաբանական-տեսական պրոբլեմները, ապա Փիլիսոփայական տետրերում, դրանց հետ միասին, առավել խորությամբ անդրադարձել է դիալեկտիկական մեթոդի մշակման հարցերին։

Լենինը պատրաստվում էր գրել մեծ, սիստեմավորված աշխատություն՝ նվիրված մատերիալիստական դիալեկտիկային, սակայն, պարագաները հնարավորություն չտվեցին իրականացնելու այդ մտադրությունը։

Դիալեկտիկայի օրենքները և կատեգորիաները, լինելով իրականության զարգացման արտացոլումը, ճանաչման առումով ունեն և՛ սկզբունքային, և՛ մեթոդոլոգիական նշանակություն։ Այդ օրենքները դրսևորվում են թե՛ որպես օբյեկտիվ աշխարհի զարգացման օրենքներ, և թե որպես ճանաչողության ու տրամաբանության, բայց ամեն անգամ յուրահատուկ ձևով։

Պլատոնի ու Արիստոտելի, Բեկոնի ու Դեկարտի, Լոկի ու Յումի, Կանտի ու Շոպենհաուերի և շատ ուրիշների փիլիսոփայական սիստեմներում օնթոլոգիան (գոյաբանությունը), տրամաբանությունը (ուսմունք մտածողության ձևերի մասին), գնոսեոլոգիան (ուսմունք իմացության մասին) մեկնաբանվում էին միմյանցից անջատ։ Մի շարք դեպքերում դրանք արտաքնապես էին իրար հատում, բայց չէին համընկնում միասնության, միասնական փիլիսոփայական սիստեմների համակարգում։

Օնթոլոգիայի, տրամաբանության, ճանաչողության տեսության խզման և

դրանց իրար հակադրման այդ թյուրըմբռնման առնչությամբ, փիլիսոփայա-
կան մտքի իսկական գագաթնակետ է դիալեկտիկայի տրամաբանության և
ճանաչողության տեսության միասնության լենինյան ըմբռնումը։
«Տրամաբանությունը ուսմունք է ոչ թե մտածողության արտաքին ձևերի
մասին, այլ «բոլոր նյութական, բնական և հոգևոր իրերի» զարգացման,
այսինքն՝ աշխարհի և նրա իմացության ամբողջ կոնկրետ բովանդակության
զարգացման օրենքների մասին, այսինքն՝ աշխարհի իմացության պատմու-
թյան արդյունքն է, հանրագումարը, հետևությունը» (Երկեր, հ. 38, էջ 103)։
Լենինն ուսուցանել է, որ դիալեկտիկան, աշխարհի ճանաչողության տե-
սությունից ու պատմությունից անջատ, կորցնում է իր օբյեկտիվ նշանակու-
թյունը և վերածվում է ապրիորի սխեմայի։ Երբ ճանաչողության ըմբռնումը
դիալեկտիկական չէ, օբյեկտիվ ռեալության իմացումը, ինքնին, վերածվում է
մետաֆիզիկական գնոսեոլոգիայի։ Օբյեկտիվ պրոցեսներից, աշխարհում տեղի
ունեցող հակասալի շարժումներից ու զարգացումից կտրված տրամաբանու-
թյունը դառնում է մետաֆիզիկական։
Լենինն այնուհետև ընդգծել է, որ տրամաբանությունը, դիալեկտիկան և
իմացության տեսությունը, ըստ էության, համընկնում են։ Դրանք ամբողջա-
կան միասնական գիտություն են, որում հասարակական պրակտիկայի պրոցե-
սից ընդհանրացված, տրամաբանորեն մշակված է օբյեկտիվ աշխարհի իմա-
ցության պատմությունը։
Արտացոլման ձևերի և օրենքների մշակման ու կոնկրետացման գործում
նա հսկայական նշանակություն է տալիս Հեգելի փիլիսոփայական ժառանգու-
թյան հետազոտմանը։ Ուսումնասիրելով նրա հարուստ ժառանգությունը, շըր-
կելով Հեգելի ժառանգության նկատմամբ Պլեխանովի և մյուսների կատարած
սխալները, Լենինը մատերիալիստորեն է մշակել դիալեկտիկայի կարևորա-
գույն պրոբլեմները։ Այդ կապակցությամբ առանձնակի արժեքավոր է նրա
Դիալեկտիկայի հարցի շուրջը ֆրագմենտի հոյակապ շարադրանքը։ Այստեղ
Լենինը մի անգամ ևս համակողմանիորեն հիմնավորել է մատերիալիստական
դիալեկտիկայի հիմնական՝ հակադրությունների միասնության ու պայքարի
օրենքը, որը նա համարում է դիալեկտիկայի միջուկը, բնության ու հասարա-
կական բոլոր երևույթների ճանաչման գլխավոր պայմանը։ Աշխարհի բոլոր
պրոցեսները,— գրում է Լենինը,— իրենց «ինքնաշարժման», իրենց սպոնտան
զարգացման, իրենց կենդանի կյանքի մեջ ճանաչելու պայմանը նրանց իմա-
ցումն է՝ որպես հակադրությունների միասնություն (Երկեր, հ. 38, էջ 456)։
Լենինն անողոք պայքար է մղել բոլոր այն բուրժուական փիլիսոփաների
դեմ, որոնք չարաշահելով բնագիտության, մասնավորապես, ֆիզիկայում տե-
ղի ունեցած հայտնագործությունները, փորձում էին ո՛չ միայն մատերիալիզմը
դուրս վանել բնագիտությունից, այլև դիալեկտիկան փոխարինել ռելյատիվիզ-
մով։ Ըստ բուրժուական ռելյատիվիզմի, ճշմարտությունը սոսկ սուբյեկտիվ և
հարաբերական բնույթ ունի։ Այն հերքում է բնությունը, որպես օբյեկտիվ
ռեալություն։ Մինչդեռ, Լենինն ապացուցել է, որ իրականությունն արտացո-
լող գիտությունը դիալեկտիկական մի պրոցես է, որի ընթացքում իմացու-
թյունն անընդհատ մոտենում է բնության, անկարող լինելով լիովին ընդգրկել
այն։ Նա ընդգծել է, որ արտացոլումը մեռյալ ակտ չէ, այլ ցույց է տալիս իմա-
ցության պրոցեսում բացարձակ և հարաբերական ճշմարտությունների դիա-
լեկտիկան, հիմնավորում արտացոլվող ձևերի տարբերականությունը և այլն։
Առանձնապես անհրաժեշտ է նշել այն խոշոր ծառայությունը, որը մա-



տուցել է Լենինը դիալեկտիկան որպես գիտություն մշակելու բնագավառում։
Հենվելով Մարքսի և Էնգելսի հիմնարար դրույթների վրա, Լենինը ժխտեց այն
տեսակետը, ըստ որի իմացաբանությունը հակադրվում է դիալեկտիկային, և
ապացուցեց, որ տրամաբանությունը՝ դիալեկտիկան և իմացաբանությունը,
միասնական են. «Դիալեկտիկան է մարքսիզմի իմացության տեսությունը»,—
գրում է Լենինը։ Այս առնչությամբ նա քննադատեց Պլեխանովին, դիալեկտի-
կան որպես յուրահատուկ փիլիսոփայական գիտություն թերագնահատելու, և
մախիզմի իդեալիստական իմացաբանությունը հիմնավոր չքննադատելու հա-
մար։
Վերլուծելով դիալեկտիկական հակասությունները ու կատեգորիաները,
Լենինը շեշտել է, որ դրանք օբյեկտիվ աշխարհի արտացոլման ձևերն են։ Ինչ-
պես օբյեկտիվ աշխարհն է գտնվում անընդհատ շարժման և զարգացման պրո-
ցեսում, նույնպիսի պրոցեսում է գտնվում և իմացությունը։ Անկախ դիալեկ-
տիկայից, գոյություն չունի մի ինչ-որ հատուկ իմացության տեսություն։ «Ի-
մացությունը մտածողության հավերժական, անվերջ մոտեցումն է օբյեկ-
տին,— գրում է Լենինը։— Բնության արտացոլումը մարդու մտքի մեջ պետք
է հասկանալ ոչ թե «մեռյալ», ոչ թե «աբստրակտ», ոչ թե առանց շարժման,
ոչ թե առանց հակասությունների, այլ շարժման, հակասությունների առա-
ջացման և դրանց լուծման հավերժական պրոցեսում (Երկեր, հ. 38, էջ 237)։
«Դիալեկտիկայի հարցի շուրջ» հոդվածում, Լենինը համառոտակի, բայց
խոր գիտականությամբ բնութագրում է դիալեկտիկայի էությունը, ցույց տա-
լիս հակադրությունների միասնության ու պայքարի օրենքի գործողությունը,
բնորոշում շարժման ներքին աղբյուրը։
Որքան մտածողությունը ճիշտ է համապատասխանում իրականությանը,
«բացարձակ զարգացմանը, շարժմանը», «հակադրությունների բացարձակ
պայքարին», այնքան մարդու գործողությունը արդյունավետ է։ Լենինը թերի
և միակողմանի էր համարում այն ըմբռնումը, ըստ որի զարգացումը լոկ մե-
ծացում և փոքրացում է, միայն քանակական փոփոխությունների հանրագու-
մար։ Մինչդեռ, երևույթները դիալեկտիկորեն քննելիս, «գլխավոր ուշադրու-
թյունն ուղղվում է բուն ինքնաշարժման աղբյուրի իմացությանը»։ Այսպիսով,
ըստ Լենինի, զուտ էվոլյուցիոն ըմբռնումը մեռյալ է. միայն իրական դիալեկ-
տիկան է տալիս ողջ գոյի էության ճիշտ ըմբռնման բանալին։
Լենինը պահանջում է չսահմանափակվել իդեալիստական ուսմունքների
սոցիալական արմատների բնութագրումով, անհրաժեշտ է գտնում բացահայ-
տել դրանց գնոսեոլոգիական արմատները, որոնք պարունակվում են իմացու-
թյան պրոցեսում։
Վ. Ի. Լենինը մարքսիստական իմացաբանությունը զարգացրեց ո՛չ միայն
թեորիապես, այլև գործնականում՝ վարպետորեն և ստեղծագործաբար կիրա-
ռելով նրա սկզբունքներն իմպերիալիզմի դարաշրջանի օրինաչափությունների
և առանձնահատկությունների բացահայտման ու հիմնավորման մարզում։
Նա նոր աստիճանի բարձրացրեց մարքսիստական պատմահայեցողու-
թյունը։ Ելնելով ժամանակի պահանջներից, Իլյիչը մշակեց մարքսիստական
ուսմունքը պրոլետարական կուսակցության մասին, ցույց տվեց նրա քաղա-
քական, գաղափարական, կազմակերպչական տակտիկան բուն դասակար-
գային պայքարում և բանվոր դասակարգի իշխանության պայմաններում։ Նա

փայլուն մշակեց ու պրակտիկայում լուծեց ազգային հարցը։ Այս և ուրիշ պրոբլեմների հիմնավորումն ու լուսաբանումը խոշոր ներդրում հանդիսացան ո՛չ միայն մարքսիստական պատմահայեցողության գանձարանում, այլև դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի մյուս բնագավառներում։

Լենինը մտքի և գործի մարմնացում էր, մասսաների առաջնորդ, հեղափոխական շարժման մեծագույն գործիչ։

Նա հսկա էր ո՛չ միայն ընդհանուր փիլիսոփայական և հասարակագիտական պրոբլեմների լուծման գործում, այլև պրոլետարիատի դասակարգային պայքարի առօրյա խնդիրներում, պրակտիկայի ու տեսության զուգակցման հարցերում։ Որպես առաջնորդ և քաղաքական գործիչ նա կարողանում էր կանխատեսել պատմական իրադարձությունները, գտնել դեպքերի այն հիմնական օղակը, որին տիրապետելով կուսակցությունը հասնում է իր նպատակին։

Որպես հանճարեղ հեղափոխական, նա մեծ նշանակություն էր տալիս մարքսիստական իմացաբանությանը, այն սերտորեն կապելով հեղափոխական շարժումների հրատապ խնդիրների հիմնավորման և լուծման հետ։ Չէ՞ որ իբրև մարքսիստ մտածող նրա համար գլխավորը աշխարհը վերափոխելն էր։

Բանվորական հեղափոխական շարժումների հրատապ հասարակական-քաղաքական խնդիրները տեսական խոր հիմնավորում էին գտել Լենինի բոլոր աշխատություններում։ Այստեղ գիտական վերլուծությունները բխում են կյանքի խոր իմացությունից։ Հենվելով մարքսիստական իմացաբանության այն հիմնական սկզբունքների վրա, որ հասկացությունները և օրենքները պետք է լինեն ճկուն և արտացոլեն կյանքի օբյեկտիվ պրոցեսը, Լենինն անողոք պայքար է մղել սուբյեկտիվիզմի դեմ իմացաբանության մեջ։ Դիալեկտիկայի սուբյեկտիվ ըմբռնումը և կիրառումը անխուսափելիորեն հանգեցնում են սոֆիստիկային և էկլեկտիզմին։

Վարպետորեն կիրառելով մարքսիստական իմացաբանության սկզբունքները, Լենինը ո՛չ միայն բացահայտեց իմպերիալիզմի դարաշրջանի հակասությունները, այլև նշեց դրանցից դուրս գալու ելքը։ Լենինյան հետևությունները արտահայտվեցին սոցիալիստական հեղափոխության, պրոլետարիատի դիկտատուրայի՝ ինչպես նաև սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ուսմունքում, որի պերճախոս վկայությունն են՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, ժամանակակից միջազգային, կոմունիստական ու բանվորական շարժման վերելքը։ Այդ բոլորը լենինյան ստեղծագործական մտքի, գիտական եզրակացությունների կենդանի մարմնավորումներն են։





Հ. ԱՍԼԱՆՅԱՆ

# ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՎԵՀՈՒԹՅՈՒՆԸ

Համաշխարհային-պատմական մեծագույն պրոցեսներով է բնութագրվում մեր դարաշրջանի հասարակական զարգացման դինամիկան։ Իրադարձությունների ու պրոցեսների այդ խայտաբղետ, բարդ ու հակասական հորձանուտում մարքսիզմ-լենինիզմը բացահայտում է պատմության ներքին տրամաբանությունը, հասարակական-առաջադիմության հիմնական բովանդակությունն ու առաջատար գիծը, որը, օբյեկտիվ հակասությունների հաղթահարմամբ, իր համար ճանապարհ է հարթում դեպի կոմունիզմ։

Նշելով Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը, առաջադեմ մարդկությունն առանձնապես խորն է գիտակցում, որ միայն լենինիզմի տեսանկյունով կարելի է ըմբռնել ժամանակակից պատմական պրոցեսների էությունն ու տենդենցները, ճիշտ գնահատել այդտեղ գործող ուժերի դերը։

Երբ փորձում ենք լենինյան դարի բարձունքից իմաստավորել մեր կյանքը, համաշխարհային պատմությունն իր անցյալով, ներկայով ու հավանական ապագայով, ապա մեր աչքի առջև հառնում է հեղափոխական մտքի ու գործի տիտանը, մեր դարաշրջանի սիմվոլ Լենինի անմահ կերպարը։ «Այն ամենը, ինչով մենք ապրում ենք, ինչ մենք նվաճել ենք, ստեղծել ենք և ստեղծում ենք հարազատ սովետական հողում, անխզելիորեն կապված է Լենինի անվան և ուսմունքի հետ, նրա հիմնադրած կոմունիստական կուսակցության գործունեության հետ։ Մեր կուսակցության ու ժողովրդի բոլոր մեծագործությունները ոգեշնչված են լենինյան գաղափարներով, որոնք միշտ սլանում են դեպի առաջ, դեպի ապագան» («Правда», 1969 թ., 21-ը հունվարի)։

Ժամանակն ապացուցեց, որ Լենինի ուսմունքն ու գործը, որոնց մեջ գիտականորեն ամփոփված են պատմության ընթացքն ու իմաստը, պրոլետարիատի, ժողովուրդների հերոսական պայքարի փորձը, գիտության ու քաղա-

քակրթության զարգացման փիլիսոփայական սինթեզն են։ Լենինի անվան հետ է կապված մարդկության կյանքի մի ամբողջ հեղափոխական դարաշրջան,— ասված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում։ Լենինը Մարքսի ու Էնգելսի հեղափոխական մտքի ու գործի հանճարեղ շարունակողն ու զարգացնողն է։ Շատ է հարուստ լենինյան գաղափարական տեսական ժառանգությունը։ Նրա գործերում հսկայական բարձրության է հասցված մարքսիզմն ամբողջությամբ և նրա յուրաքանչյուրն մասն առանձին՝ փիլիսոփայությունը, պատմության մատերիալիստական ըմբռնումը, քաղաքատնտեսությունը, գիտական կոմունիզմը։

Լենինի աշխատություններում բացահայտված են սոցիալական հեղափոխությունների, սոցիալիզմի ծագման ու զարգացման, կոմունիզմի շինարարության օրինաչափությունները։ Այնտեղ հանգամանորեն լուսաբանված են մեր դարասկզբում բնագիտության մեջ կատարված հեղաշրջումը, ֆիզիկայի ճգնաժամի էությունը, դրա պատճառները և դրանից դուրս գալու ելքը։ Անգնահատելի գանձ է բուրժուական փիլիսոփայության նորագույն հոսանքների և ռևիզիոնիզմի լենինյան քննադատությունը։ Այդ բոլորն իրենց խոր մշակումն են գտել այնպիսի գործերում, ինչպիսիք են՝ Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, Փիլիսոփայական տետրեր, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա, Օպորտունիզմը և երկրորդ ինտերնացիոնալի կրախը, Պետություն և հեղափոխություն, «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ և այլն։

Այդ աշխատություններում քննարկված են փիլիսոփայության, բնագիտության ու սոցիալական գիտության մեծագույն հարցերը։ Տեսական ժառանգության այդ անսպառ գանձարանում վճռական դերը հատկացված է մարքսիստական դիալեկտիկա-մատերիալիստական մեթոդին, որն, ըստ Լենինի, ամբողջ մարքսիզմի տեսական հիմքն է, նրա հեղափոխական ոգին։

Մատերիալիստական դիալեկտիկան, Լենինի բնորոշմամբ, մարդկային մտքի մեծագույն նվաճումն է։ Այն ուսմունք է օբյեկտիվ աշխարհի և դրա արտացոլումը հանդիսացող մարդկային մտածողության զարգացման ամենաընդհանուր օրենքների մասին, բովանդակությամբ հարուստ ու խոր, բազմակողմանի ու ճկուն ուսմունք։ Թե ինչ տեղ է գրավում դիալեկտիկան մարքս-լենինյան տեսության սիստեմում, կարելի է պատկերացնել Լենինի հետևյալ խորիմաստ ձևակերպումից. «Եթե փորձենք մի բառով սահմանել ամբողջ նամակագրության (խոսքը Մարքսի ու Էնգելսի նամակագրության մասին է— Հ. Ա.) այսպես ասած, կիզակետը՝ այն կենտրոնականը, որի մեջ ամփոփվում է արտահայտվող և քննարկվող գաղափարների ցանցը, ապա այդ բառը կլինի դիալեկտիկան։ Մատերիալիստական դիալեկտիկայի կիրառումն ամբողջ քաղաքատնտեսության վերամշակման նկատմամբ՝ սկսած նրա հիմքից, պատմության, բնագիտության, փիլիսոփայության, բանվոր դասակարգի քաղաքականության ու տակտիկայի նկատմամբ— ահա թե ինչն է ամենից շատ հետաքրքրում Մարքսին ու Էնգելսին, ահա թե ինչու առավել էական և առավել նոր խոսք են ասել նրանք, ահա թե որն է նրանց արած հանճարեղ առաջքայլը հեղափոխական մտքի պատմության մեջ» (Երկեր, հ. 19, էջ 694—695)։

Մատերիալիստական դիալեկտիկայի սկզբունքների, օրենքների ու կատեգորիաների համակողմանի մշակումը մարդկության պատմական պրակտիկայի ու գիտության նորագույն նվաճումների ընդհանրացման հիման վրա, նրա կիրառումը օբյեկտիվ աշխարհի, դրա ճանաչման ու վերափոխման պրո-



ցեսում— ահա լենինյան մեթոդոլոգիայի վճռական պահանջը։ Լենինը մատերիալիստական դիալեկտիկայի մեծագույն վարպետն էր և տվել է այն կիրառելու անգերազանց օրինակներ։ Բոլոր օպորտունիստների և ռևիզիոնիստների արատը նա համարում էր մատերիալիստական դիալեկտիկայի անտեսումը կամ աղավաղումը։ Պատմությունն աներկբա ցույց է տալիս, թե ինչ է ստացվում, երբ ռեֆորմիստները, աջ և «ձախ» ռևիզիոնիստները փորձում են աղավաղել այդ ուսմունքը, թուլացնել նրա ուժը և, որպես միասնական ինտերնացիոնալ ուսմունք, խարխլել նրա ամբողջականությունը։ Լենինը սովորեցնում էր աչքի լույսի պես պահպանել մարքսիստական տեսության մաքրությունը, հետևողական ու անհաշտ պայքար մղել բուրժուական իդեոլոգիայի ու օպորտունիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ, ամրապնդել ժողովրդի կոմունիստական համոզվածությունն ու գաղափարայնությունը։

Անչափ ուսանելի է պատմության դիալեկտիկայի լենինյան բացահայտումը։ Նրա աշխատություններում առաջադրված ու լուսաբանված են ոչ միայն անցյալը, այնտեղից մենք իմանում ենք մեր դարաշրջանի մեծագույն պրոբլեմները, պահանջներն ու խնդիրները, դրանց լուծման ուղիները։ Պատմությունը, շարունակ հիշեցնում էր Լենինը, ուղիղ և հարթ պողոտա չէ, այլ բարդ, հակասական, զիգզագներով ու շրջադարձերով լի։ Պատմությունը շատ ավելի հարուստ է բովանդակությամբ, հակասական, խորամանկ, քան կարող են պատկերացնել ամենահեղափոխական դասակարգերն ու ամենահանճարեղ մտածողները։

Հեղափոխական մարքսիզմը, Լենինի բնութագրմամբ, օժտված է գաղափարական բովանդակության հարստությամբ և կուռ ամբողջականությամբ։ Մեծ առաջնորդի գրվածքներում վառ դրսևորվում են մարքսիզմի ամենաերևելի, ամենավճռական առանձնահատկությունները՝ խոր գիտականությունն ու մեծագույն հեղափոխականությունը, այսինքն՝ օբյեկտիվ ճշմարտացիությունն ու հետևողական կուսակցականությունը։ Կոմունիստական գաղափարախոսության այդ երկու կողմերը՝ գիտական միտքն ու հեղափոխական գործողությունը, անխզելիորեն կապված են միմյանց, բխում են իրարից, փոխադարձ ներթափանցման վիճակում գտնվում միմյանց նկատմամբ։

Մարքսի ուսմունքն ամենազոր է, ասում է Լենինը, որովհետև ճշմարտացի է, իսկ ճշմարտացի է, որովհետև խոր, բազմակողմանի ու ճիշտ է արտացոլում օբյեկտիվ իրականությունն իր օրինաչափ զարգացման ընթացքով, իսկ դա համընկնում է հասարակական պրոգրեսի, աշխատավոր մարդկության շահերի, նպատակների ու պահանջմունքների հետ։

Գիտական այդ մեթոդոլոգիայով են ղեկավարվում կոմունիստական ու բանվորական կուսակցություններն իրենց ամբողջ գործունեության ընթացքում, լենինիզմն արդարացիորեն դիտելով որպես իրենց ուժի աղբյուր։ Այդ սկզբունքի կոնկրետ կիրառման փայլուն օրինակներ են ՍՄԿԿ XXIII համագումարի, կոմունիստների մոսկովյան խորհրդակցության ծրագրային որոշումները։ Լենինիզմը եղել և մնում է որպես խաղաղության, մարդկության ազատության ու պրոգրեսի մեծ դրոշը։ Ահա թե ինչու միլիոնավոր աշխատավորներ, բոլոր առաջադեմ կազմակերպությունները, կուսակցություններն ու գործիչները շարունակ դիմում են լենինիզմին՝ այնտեղ որոնում մեր դարաշրջանի այրող հարցերի պատասխանը, դրա օգնությամբ իմաստավորում անցյալը, ներկան, ապագան, իրենց կյանքի ուղին։ Այժմ մեր օրերում առանձնապես վառ ու գունեղ են դրսևորվում Լենինի ուսմունքի խորությունը, հա-

*ըրստությունը, մարդասիրական էությունն ու աշխարհափոխիչ վիթխարի ուժը։*
*«Լենինի անունը դարձել է մեծ Հոկտեմբերի հաղթանակի, խոշորագույն*
*հեղափոխական մեծագործությունների սիմվոլ, որոնք արմատապես փոխեցին*
*աշխարհի սոցիալական կերպարանքը, նշանավորեցին մարդկության շրջա-*
*դարձը դեպի սոցիալիզմ և կոմունիզմ»,— ասված է Լենինի ծննդյան 100-ամ-*
*յակի առթիվ կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ներկայա-*
*ցուցիչների մոսկովյան խորհրդակցության դիմումի մեջ։ Լենինյան գաղա-*
*փարները մարմնացած են Սովետական մեծ Միության մեջ։ Այդ գաղափար-*
*ներով են տոգորված սոցիալիստական ազգերի սերտ համագործակցությունն*
*ու բարեկամությունը, որը համաշխարհային սոցիալիստական սիստեմի ան-*
*սասանության, մարդկության առաջադիմության հուսալի երաշխիքն է։*
*Լենինը սովորեցնում էր գաղափարախոսական հարցերում հետևողակա-*
*նորեն կիրառել մարքսիստական կուսակցականության (իսկ դա նշանակում է*
*նաև խիստ գիտական) սկզբունքը։ Այդ նշանակում է նաև հակառակորդների*
*ըմբռնումների, սիստեմների, դեկլարացիաների ետևում տեսնել նրանց դա-*
*սակարգային իմաստն ու տենդենցները։ Իլյիչը գրել է՝ «չի կարելի հավատալ*
*նրանց և ոչ մեկի ոչ մի խոսքին, երբ խոսքը փիլիսոփայության մասին է»*
(В. И. Ленин, ПСС, т. *18*, стр. *363*)*։ Նույնը վերաբերում է հասարակա-*
*կան մտքի բոլոր բնագավառներին, սոցիալ-պատմական բոլոր գիտելիքներին։*
*Լենինիզմի բովանդակության խորությունն ու հարստությունը, անդիմա-*
*դրելի ուժն ու աշխարհափոխիչ նշանակությունն ստիպված են խոստովանել*
*նույնիսկ նրա հակառակորդները։ Ահա բազմաթիվ օրինակներից մի քանիսը։*
*«Ոչ մի մարդ երբեք ավելին չի արել, քան Լենինը Ռուսաստանի և աշխարհի*
*կերպարանքը փոխելու գործում»։ Այս ասում է ամերիկյան հակակոմունիստ*
*Ռ. Մեյնը։ Անգլիական պրոֆեսոր Լ. Շապիրոն գրում է. «Լենինի անձնական*
*ազդեցությունն իր սեփական երկրում և ամբողջ աշխարհում շատ ավելի մեծ է,*
*քան մեր հարյուրամյակի որևէ այլ գործչի ազդեցությունը»։*
*«Վ. Ի. Լենինի՝ ռուսական հեղափոխության առաջնորդի գաղափարներն ու*
*գործերը մեր օրերում գերել են միլիոնավոր մարդկանց երևակայությունը»։*
*Նման կարգի մտածողները ստիպված են խոստովանել նաև, որ ապագան լե-*
*նինիզմին է պատկանում։ «Մոտակա հիսուն տարում,— դառնությամբ արձա-*
*նագրում է բուրժուական սոցիոլոգ Ջ. Կետլին,— ամբողջ աշխարհը կդառնա*
*լենինյան»։*
*Այսպիսի վկայություններն անթիվ են։ Անկասկած, սրտի կսկիծով է գրում*
*արևմտագերմանական հակակոմունիստ Ի. Ֆետշերը հետևյալ տողերը. «Ժա-*
*մանակակից մարքսիզմ-լենինիզմն այժմ ամենաազդեցիկ քաղաքական գա-*
*ղափարախոսությունն է»։*
*Միլիոնավոր մարդիկ ամբողջ աշխարհում դիմում են լենինյան աշխա-*
*տություններին— այն գաղափարական աղբյուրին, որտեղից նրանք քաղում են*
*շատ գիտելիքներ, կյանքի հրատապ հարցերի պատասխաններ, մեծագործու-*
*թյունների համար ստանում են ուժ և ոգեշնչում։ Մարքսիզմ-լենինիզմը իս-*
*կական գիտական և միևնույն ժամանակ հեղափոխական տեսություն է,*
*ստուգված հեղափոխական պայքարի և սոցիալիստական շինարարության ամ-*
*բողջ ընթացքով։ ՍՄԿԿ, սովետական ժողովուրդը, առաջավոր մարդկությունը*
*աչքի լույսի պես պահպանում, հարստացնում, ստեղծագործաբար զարգաց-*
*նում են այդ գաղափարական անգնահատելի ժառանգությունը, կիրառում են*
*իրենց պայքարում և աշխատանքում։ Այդ ուսմունքի օգնությամբ կոմունիս-*



*տական և բանվորական կուսակցությունները, սոցիալիստական պետություն-*
*ները, պրոգրեսիվ գործիչները կողմնորոշվում են մեր դարաշրջանի բարդ իրա-*
*դրություններում, լուծում են պատմական պրոգրեսի նորանոր խնդիրները։*
*Լենինիզմը մարքսիզմի զարգացման նոր, ավելի բարձր էտապն է։ Լենինը ան-*
*նկուն մարքսիստ էր. նա վճռականորեն հայտարարում էր, որ Մարքսի ու Էն-*
*գելսի ուսմունքի ոչ մի աղավաղում հանդուրժել չի կարելի, և միշտ պետք է*
*ամուր կերպով կանգնել այդ գրանիտե պատվանդանի վրա։*
*Այստեղից հասկանալի է, թե ինչու Լենինի ուսմունքը, լենինիզմի կեղ-*
*ծումը միշտ վճռական տեղ է գրավել հակակոմունիզմի գաղափարական զի-*
*նանոցում։ Այդ ուղղությամբ հսկայական ջանքեր են թափում բուրժուական*
*պրոպագանդիստներն ու տեսաբանները։ Հիմնական տենդենցը պարզ է՝ լե-*
*նինիզմը հակադրել մարքսիզմին, նսեմացնել Լենինի ուսմունքի համաշխար-*
*հային նշանակությունը, այն ներկայացնել որպես ազգային, նեղ-ռուսական*
*երևույթ, որի դրույթները կարող են որևէ դեր խաղալ միայն Արևելյան և*
*Աֆրիկյան ագրարային երկրներում։ Ճշմարտությունը պահանջում է խոստո-*
*վանել, որ գուցե ոչ մի տեղ այնքան ակնբախ չի դրսևորվում բուրժուական*
*մտքի անզորությունն ու սնանկությունը, որքան մարքսիզմ-լենինիզմի «քըն-*
*նադատության» բնագավառում։*
*Եվ իրոք, տեսե՛ք, թե ինչ է կատարվում։ Մարքսի հակառակորդները նրան*
*համարում են, այսպես կոչված, «տնտեսական դետերմինիստ», որը, իբր,*
*սոսկ սպասողի ու դիտողի դերում էր, պասսիվ հայեցում էր պատմական իրա-*
*դարձությունների հանդարտ ընթացքը, կարծում էր, թե տնտեսական գործոնն*
*ինքնին կկատարի հեղափոխական ուժերի դերը, տարերայնորեն կհանգեցնի*
*հասարակության սոցիալիստական վերափոխումներին։*
*Այսպիսով, Մարքսը ներկայանում է որպես սովորական բուրժուական*
*օբյեկտիվիստ։ Լենինը, ընդհակառակը, դուրս է բերվում որպես ծայրահեղ*
*սուբյեկտիվիստ, վոլյունտարիստ, որը իբր, հաշվի չէր առնում տնտեսական*
*զարգացման օբյեկտիվ օրենքները, հենվում էր ոչ թե դրանց, այլ հեղափո-*
*խական կամքի վրա։ Արևմտագերմանական հակամարքսիստներ Յ. Բոխեն-*
*սկու և Հենրիխ Ռաուխի կարծիքով Լենինը հրաժարվեց Մարքսի «տնտեսական*
*դետերմինիզմից» և անցավ վոլյունտարիզմի դիրքերը. Նրա իդեաների առանց-*
*քը ո՛չ թե պատմության մատերիալիստական ըմբռնումն է, այլ կամքը։ Նույնը*
*բառացի կրկնում են ամերիկյան պրոֆեսոր Ու. Էբենշտայնը, Փարիզի պրո-*
*ֆեսոր, ֆրանսիական «մարքսագետ» Ա. Պիետրը և շատ ուրիշներ։ Վեր-*
*ջինս, օրինակ, գրում է. «Լենինի մոտ դետերմինիզմը տեղը զիջում է վոլյուն-*
*տարիզմին... Հեղափոխությունն այլևս իր մեջ ոչինչ տարերային չունի։*
*Այն պատրաստում են, ինչպես պատրաստում են պատերազմը»* (André
Piettre, Marx et marxism. Paris, *1962*, p. *102*)*։*
*Վաղեմի «սովետագետ» թեոլոգ Գեորգ Վետտերը գրքի մի հարվածով փոր-*
*ձում է որոշել Լենինի տեղը մարքսիզմի սիստեմում. «Լենինի ազդեցությունը*
*մարքսիզմի վրա այն էր, որ նա հրաժարվեց սպասել և դիտել, փորձեց ռազ-*
*մական միջոցներով արագացնել հեղափոխական պրոցեսը»։ Կամ՝ «Լենինը*
*կարծում էր, թե կոմունիստներն ի վիճակի են հեղափոխություն կազմակերպել*
*որտեղ ուզեք և երբ ուզեք»։ Սա մարքսիզմ-լենինիզմի բուրժուական քննադատ-*
*ների հորինած ծաղրանկարն է։ Այնուհետև, ինչպես միշտ, այս անգամ էլ*
*բուրժուական պրոֆեսորների պոչից քարշ են գալիս ռևիզիոնիստները։ Տվյալ*
*դեպքում պրոֆեսորները Լենինին դուրս են բերում սուբյեկտիվիստ, ռևիզիո-*

նիստները թութակի պես նույնը կրկնում են։ Ահա թե ինչ են գրում ավստրիական աջ ռևիզիոնիստներ Ֆ. Մարեկը և Է. Ֆիշերը. «Եթե Մարքսի մոտ խոսքն ամենից առաջ հեղափոխական իմացության մասին էր, ապա Լենինի մոտ խոսքը նախ և առաջ հեղափոխական գործողության մասին էր» (F. Marek und E. Fischer. Was Lenin wirklich sagte, *1969*, s. *16*)։

Ի՞նչ կարելի է ասել այս կապակցությամբ։ Մարքսիզմ-լենինիզմի այդ բոլոր մեկնաբանություններն անհիմն են, ավելին՝ կեղծ են սկզբից մինչև վերջ։ Այդ կվկայի ամեն ոք, ով թեկուզ մակերեսորեն ծանոթ է Մարքսի, Էնգելսի և Լենինի ուսմունքին ու գործունեությանը, մարքսիզմ-լենինիզմի տեսությանն ու պատմությանը։ Նա չի կարող չբացականչել. «Բայց չէ՞ որ սա հի՞ն հեքիաթ է»։

Մարքսիզմ-լենինիզմի քննադատները միանգամից երկու կեղծիք են կատարում։ Նրանք նախ հեղափոխական մտքի ու գործի ռահվիրա Մարքսին օրը ցերեկով դուրս են բերում ֆատալիստ, սոցիալական երևույթների չեզոք դիտող, իսկ Լենինին՝ զուտ սուբյեկտիվիստ։ Սակայն թե՛ մեկը, թե՛ մյուսը հերքվում են Մարքսի ու Էնգելսի ասույթներով, գործունեությամբ ու պատմական փաստերով։ Մարքսն առաջինն էր, որ նախորդ բոլոր փիլիսոփաների հայեցողական մեթոդին հակադրեց գործնական հեղափոխական մեթոդը՝ դիալեկտիկա-մատերիալիստական մեթոդը։ Ոչ միայն պետք է բացատրել աշխարհը, Ֆոյերբախի մասին ասում է Մարքսի հռչակավոր 11-րդ թեզը, այլ այն պետք է վերափոխել։

Ինչպես տեսնում ենք, արդեն այստեղ դրված է իմացության ու գործողության, ճանաչողության ու վերափոխման, տեսության ու պրակտիկայի միասնության հարցը։ Այսպիսի մեծագույն սոցիալական խնդիր նախամարքսյան հասարակական մտքի առաջ դրված չի եղել։ Բայց այսպիսի հեղափոխական ֆունկցիա կատարելու համար փիլիսոփայությունն ինքը պետք է հեղաշրջում ապրեր և իրոք ապրեց։ Մարքսիստական փիլիսոփայության ստեղծումը հենց այդ հեղաշրջման արգասիքն էր։ Այնուհետև. Մարքսը ոչ միայն մեծագույն գիտական ու հասարակական խնդիր առաջադրեց մարդկությանը, այլև գտավ այն իրագործող ուժը, նշեց նաև խնդիրը լուծելու ուղին՝ տեսության միացումը պրոլետարիատին, նրա հեղափոխական շարժմանը։ Գաղափարները նյութական մեծ ուժ են դառնում, երբ տիրապետում են մասսաներին, գրել է Մարքսը դեռ 1843 թվականին։ Այդ ուժը պետք է կազմակերպել, միավորել, լուսավորել և պատմական ինքնուրույն ստեղծագործության մղել։ Մարքսի և Էնգելսի անձնական գործունեության պատմությունն ամբողջապես նվիրված է այդ նպատակին։ «Կոմունիստների միություն», 1848 թ. հեղափոխության ակտիվ մասնակցություն[1], առաջին ինտերնացիոնալի անմիջական ղեկավարում, փարիզյան հերոս կոմունարների ոգեշնչում, հեղափոխական մարքսիստների սերունդների դաստիարակում և այլն։

Այսպիսով, խորապես հերքվում է Մարքսի հայեցողականության վերաբերյալ առասպելը։ Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Մարքսի և Էնգելսի տեսական ու պրակտիկ գործունեությունը հակառակն են վկայում։ Դրա փայլուն օրինակներից են Կ. Մարքսի Լուի Բոնապարտի բրյումերի 18-ը, Դասակարգային պայքարը Ֆրանսիայում 1848-ից մինչև 1850 թ. և այլ աշխատություններ, որտեղ Մարքսը, կոնկրետ պատմական փաստերի հիման վրա, սուր քննադա-

[1] Հայտնի է, որ Էնգելսը զենքը ձեռքին Դրեզդենում մարտնչել է բարիկադների վրա։



տում է բուրժուական պատմաբաններին և՛ սուբյեկտիվիզմի և՛ բուրժուական օբյեկտիվիզմի համար։ Նա ցույց է տալիս, որ բուրժուական միտքն այնպես էլ չկարողացավ գլուխ հանել պատմա-փիլիսոփայության ֆունդամենտալ պրոբլեմից՝ պատմության օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների պատմական անհրաժեշտության և մարդկանց անձնական գործունեության հարաբերակցության դիալեկտիկայից։ Խստորեն հետևելով Մարքսին, Լենինն անգերազանց խորությամբ բացահայտեց այդ դիալեկտիկան։

Այստեղ մենք մոտեցանք մարքսիզմի քննադատների երկրորդ կեղծիքին՝ Լենինի կարծեցյալ սուբյեկտիվիզմին։ Չկա ավելի հեշտ բան, քան հերքել այդ առասպելը հենց Լենինի ասույթներով ու գործերով։ Հիմնադրելով կոմունիստական կուսակցությունը, մշակելով նրա քաղաքականության, տակտիկայի ու ստրատեգիայի սկզբունքները, Լենինը հետևողական ու սկզբունքային պայքար է մղել բազմաթիվ սուբյեկտիվիստների-նարոդնիկների, էսէռների, մենշևիկների, տրոցկիստների, օտզովիստների ու լիկվիդատորների, «ձախ» կոմունիստների դեմ։ Բոլշևիզմի առաջնորդը շարունակ հիշեցնում էր, որ հեղափոխական շարժման տակտիկան, ստրատեգիան, քաղաքականությունը պետք է հիմնվեն հասարակական զարգացման ու դասակարգային պայքարի օբյեկտիվ օրինաչափության և պայքարող ուժերի օբյեկտիվ հարաբերակցության խստագույն հաշվառման վրա։

Ահա ձեզ Լենինի վճռական մտքերից մի քանիսը։ «Ինչպես նարոդնիկների և լիկվիդատորների, այնպես էլ զանազան ինտելիգենտական խմբակների, «վպերյոդականների», պլեխանովականների, տրոցկիստների գլխավոր թերություններից (կամ բանվոր դասակարգի հանդեպ կատարած հանցագործություններից) մեկը, եթե ոչ ամենագլխավորը, նրանց սուբյեկտիվիզմն է։ Իրենց ցանկությունները, «իրենց կարծիքները», իրենց գնահատումները, իրենց «նկատառումները» նրանք ամեն մի քայլափոխում ներկայացնում են որպես բանվորների կամք, որպես բանվորական շարժման պահանջներ» (ПСС, т. *25*, стр. *245*)։

Իդեալներն այն ժամանակ կարող են իրագործվել, եթե բխում են կյանքի օբյեկտիվ ընթացքից, հենվում նյութական ու սոցիալական նախադրյալների վրա— շարունակ ուսուցանում էր Լենինը։ «Նոր Ռուսաստան կառուցելու իմ իդեաները,— գրել է նա,— պատրանքային չեն լինի այն ժամանակ միայն, երբ դրանք արտահայտում են իրոք գոյություն ունեցող դասակարգի շահերը, որի կենսապայմաններն ստիպում են նրան գործել որոշ ուղղությամբ։ Կանգնելով դասակարգային պայքարի օբյեկտիվիզմի այդ տեսակետին, ես բնավ չեմ արդարացնում իրականությունը, այլ, ընդհակառակը, այդ նույն իրականության մեջ մատնանշում եմ նրա վերափոխման ամենախոր (թեև առաջին հայացքից աննկատելի) աղբյուրներն ու ուժերը» (ПСС, т. *22*, стр. *101*)։

Ամեն կասկած փարատելու համար բերենք ևս մի կարճ, բայց կատեգորիկ ձևակերպում. «Չկա ավելի վտանգավոր սխալ պրոլետարական կուսակցության համար, քան իր տակտիկան սուբյեկտիվ ցանկությունների վրա կառուցելը...» (ПСС, т. *31*, стр. *352*)։ Այս փաստերի լույսի տակ, այժմ թող ընթերցողն ինքը դատի Լենինի ու լենինիզմի բուրժուական քննադատների «օբյեկտիվության» մասին։

Սակայն սա օբյեկտիվ և սուբյեկտիվ պրոցեսների լենինյան դիալեկտիկայի մի կողմն է։ Լենինի բացատրություններում ոչ միայն տրված է սուբյեկտիվիզմի գիտական քննադատությունը, այլև հիմնավորապես ու վառ գույ-

ներով վեր է հանված պատմության օբյեկտիվ օրինաչափության և սուբյեկտիվ ֆակտորի դիալեկտիկ հարաբերակցությունը։

Ճշմարտությունն այն է, որ Լենինի և լենինյանների առջև պատմականորեն նոր, ավելի բարդ խնդիրներ էին դրված, որոնք պայմանավորված էին նոր դարաշրջանի կոնկրետ յուրահատկություններով։ Լենինն անդադրում ընդգծում էր պատմականորեն կոնկրետ մեթոդի անշեղ կիրառման անհրաժեշտությունը տեսության ու պրակտիկայի բոլոր բնագավառներում. կապիտալիզմը թևակոխել էր իր բարձրագույն փուլը՝ իմպերիալիզմը, իր հետ բերելով պրոլետարիատի դասակարգային պայքարի նոր էտապ. օրակարգի մեջ էր դրված սոցիալիստական հեղափոխությունը, Ռուսաստանը (լենինիզմի հայրենիքը) դարձել էր իմպերիալիզմի բոլոր հակասությունների հանգուցակետը. հեղափոխություն էր սկսվել բնագիտության մեջ. հրապարակ էին եկել հակամարքսիստական ռեակցիոն գաղափարախոսությունների և ռեվիզիոնիզմի բազմաթիվ նոր դպրոցներ ու դպրոցիկներ։

Այդ բոլորը պահանջում էին մարքսիզմի տեսական մեթոդոլոգիայի հարստացում, զարգացում, հեղափոխական նոր տակտիկայի ու ստրատեգիայի բազմակողմանի մշակում ու հիմնավորում։ Պատմական այդ մեծագույն խնդիրների լուծումը վիճակվեց Լենինին։ Լուծելով այդ խնդիրները, Լենինն անզիջում պայքարեց բոլշևիզմի թշնամիների դեմ, որով և պայմանավորված է դրա հատուկ մարտական բնույթը:

Ուստի, Լենինի բացատրություններում ո՛չ միայն տրված է սուբյեկտիվիզմի վճռական քննադատությունը, այլև գիտականորեն վեր է հանված պատմության օբյեկտիվ օրինաչափության ու սուբյեկտիվ ֆակտորի դիալեկտիկ հարաբերությունը։ Երբ պատմական գործիչների, կազմակերպությունների, մասսաների ցանկությունները, ձգտումներն ու իդեալները հենվում են օբյեկտիվ պրոցեսի վրա, համընկնում պրոգրեսիվ ուժերի պահանջմունքներին, շահերին ու խնդիրներին, մի խոսքով, պատմության առաջադիմական ընթացքին, այն ժամանակ այդ իդեալները, ցանկությունները, գիտակցականությունը, կազմակերպվածությունը, այլ խոսքով՝ սուբյեկտիվ գործոնը հսկայական ուժ ու նշանակություն է ստանում։ Այդ է վկայում համաշխարհային պատմությունը, մասնավորապես սոցիալիստական շարժումների ու հեղափոխությունների պատմությունը։ Ահա թե ինչ է գրում Լենինը. «Մարքսիզմը մյուս բոլոր սոցիալիստական տեսություններից տարբերվում է նրանով, որ իրերի օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի լիակատար գիտական վերլուծության լրջմտությունը երևելի կերպով միացնում է մասսաների, ինչպես նաև, իհարկե, առանձին անհատների, խմբերի, կազմակերպությունների, կուսակցությունների հեղափոխական եռանդի, հեղափոխական ստեղծագործության, հեղափոխական ձեռներեցության նշանակության վճռական ճանաչման հետ, որոնք կարողանում են կապ գտնել այս կամ այն դասակարգի հետ և իրականացնել այն» (В. И. Ленин, ПСС, т. 16, стр. 23)։

Լենինը քննադատում էր ո՛չ միայն սուբյեկտիվիստներին, այլև պատմական «օբյեկտիվիստներին»։ Վերջիններս պատրաստ են արդարացնելու ամեն մի իրականություն, քանի որ այն պատմական է։ Մինչդեռ մարքսիզմ-լենինիզմը բուն իսկ պատմական իրականության մեջ է տեսնում նրա դիալեկտիկական բացասման անհրաժեշտությունը և որոնում այն ուժը, որը կարող է և իր սոցիալական վիճակով պետք է իրագործի այդ անհրաժեշտությունը։ Այս օրինաչափությունը բացահայտել է դեռ Մարքսը։



Լենինը Մարքսի միտքն է զարգացնում, երբ վերոհիշյալ քաղվածքում ընդգծում է. «Ես բնավ չեմ արդարացնում իրականությունը»։ Այսպիսով, Լենինի և լենինյանների պայքարն ուղղված է եղել ո՛չ միայն սուբյեկտիվիստների, այլև բուրժուական «օբյեկտիվիստների», վուլգար մատերիալիստների, սոցիալական ֆատալիստների դեմ (միջազգային ռեֆորմիզմ, «լեգալ մարքսիստներ», էկոնոմիստներ, մենշևիկներ, աջեր և այլն)։ Թե՛ «ձախ» ֆրազաբանները, թե՛ աջ օպորտունիստները, Լենինի բնորոշմամբ, հավասարապես հեռու են հեղափոխական գործչի կոչումից, խոնարհվում են հին իրականության առաջ։ Այդ նրանց դեմ է Լենինը կիրառում անտիկ փիլիսոփաների հայտնի ֆորմուլը, վերաֆրազավորելով այն. «Գիտակից քաղաքագետն ընթանում է դեպքերի առջևից, անգիտակցին դեպքերն են քարշ տալիս իրենց հետևից»։ Եթե այդքան անճարակ դուրս եկավ բուրժուական միտքը պատմության օբյեկտիվ և սուբյեկտիվ կողմերի, անհրաժեշտության ու ազատության մարքս-լենինյան դիալեկտիկան ըմբռնելու գործում, ապա ուղղակի անելանելի է դրությունը մյուս բոլոր հարցերում, մասնավորապես լենինիզմի համաշխարհային նշանակությունն ըմբռնելու հարցում։

Ինչպես հիշատակել ենք, կեղծարարները փորձում են լենինյան գաղափարների նշանակությունը սահմանափակել Ռուսաստանի կամ Արևելյան հետամնաց երկրների շրջանակներով։ Այս թեզը և՛ պատմական, և՛ արդիականության տեսակետից քննադատության չի դիմանում, այն հերքվում է նույնիսկ բուրժուական լրջմիտ մտածողների ու քաղաքական գործիչների, անգամ մարքսիզմ-լենինիզմի հակառակորդների խոստովանություններում։

«Ավելի ու ավելի պարզ է դառնում, որ կոմունիզմը, չնայած ռուսաստանյան ծագմանը, իր էությամբ լոկալ երևույթ չէ, այլ հասարակական կյանքի կամ քաղաքակրթության մի ձև է, որն արմատավորված է և կարող է պրակտիկորեն տարածվել (համապատասխան հանգամանքների առկայության դեպքում) երկրագնդի ամեն մի անկյունում» (տե՛ս «Правда», 1969 թ., № 7)։

Այստեղ ամերիկյան «Ուորլդ պոլիտիկս» ամսագիրը նկատի ունի, իհարկե, լենինիզմը։ Մյուս հեղինակներն ավելի վճռականորեն են հաստատում երևույթը. «Վ. Ի. Լենինի՝ ռուսական հեղափոխության առաջնորդի գաղափարներն ու գործունեությունը մեր օրերում գերել են միլիոնավոր մարդկանց երևակայությունը», գրում է Ա. Մեյերը։ Բերված քաղվածքները ցույց են տալիս, որ մարքսիզմ-լենինիզմի համաշխարհային նշանակությունը խոստովանում են նաև ոչ մարքսիստները, նույնիսկ նրա թշնամիները։

Լենինյան գաղափարների վեհությունն անգերազանց ուժով հանդես է գալիս հատկապես սոցիալ-բարոյական բնագավառում՝ մարդության, ժողովուրդների ազատության, հավասարության, ինտերնացիոնալիզմի իր ազնիվ իդեալներով։ Այստեղ ևս պայծառ կերպով է դրսևորվում կոմունիզմի խոր մարդասիրական էությունն ընդդեմ հակակոմունիզմի տմարդի հայացքների ու պրակտիկայի։ Մարդու և տեխնիկայի, անհատի ու մասսայի, պատերազմի ու խաղաղության հարաբերության պրոբլեմները խորապես հուզում են մարդկությանը, որոնք կոմունիզմի ու կապիտալիզմի տեսական ու պրակտիկ պայքարի առանցքային պրոբլեմներն են։ Բուրժուական սոցիոլոգները, փիլիսոփաները, տնտեսագետները, քաղաքագետներն ու բարոյախոսները անխղճորեն աղավաղում, ծուռ հայելու մեջ են ներկայացնում այդ հարցերը, քողարկելով իրենց ռեակցիոն տենդենցները։

Զե՛րծ մնա կոմունիզմի իդեալներից, քաղաքականությունից, հեռու կաց

կոլեկտիվից, այնտեղ դու լքված ես, հրաժարվիր ապագայի երազանքներից, շորթիր կյանքից ամեն ինչ հենց այսօր, այս րոպեիս, ամենուրեք ղեկավարվիր միայն և միայն քո անձնական շահերով։ «Մեզնից հետո՝ թեկուզ ջրհեղեղ»։ Այս մտայնությունն են հուշում երիտասարդությանը իմպերիալիզմի ագիտատորներն ու պրոպագանդիստները, ռադիոն, հեռուստացույցը, մամուլը։ Իսկ փիլիսոփաներն ու սոցիոլոգները՝ պրագմատիստներն ու էքզիստենցիալիստները, իռացիոնալիստներն ու նիհիլիստները փիլիսոփայական սկզբունքի են վերածում իմպերիալիստների այդ գայլային մորալը։

Եվ ահա այդ մորալի, ինդիվիդուալիզմի ու էգոիզմի երկրպագուները, բուրժուական ու մանրբուրժուական գաղափարախոսները հարյուր տարուց ավելի է, ինչ փորձում են մարքսիզմը ներկայացնել որպես հակահումանիստական գաղափարախոսություն։ Նրանք, ասես թե, խցանել են ականջները, գոցել աչքերը չլսելու և չտեսնելու համար ամենաակնհայտ երևույթները։ Զրպարտչաբար հայտարարում են, թե մարքսիզմ-լենինիզմն անտեսում է կենդանի անհատին, թե պատմության մեջ նա միայն տեխնիկա-տնտեսական գործոններ է ընդունում («տնտեսական դետերմինիզմ»), թե մասսան այնտեղ անդեմ զանգված է, իսկ անհատն իր շահերով, հոգևոր պահանջներով, «ազատ կամքով» մարքսիստների տեսադաշտից դուրս է մնում, թե մարդասիրության համար դետերմինիզմը տեղ չի թողնում և այլն և այլն։

Սակայն կոմունիստական հումանիզմն այսօր միայն տեսություն չէ, այլ ռեալ իրականություն։ Պատմությունն արդեն տվել է իր պատասխանը։ Սոցիալիզմի և կոմունիզմի շինարարությունը, որն սկսվել է Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով, մեր երկրի համաշխարհային-պատմական վերափոխումները, սոցիալական ու ազգային հարստահարման ու ճնշումների վերացումը, ժողովրդի կենսամակարդակի պլանաչափ բարձրացումը, նրա միլիոնավոր տաղանդների ու կուլտուրայի փթթումը— ահա լենինյան գաղափարների մարմնացումը, որ չեն ուզում տեսնել կոմունիզմի թշնամիները։

Կոմունիստական հումանիզմի վառ արտահայտությունն է նաև մարքսիստական-լենինյան կուսակցությունների ու սոցիալիստական պետությունների խաղաղասիրական հաստատուն ու հետևողական քաղաքականությունը, նրանց համառ ու անդադրում պայքարը իմպերիալիստական հրձիգների, միլիտարիզմի ու ռևանշիզմի դեմ։

Հակառակ մարքսիզմ-լենինիզմի թշնամիների զրպարտությունների, Արևմուտքի շատ լրջմիտ մտածողներ բարձր են գնահատում նրա բարոյական, հումանիստական մեծ ուժը։ Հիշատակենք մի ցայտուն խոստովանություն։ «Ահա հարյուր տարուց ավելի է,— հայտարարել է արևմտագերմանական հասարակական գործիչ Վ. Շենկեն,— ինչ մարքսիզմը հանդիսանում է խղճի այն ձայնը, որը թույլ չի տալիս արևմտյան-կապիտալիստական աշխարհին ամբողջապես ընկղմվելու մարդու համար վիրավորական ու անխիղճ էգոիզմի ճահիճը։ Մարքսիզմն այն ուժն է, որի հանդես գալը արթնացրեց խիղճը և թույլ չի տալիս, որ այն բթանա» (տե՛ս «Известия», 1969, 26-ը օգոստոսի)։

Ահա թե ինչու մարդկությունն ավելի խոր է գիտակցում լենինիզմի վեհությունը, առավել խոր ըմբռնում նրա ամենահաղթ ուժը, հզոր ներգործությունը ժամանակակից համաշխարհային պատմության, ժողովուրդների ճակատագրի վրա։

Լենինի անվան ու գործունեության հետ է կապված մարդկության կյանքի



մի ամբողջ հեղափոխական դարաշրջան,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում։— Լենինը պատասխան տվեց պատմական զարգացման ընթացքով առաջադրված ամենահրատապ հարցերին, համակողմանի զարգացրեց սոցիալիստական հեղափոխության և կոմունիստական հասարակության շինարարության տեսությունը, ռուսաստանյան, ամբողջ միջազգային հեղափոխական շարժումը զինեց գիտականորեն հիմնավորված ստրատեգիայով ու տակտիկայով, գլխավորեց բանվոր դասակարգի պայքարը սոցիալիզմի իդեալը կենսագործելու համար։ Սոցիալիզմը, որը Մարքսն ու Էնգելսն ուտոպիայից վերածեցին գիտության, որը նոր եզրակացություններով ու հայտնագործություններով հարստացրեց Լենինը— մարմնավորվել է համաշխարհային պատմական մասշտաբների սոցիալական պրակտիկայում, դարձել է մեր ժամանակի հիմնական հեղափոխական ուժը։

Այստեղից՝ Լենինի գաղափարական-տեսական ժառանգության հետևողական ու սիստեմատիկ ուսումնասիրության տևական անհրաժեշտությունը։ Այս եղել է, կա և մնում է մեր գաղափարախոսական ճակատի գլխավոր խնդիրը։ Այդ հարցն առանձին սրությամբ է դրվում այժմ՝ կոմունիստական շինարարության նոր և բարդ հարցերի, աշխատավորներին կոմունիզմի գաղափարներով դաստիարակելու, հակակոմունիզմի գաղափարախոսական դիվերսիաներին հակահարված տալու կապակցությամբ։ Խորապես տիրապետել լենինիզմին, նշանակում է՝ լրջորեն յուրացնել ժամանակակից գիտության նվաճումները, ընդհանրացնել և իմաստավորել մեր դարաշրջանի կոմունիստական շինարարության փորձը, ակտիվ մասնակցել մեծամեծ խնդիրների լուծմանը։

Լենինը սովորեցնում էր՝ հետևողականորեն ու անհաշտ մերկացնել բացահայտ թշնամական ու ռևիզիոնիստական հայացքների հակագիտական, հակաժողովրդական էությունը։ Բազմակողմանիորեն, ստեղծագործաբար ուսումնասիրել լենինյան գաղափարական ժառանգությունը և դա այնպես պրոպագանդել, որ այդ գաղափարները դառնան նորանոր միլիոնների հաստատուն համոզմունքը— այս է խնդիրը։

Լենինիզմը տալիս է մեզ նպատակի պարզություն և վստահություն, համաշխարհային պատմության խորիմացություն, ժամանակակից հասարակական զարգացման տենդենցների ու հեռանկարների, ներքին ու արտաքին իրադարձությունների հստակ ըմբռնում և ճիշտ կողմնորոշում։ Այդ նշանակում է՝ անսասանություն, հաստատուն համոզմունք կյանքի սուր շրջադարձերի, դժվարությունների ժամանակ։ Այս տեսանկյունով հատկապես պետք է հիշել և ընդգծել Լենինի այն միտքը, թե մարքսիստական ուսմունքին տիրապետել, նշանակում է ո՛չ լոկ պատրաստի ճշմարտություններ սերտել, այլ ղեկավարվել դրանցով, խոր համոզմունք դարձնել, տեսական դրույթները պրակտիկ գործի վերածել։

Լենինիզմը սովորեցնում է ո՛չ միայն բացատրել անցյալն ու ներկան, այլև թափանցել ապագայի խորքերը և ոչ միայն կանխատեսել ապագան, այլև աներկյուղ, համարձակ գործողություններով նվաճել այդ ապագան, խոսքից գործի անցնել։ Հեղափոխական մարքսիստը,— գրել է Լենինը,— պետք է անմիջականորեն գրի արդիականության պատմությունը, պատասխանի հրատապ հարցերին և այնպես պատասխանի, որ դրանով զինի շարժման անմիջական մասնակիցներին, հերոս պրոլետարներին այնտեղ, գործողությունների վայրում, օգնի նրանց գտնելու աշխատանքի ու պայքարի այնպիսի միջոցներ ու պրիոմներ, որպեսզի ուժերի նվազագույն ծախսումով ձեռք բերվի առավելա-

գույն ու հաստատուն հաջողություն: Մարքսիզմի վեհությունն աննախընթաց ուժով է հանդես գալիս լենինյան գործերում: Բարձրագույն գիտականություն և հեղափոխականություն, դեպքերի խիստ օբյեկտիվ վերլուծություն և կյանքը վերափոխելու անդուսպ ձգտում, տեսության ու պրակտիկայի, մտքի ու գործի դիալեկտիկ ներդաշնակություն— ահա թե ինչ է սովորեցնում առաջադեմ մարդկության մեծագույն հանճարը:

Լենինիզմը հեղափոխական մտածողության ու հեղափոխական գործողության մեթոդոլոգիան է: Հակառակ կոմունիզմի թշնամիների նիհիլիստական մարգարեությունների, որոնք վհատության ու լքվածության տրամադրություն են սփռում չորս կողմը, մարքսիստական-լենինյան կուսակցություններն իրենց ամբողջ գործունեության ընթացքում առաջնորդվում են Կարլ Մարքսի հետևյալ նշանաբանով. «Մենք չենք ասում աշխարհին՝ դադարիր պայքարելուց, քո ամբողջ պայքարն ունայնություն է: Մենք միայն տալիս ենք նրան պայքարի ճշմարիտ լոզունգ»:

Մեծագույն մարքսիստ Լենինը գտնում էր, որ այս խոսքերում ձևակերպված է պատմության պրոցեսի մարքսիստական ըմբռնման էությունն ու իմաստը, համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման նշանաբանը: Հետևողականորեն պրոպագանդել մարքսիստական գաղափարախոսությունը, այն պահպանել աղավաղումներից ու առաջ տանել՝ պատգամել է Լենինը:

Լենինյան գաղափարները մեր դարաշրջանի գաղափարներն են: Լենինիզմը խաղաղության, ազատության ու դեմոկրատիայի ուղեցույցն է: Լենինի ուսմունքը կոմունիստական կուսակցության գաղափարական զենքն ու դրոշն է: Հենվելով այդ գրանիտե հիմքի վրա, ՍՄԿԿ հերոսաբար կատարում է իր պատմական վեհ գործը, համարձակ կողմնորոշվում մեր դարաշրջանի բարդ պրոցեսներում, առաջնորդում սովետական ժողովրդին դեպի մեծամեծ նվաճումներ, դեպի նվիրական նպատակը՝ կոմունիստական հանրակարգի վերջնական ու լիակատար հաղթանակը: Իր գեղեցիկ ու հերոսական կյանքի իմաստն ու նպատակը Լենինը պատմական այդ մեծ անհրաժեշտությանը ծառայելու մեջ էր տեսնում:





Ձ. ԲԱՇԻՆՋԱՂՅԱՆ

# ԱՆՄԱՀ ՂԵԿԱՎԱՐԻ ՄՇԱԿԱԾ ՊԼԱՆՈՎ

Սոցիալապես ներդաշնակ և տնտեսական անհավասարություն չունեցող կոմունիստական հասարակություն ստեղծելու գաղափարը վաղուց է հուզել ժամանակի առաջավոր մարդկանց: Դասակարգային շահագործումից և որևէ այլ կեղեքումից զերծ իդեալական հասարակության վերաբերյալ համարձակ երազանքներն ապրել են բոլոր նրանց սրտերում, ովքեր չեն կարողացել հաշտվել իրենց հասարակության արատների հետ: Այն ժամանակներից ի վեր, երբ մարդիկ սկսել են ըմբռնել հասարակական անարդարությունը, պոռթկացել է նաև նրանց բողոքը դրա դեմ և ձգտել են այն վերափոխել առաջավոր հասարակարգով:

Մարդկանց հիշողություններում հաճախ են ճառագել անցյալ դարաշրջանի մեծ հումանիստների գաղափարները: Նրանց հայացքներն ու գործունեությունը ծառայել են մարդկանց տառապանքների թեթևացման, աշխատավոր ժողովրդի երջանկության: Եվ թեպետ լուսավոր երազանքները մնում էին որպես երազանքներ, բայց դրանց գոյության բուն փաստը մարդկանց հուսադրում էր, որ վերջապես կգա ազատության, հավասարության ու եղբայրության դարաշրջանը:

Աշխատավոր ժողովուրդը՝ բոլոր նյութական արժեքների ստեղծողը, դարեր շարունակ իր հայացքը հառել էր ապագային, սակայն դրությունը էապես չէր փոխվում: Ու թվում էր, թե մարդկանց փայփայած գեղեցիկ երազանքները խամրելու են պատրանքների մշուշում:

Սակայն հենց այդ ժամանակներում գիտության մեջ հեղաշրջում կատարվեց. ասպարեզ եկավ մարքսիզմը: Ո՞ւմ հայտնի չէ այդ ուսմունքի՝ Մարքսի ձևակերպած անսահման հակիրճ, բայց արտահայտիչ հիմնական գաղափարը. ոչ թե մարդկանց գիտակցությունն է որոշում նրանց կեցությունը, այլ, ընդհակառակը, հասարակական կեցությունն է որոշում նրանց գիտակցությունը:

Միանգամայն անհնար է թերագնահատել գիտական այդ սկզբունքի պատ-

մական մեծագույն նշանակությունը, սկզբունք, որը, հիրավի, հեղաբեկեց կեցության և գիտակցության հարաբերակցության մինչ այդ իշխող թյուր պատկերացումը:

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը միաժամանակ հիմնավորեցին հանրային կյանքում բանվոր դասակարգի հեղափոխիչ դերը: Տակավին անցյալ դարի կեսերին, երբ աշխարհը հղի էր հեղափոխության գաղափարներով, Կ. Մարքսը պրոլետարիատի հիմնական խնդիրը համարեց՝ սեփականազրկողների սեփականազրկումը:

Վ. Ի. Լենինն իր քաղաքական ու գիտական բուռն գործունեությամբ հետևողականորեն և աներեր ընթանալով Մարքսի ու Էնգելսի մատնանշած ուղիով, ստեղծագործաբար կիրառեց ու զարգացրեց իր անմահ ուսուցիչների գաղափարները նոր հասարակարգի կառուցման պրակտիկայում: Լենինը ապացուցեց գիտական կոմունիզմի կենսունակությունը, հաստատեց կապիտալիզմի կործանման և այն կոմունիզմով փոխարինելու անխուսափելիության մարքսյան դրույթը, դարձավ առաջին սոցիալիստական պետության հիմնադիրը:

Կապիտալիզմից կոմունիզմին անցնելն անհնար է առանց պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման, հաստատում, որի համար Լենինը վիթխարի ջանքեր թափեց: Գալիք հեղափոխության մեջ հիմնավորելով բանվոր դասակարգի ավանգարդային դերը, Լենինը գլխավորեց նրա պայքարը՝ ինքնակալությունը, կալվածատերերի և կապիտալիստների իշխանությունը տապալելու և սոցիալիստական կարգեր հաստատելու համար: Այսպիսով, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակով, նոր դարագլուխ սկսվեց հասարակության զարգացման պատմության մեջ: Սովետական իշխանությունը բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության առաջին սոցիալիստական դաշնադրությունն էր:

Ինչպես միշտ, քաղաքական գործունեությունը զուգակցելով գիտական բեղմնավոր ջանքերի հետ, Վլադիմիր Իլյիչը 1919 թ. հոկտեմբերին հրապարակեց էկոնոմիկան և քաղաքականությունը պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում աշխատությունը: Ծավալով այդ փոքր ուսումնասիրությունը, որի հեղինակը, իրեն հատուկ համեստությամբ, այն կոչել էր ամսագրային հոդված, կարևորագույն ծրագրային փաստաթուղթ է, որը տալիս է կապիտալիզմից սոցիալիզմին անցման ժամանակաշրջանում էկոնոմիկայի և քաղաքականության համակողմանի վերլուծությունը: Չնայած այս գործը ստեղծված է սովետական իրականության նյութերի հիման վրա, սակայն բովանդակում է տնտեսական քաղաքականության այնպիսի կարևորագույն սկզբունքներ, որոնք կենսական անհրաժեշտություն են սոցիալիզմի ուղիով ընթացող բոլոր երկրների համար:

Ընդհանրացնելով Մարքսի հայացքներն այդ առթիվ, Լենինն ընդգծում է. «Տեսականորեն անտարակուսելի է, որ կապիտալիզմի և կոմունիզմի միջև ընկած է անցման որոշ ժամանակաշրջան: Այն չի կարող իր մեջ չմիացնել հասարակական տնտեսության այդ երկու կացութաձևերի գծերը կամ հատկությունները: Անցման այդ ժամանակաշրջանը չի կարող պայքարի ժամանակաշրջան չլինել մեռնող կապիտալիզմի և ծնվող կոմունիզմի միջև, կամ, այլ խոսքով, պարտված, բայց չոչնչացված կապիտալիզմի և ծնված, բայց դեռ բոլորովին թույլ կոմունիզմի միջև» (տե՛ս Երկեր, հ. 30, էջ 115—116):

Վլադիմիր Իլյիչը, այնուհետև, պարզաբանում է, որ անցման ժամանակաշրջանի էկոնոմիկայում երկու հակադիր կացութաձևերի գոյակցությունն



ամենևին չի նշանակում դրանց հաշտեցում, այլ, ընդհակառակը, միմյանց միջև համառ, անհաշտելի պայքար:

Բանվոր դասակարգը իշխանության նվաճման համար մղվող հեղափոխական պայքարի ամբողջ ծանրությունն իր վրա է վերցնում ո՛չ նրա համար, որ իշխանության գլուխ անցնելով, «ձեռքերը ծալի» և իրադարձությունների հետագա ընթացքն ինքնահոսի մատնի: Բանվորները գիտեն, որ բուրժուազիան, շահագործող դասակարգերը, զրկվելով իշխանությունից, կդիմեն ամենաստոր, ամենից ավելի հնարավոր հանցագործ միջոցների, որպեսզի ետ բերեն իրենց կորցրած վիճակը: Հաղթական պրոլետարական հեղափոխությունների պատմությունը, միաժամանակ, չհաջողված բուրժուական հակահեղափոխությունների պատմություն է և, ընդհակառակը, պարտություն կրած հեղափոխությունները արյունալի հակահեղափոխության մռայլ էջեր են: Հակահեղափոխական բուրժուազիայի կատաղությունը նրա աչքերն այնպես է մթագնում, որ վերջինս ի վիճակի չէ ռեալ ընկալելու պատմական տեղաշարժերը: Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու պրոցեսի օրինաչափ բնույթը նա դիտում է իբրև դժբախտ պատահականություն, իր համար ժամանակավոր անհաջողություն: Շահագործողական դասակարգերն իրենց պարտությունը միշտ և ամենուր դիտում են որպես մի դիպվածային պատահար, որն, ահա, ուր որ է, կվերացվի «կարգի» ուժերով, ուժեր, որոնք կոչված են վերականգնելու ոտնահարված «հավիտենական արդարությունը»:

Մի՞թե արդի հակակոմունիզմի ջատագովները, որոնք մարմնավորում են իմպերիալիզմի ուժերի առաջադրանքները, այսօր չեն գործում ստեղծված իրադրության միևնույն «ըմբռնմամբ», ինչպես նրանց հայրերն ու պապերն անցյալ ժամանակներում, XIX դարի և XX դարի սկզբի դասակարգային սուր պայքարի օրերին:

Մի՞թե նույն ողորմելի տեսական ու քաղաքական մակարդակով չեն արդարացվում արդի իմպերիալիզմի հրեշավոր արյունահեղությունները աշխարհի տարբեր ծայրամասերում: Զուր չէին հին ժամանակներում ասում, թե աստվածները, ցանկանալով պատժել մեղապարտին, նրան զրկում էին բանականությունից: Սկզբունքային և ոչ մի տարբերություն չկա XX դարի փիլիսոփայական, գաղափարական ու քաղաքական ռեակցիայի և XIX դարի ռեակցիայի միջև: Լոկ միայն հագուստն է փոխվել, որ նրանք կրում են՝ այս կամ այն հարյուրամյակի հասարակության կյանքում տեղի ունեցող մակերեսային երևույթներին համապատասխան: Հարկավոր է միայն նկատի ունենալ, որ ինչքան մոտ է թշնամիների վերջնական կործանման ժամը, այնքան նողկալի և վտանգավոր է նրանց վարքագիծը:

Սնվելով չարդարացված պատրանքներով, հիասթափվելով իրենց անհիմն սպասելիքներում, դատապարտված դասակարգերը կանգ չեն առնում արյունալի բռնությունների առաջ ո՛չ միայն օտար, այլև «սեփական» ժողովրդի նկատմամբ: Սոցիալիզմի հետ ունեցած տնտեսական մրցակցությունում բուրժուազիան, կորցնելով հաջողության հույսը, ձգտում է պրոլետարական պետությունը տապալել ռազմական ուժով:

Իր մի շարք երկերում ու ելույթներում, Վ. Ի. Լենինը, քննարկելով պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանի էկոնոմիկայի ու քաղաքականության կոնկրետ պրոբլեմները, նշում էր դրանց լուծման ճիշտ եղանակները:

Վլադիմիր Իլյիչն ուսուցանում էր, որ անցման ժամանակաշրջանի էությունը բոլոր երկրների համար միևնույն է. դա կոմունիստական հասարակու-

թյան շինարարությունն է իշխանության գլուխ անցած բանվոր դասակարգի կողմից. բայց, նայած տվյալ երկրի զարգացման կոնկրետ պայմաններին, կապիտալիզմից կոմունիզմին անցման ձևերն ու եղանակները տարբեր կլինեն։ Ռուսաստանում,— գրում էր նա,— պրոլետարիատի դիկտատուրան, առաջավոր երկրների համեմատությամբ, անխուսափելիորեն պետք է տարբերվի մի քանի առանձնահատկություններով։ Այդ որոշ առանձնահատկությունները մեր երկրի շատ մեծ հետամնացությունը և մանրբուրժուականությունն է (տե՛ս Երկեր, հ. 30, էջ 116)։

Լենինը մատնանշում է, որ բանվոր դասակարգը, ձեռնամուխ լինելով սոցիալիստական հասարակության շինարարությանը, միասնական վիթխարի պետության մասշտաբով առաջին քայլերն է ձեռնարկում «կոմունիստականորեն միավորված աշխատանքի» ուղղությամբ, սակայն, հանդիպում է մանր ապրանքային արտադրության և դրա բազայի վրա ո՛չ միայն դեռևս պահպանվող, այլև վերածնվող կապիտալիզմի կատաղի դիմադրությանը։

Խոսելով «կոմունիստականորեն միավորված աշխատանքի» մասին, Լենինը նկատի ունի հիմնական արտադրամիջոցների մասնավոր կապիտալիստական սեփականության վերացումը և հանրային տնտեսության հաստատումը քաղաքում ու գյուղում։ «Բանվորագյուղացիական իշխանությունը,— նշում էր նա,— բանվորական ուժը բաշխում է տնտեսության տարբեր ճյուղերի և ձեռնարկությունների միջև, պետությանը պատկանող սպառման առարկաների մասսայական քանակությունը բաշխում աշխատավորների միջև»։

Լենինը զարգացնում է բանվոր դասակարգի և նրա ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության գործունեության ընդարձակ ծրագիրը կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ամբողջ ժամանակաշրջանի համար։ Անցման ժամանակաշրջանն սկսվում է սոցիալիստական հեղափոխության հաղթանակի պահից և ավարտվում բազմակացութաձևային էկոնոմիկայի վերացումով, ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ սոցիալիստական սեփականության հաստատումով։

Վլադիմիր Իլյիչը պարզաբանում է, որ տապալելով կալվածատերերին և կապիտալիստներին, իր ձեռքը վերցնելով իշխանությունը, բանվոր դասակարգն իրականացրել է շատ կարևոր խնդիր, բայց մնում է մյուս, ամենադժվար խնդիրը։ Բանվորի և գյուղացու տարբերությունը վերացնելու համար պետք է բոլորին աշխատավորներ դարձնել։ «Խնդրի երկրորդ, ամենադժվար մասը վճռելու համար,— գրում էր Լենինը,— բուրժուազիային հաղթած պրոլետարիատը պետք է անշեղորեն տանի գյուղացու վերաբերմամբ իր քաղաքականության հետևյալ հիմնական գիծը՝ պրոլետարիատը պետք է բաժանի, սահմանազատի աշխատավոր գյուղացուն սեփականատեր գյուղացուց, աշխատող գյուղացուն չարչի գյուղացուց, քրտնաջան գյուղացուն սպեկուլյանտ գյուղացուց» (Երկեր, հ. 30, էջ 122—123)։

Ամբողջ ուժով ընդգծելով այդպիսի սահմանազատման կարևորագույն նշանակությունը, նա ասում էր. «Այդ սահմանազատման մեջ է սոցիալիզմի ամբողջ էությունը»։

Կիրառելով այդպիսի քաղաքականություն, բանվոր դասակարգը, հանձին աշխատավոր գյուղացիության, հուսալի դաշնակից կունենա և այնժամ աստիճանաբար, բարձր տեխնիկայի բազայի վրա կկենսագործվի գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխությունը։ Դա միանգամից հնարավոր չէ իրականացնել, դա տևական ժամանակ կպահանջի, բայց դա միակ ուղին է, որը



կհասցնի բանվոր դասակարգի ու գյուղացիության տարբերության վերացմանը, դասակարգերի ոչնչացմանը։ Հիմնավորելով այդ ծրագիրը, Լենինը եզրակացնում է՝ «Սոցիալիզմը դասակարգերի ոչնչացում է»։

Լենինն ընդգծում է, որ դասակարգերը միանգամից ոչնչացնել չի կարելի, «...դասակարգերը մնացել են ու կմնան պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանի ընթացքում։ Դիկտատուրան հարկավոր չի լինի, երբ դասակարգերը չքանան։ Նրանք չեն չքանա առանց պրոլետարիատի դիկտատուրայի» (Երկեր, հ. 30, էջ 125)։

Երբ Լենինը գրում էր այդ տողերը, մեր երկիրը սոցիալիզմի միակ երկիրն էր և գտնվում էր կապիտալիստական շրջապատման մեջ։ Այդ հանգամանքը, ինչպես և տեխնիկա-տնտեսական հետամնացությունը, Սովետական Ռուսաստանի սոցիալիստական զարգացման առանձնահատկությունն էր այն տարիներին։ Լենինը համառորեն պահանջում էր, որ կուսակցությունը, կազմակերպելով կոմունիստական շինարարությունը և ղեկավարելով այդ գործը, մշտապես հաշվի առնի Սովետական Միության ներքին և արտաքին դրության առանձնահատկությունը, որը, սակայն, ամենևին էլ պարտադիր չէր սոցիալիզմի-կոմունիզմի ուղին թևակոխած մյուս երկրներում։ Այդ երկրները այժմ չեն գտնվում կապիտալիստական շրջապատման մեջ, քանի որ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո գոյացել է ժողովրդական տնտեսության սոցիալիստական սիստեմ, և զարգանում են այդ սիստեմի ներսում, այնտեղից ստանալով նյութական և բարոյաքաղաքական աջակցություն։

Հետպատերազմյան տարիների նոր պատմական իրադրությունն ընդգծում է այն ընդհանուրն ու գլխավորը, ինչը բնորոշ է սոցիալիստական սիստեմի բոլոր երկրների զարգացմանը, այսինքն՝ որ շահագործողական դասակարգերի տիրապետությունը տապալած և կապիտալիզմից սոցիալիզմին անցնող ամեն մի երկրում առկա են հասարակական տնտեսության միևնույն հիմնական ձևերը, որոնք ժամանակին կային Սովետական Ռուսաստանում։

Պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանի էկոնոմիկայի և քաղաքականության հարցերը Լենինը դիտում էր ո՛չ որպես տեղական մասշտաբի հարցեր, որոնք նշանակություն ունեն միայն Սովետական Ռուսաստանի համար, այլ, ընդհակառակը, որպես այնպիսի պրոբլեմներ, որոնք քաղաքական ու գիտական կարևորություն ունեն սոցիալիզմ կառուցող բոլոր երկրների համար։

Այստեղ չի կարելի չկատարել մի ոչ մեծ շեղում։

Երիցս իրավացի էր Ռոմեն Ռոլանը, ասելով, որ Լենինն ամբողջովին՝ իր կյանքի բոլոր ակնթարթներում մարտնչել է։ Լենինի բոլոր մտորումներն անբաժան են նրանից,— ինչ նա՝ որպես բանակի հրամանատար մարտի պահին նկատել է դիտակետից,— նպաստում են կռվի հաջողությանը։ Նա, ինչպես ոչ այլ ոք, իր մեջ է մարմնացնում մարդկային պատմության ու գործունեության այն ժամանակահատվածը, որը կոչվում է պրոլետարական հեղափոխություն։ Ոչինչ չի կարող նրան անջատել հեղափոխական պայքարից. ո՛չ անձնական շահերը. ո՛չ հանգիստ առնելու պահանջը. ո՛չ էլ միտքը հանուն մտքի։ Նա չունի ոչ տատանում, ոչ կասկած։ Սրա մեջ է նրա կարողության ու իր մարմնացրած գործի հաղթության աղբյուրը։

Մտքի ողջ զինանոցը՝ գիտությունը, արվեստը, գրականությունը, ամեն ինչ, ընդհուպ մինչև տարերային պոռթկումները և էակի ենթագիտակցական

խորքերը, անգամ երազանքները՝ նա մոբիլիզացնում է գործողության համար (տե՛ս Ромен Роллан. Соб. соч. т. 14, М., 1958, стр. 559)։

Հաճախ, խոսելով ականավոր պետական հասարակական գործչի մասին, վերապահում է արվում, թե «անձնական կյանքում նա համեստ մարդ էր»։ Լենինի վերաբերմամբ այդպիսի վերապահումը միանգամայն անիմաստ կլիներ։ Համեստությունը ուղեկցում էր նրան, նրա մեջ կար միշտ և ամենուրեք պետական և գիտական գործունեության ընթացքում, քաղաքական և անձնական կյանքում։

Սակայն, պետք է վերադառնալ հարցի էությանը։

Վ. Ի. Լենինի էկոնոմիկան և քաղաքականությունը պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանում աշխատության մեջ արծարծված հարցերն ունեն միջազգային նշանակություն, դրանք հաճախ քննարկվում են եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցություններում։

Ավելի քան հիսուն տարի է անցել այդ աշխատության ի հայտ գալու օրից, բայց նրա դրույթները որքա՜ն համահնչուն են նոր ժամանակներին։ Չէ՞ որ անցած կես դարը լիովին հաստատում է լենինյան գաղափարների կենսական մեծ ուժը, գաղափարներ, որոնցով զինվում են բոլոր երկրների կոմունիստները։ Անշեղորեն աճում է լենինիզմի դերն արդի դարաշրջանում, լենինյան ուսմունքի նշանակությունը՝ կոմունիստական շինարարության համար։ Սոցիալիզմ-կոմունիզմ կառուցող մասսաների գիտակցության մեջ ավելի ու ավելի է ակնառու դառնում ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարության փորձի կարևորությունը։ Այդ են վկայում ՍՍՀՄ-ին ու ՍՄԿԿ-ին տրված գնահատականները, որոնք արձանագրված են միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման փաստաթղթերում, ղեկավար գործիչների ստագիր ու բանավոր ելույթներում։

Անցման ժամանակաշրջանի էկոնոմիկայի պայմաններում կենսագործվում է երկրի սոցիալիստական ինդուստրացումը և գյուղատնտեսության կոլեկտիվացումը։ Իհարկե, հնարավոր է, որ կապիտալիզմից սոցիալիզմին անցնող երկիրն ունենա արտադրաուժերի բավականաչափ բարձր մակարդակ, ուր լուծված լինեն ինդուստրացման հիմնական խնդիրները։ Հնարավոր է նաև, որ սոցիալիզմի շինարարություն սկսած երկրում արդեն հասունացած լինեն մանրապրանքային գյուղացիական տնտեսությունները խոշոր կոլեկտիվ տնտեսություններով փոխարինելու նախադրյալները։ Բայց, բոլոր դեպքերում, կոմունիզմի առաջին, ստորին փուլում լուծվում են այն խնդիրները, որոնց կենսագործումը անհրաժեշտ է ամեն մի երկրում՝ կոմունիզմի բարձրագույն փուլին աստիճանաբար անցնելու համար։

Սոցիալիզմի բոլոր երկրների արդյունաբերական արտադրանքի առնվազն 90 տոկոսը կազմում է սոցիալիստական սեկտորի բաժինը։ Այդպես է նաև տրանսպորտի, շինարարության և առևտրի ոլորտներում, ուր էկոնոմիկայում գերիշխում է հանրայնացված սեկտորը։ Գյուղատնտեսության ասպարեզում վճռական դերը պատկանում է տնտեսության սոցիալիստական ձևերին։ Թեև առանձին երկրներում գյուղացիության հիմնական զանգվածները դեռևս ընդգրկված չեն կոոպերացման բարձրագույն ձևերում, բայց զարգացման հիմնական ուղղությունը, առաջվա պես, բազմակացութաձև էկոնոմիկայի վերացումն է, միասնական սոցիալիստական սիստեմի ստեղծումը։

Ժողովրդական տնտեսության սոցիալիստական սիստեմի անբաժանելի տիրապետության պայմաններում մեկ միասնական ամբողջության մեջ շաղկապվում են արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը, տրանսպորտը, շինարարությունն ու առևտուրը, քաղաքը և գյուղը, հասարակական արտադրության բոլոր ոլորտները։ Դրա տնտեսական հիմքը արտադրամիջոցների հասարակական սեփականությունն է իր երկու ձևով՝ համաժողովրդական և կոոպերատիվ։

Սկզբունքային հսկայական նշանակություն ունեցող տեղաշարժեր են կատարվում բնակչության սոցիալական կազմում։ Բանվոր դասակարգ, կոլտնտեսային գյուղացիություն, ժողովրդական ինտելիգենցիա— ահա սոցիալիզմի երկրների բնակչության նոր հասարակական կառուցվածքը։

Բնակչության սոցիալական կազմում խոր փոփոխություններ տեղի ունեցան Սովետական Միությունում։ Արմատապես փոխվեց բանվոր դասակարգի ու գյուղացիության խորքերից ելած՝ ժողովրդական ինտելիգենցիայի սոցիալական դրությունը, գործունեությունը, հոգեբանությունը։ Բանվոր դասակարգի և գյուղացիության հետ լիակատար միասնության, սոցիալիստական հասարակության բոլոր խավերի արմատական շահերի զուգորդման պայմաններում սոցիալիստական երկրների ինտելիգենցիան աշխատում է անձնվիրաբար և հաջողությամբ, իր խնդիրը համարելով՝ գիտության, արվեստի զարգացմանը, կուլտուրայի ընդհանուր վերելքին ակտիվորեն մասնակցելը։

Հասարակության հոգևոր կյանքում տեղի ունեցող հեղաշրջումը, կուլտուրական հեղափոխությունը սոցիալիստական վերափոխությունների ամենաբնորոշ և անխզելի մասն է։

1926 թվականին ՍՍՀՄ-ում հաշվվում էր միայն 2,9 միլիոն մտավոր աշխատող, 1959-ին դրանց թիվը հասավ 20,5 միլիոնի, իսկ 1968 թ. սկզբին՝ 28,8 միլիոնի։ Ամենագլխավորն այն է, որ սոցիալիզմի ժամանակ ձևավորվում է նոր մարդ՝ նոր աշխարհայացքով, նոր ձգտումներով։ Սոցիալիստական հասարակարգի մարդու ապրելակերպն ու մտածելակերպը էականորեն տարբերվում են հին հասարակության մարդու ձգտումներից, վարքագծից, շահերից։ Տարբեր են գաղափարները, հույզերը և մղումները։ Կոմունիստական հասարակության կառուցողը կոնկրետ մարդն է, ազատ՝ մինչկոմունիստական պայմաններում ապրող մարդկանց սահմանափակ հայացքներից ու էգոիստական ձգտումներից։ Ուստի, հասկանալի է, որ կոմունիզմի կառուցման ծրագրից է բխում նոր մարդու ձևավորումը։

Լենինն անդուլ ուսուցանում էր, որ նոր հասարակության մարդու դաստիարակության վճռական պայմանը և կոմունիստական հասարակության հաջող շինարարության երաշխիքը աշխատանքի կազմակերպման անընդհատ կատարելագործումն է, կարգապահության ամրապնդումը։ Սոցիալիստական հասարակության մեջ ցայտուն բացահայտվում է աշխատանքի բարձր կազմակերպվածության, արտադրողականության անշեղ աճի ոչ միայն տնտեսական նշանակությունը, այլև նրա վեհացնող մեծ ուժը։ Դասակարգային հակասություններից ծվատվող հակամարտ հասարակությունում աշխատանքի հանրօգուտ բնույթը չի կարող հանդես գալ բավականաչափ պարզ և լիակատար։ Սեփականատերերի կողմից ուրիշի աշխատանքի արդյունքի յուրացումը թուլացնում է աշխատողի բնական ձգտումը գործի ու ինքնակարգապահության նկատմամբ ու միաժամանակ այլասեռում շահագործողներին։ Սոցիալիստական հասարակությունում մարդու մեջ առաջին անգամ է ցանկություն արթնանում աշխատելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ինչպես հանուն սեփական, այնպես էլ ընդհանուր շահերի։ Սոցիալիստական հա-

սարակության աշխատավորը առաջին անգամ իրեն մարդ է զգում, որը աշխատանքի իրավունք ունի և պարտավոր է աշխատել։ Դրա համար էլ հասարակությունը հնարավորություն է ստանում գիտական հիմունքներով, պլանաչափորեն կազմակերպել աշխատանքը, հենվել աշխատավորների ազատ ու գիտակցական կարգապահության վրա։ Լենինն ասում էր. միայն խստագույն կազմակերպվածությունն ու աշխատանքային կարգապահությունը մեզ կհասցնեն սոցիալիզմին։

Մեր օրերում, արդի գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում, առանձնապես կարևոր նշանակություն է ստանում աշխատանքային կարգապահությունը։ Արտադրության մեքենայացման և ավտոմատացման հիման վրա զարգացող նոր տեխնիկան պահանջում է խիստ կատարողականություն և անթերի ճշգրտություն։ Այն օժանդակում է սովետական մարդու հոգևոր աճին, նրա մեջ զարգացնում հասարակական պարտքի զգացում, ընկերասիրություն ու փոխադարձ հարգանք ստեղծում կոլեկտիվում։ Սոցիալիստական ձեռնարկության գործունեության բարեհաջող արդյունքների ընդհանուր շահագրգռվածությունը խթանում է հասարակական արտադրության կազմակերպմանը։

Կոմունիստական հասարակության շինարարությունն իրականացվում է սոցիալիզմի և կապիտալիզմի գաղափարական սուր պայքարի իրադրության պայմաններում։ Գաղափարական պայքարը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների գործունեության կարևորագույն խնդիրներից է, այստեղ էական է պայքարը հակակոմունիզմի դեմ։ Դիալեկտիկական մատերիալիզմի գաղափարների, գիտական կոմունիզմի տեսության, մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական կիրառման համար մղվող պայքարը դեռ երբեք այնպիսի սրություն և այնպիսի թափ չի ունեցել, ինչպես այսօր։

Հետևողական և կազմակերպված առաջ մղելով կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման գործը, մենք չպետք է մոռանանք, որ այժմ թշնամական ուժերը հանդես են գալիս հակակոմունիզմի դրոշի ներքո։ Թեկուզ միայն դա էլ խոսում է կոմունիստական գաղափարների անհաղթահարելի ուժի մասին, այն մասին, որ այդ գաղափարները վիթխարի մասշտաբներով մարմնավորվում են կյանքում, իրայնանում սոցիալիզմի համաշխարհային սիստեմում։ Միջազգային ռեակցիայի հարձակումների գլխավոր թիրախը ՍՍՀՄ-ն է, կյանքի բոլոր բնագավառներում նրա համաշխարհային-պատմական նշանակություն ստացած հաջողությունները։ Մի կողմից՝ Սովետական Միության, սոցիալիզմի երկրների հարաճուն ազդեցությունը համաշխարհային զարգացման վրա, մյուս կողմից՝ կապիտալիզմի սոցիալ-տնտեսական հակասությունների սրումը բուրժուազիայի գաղափարախոսներին ստիպում է դիմելու տակտիկական նոր պրիոմների։ Նրանք փորձում են գաղափարական պրոբլեմների լուծման ուղի գտնել, առաջադրելով «սոցիալիզմի և կապիտալիզմի մերձեցման», «սոցիալիզմի ազգային մոդելների» և ուրիշ այլ կեղծ դոկտրինաներ։ Սակայն այդ «տեսությունների» ետևում թաքնվում են իմպերիալիստների անհաջողությունները՝ սոցիալիզմի հասցեին ուղղված նրանց սպառնալիքներով, «սառը պատերազմի» քաղաքականությամբ, սոցիալիզմի հետ կապիտալիզմի տնտեսական մրցության մեջ թեթևակի հաղթանակի նվաճման ձախողմամբ հանդերձ։ Ռեակցիոն ուժերի կեղծ մեքենայությունները չեն նշանակում, թե նրանք հրաժարվում են մարդատյաց գաղափարախոսություններից, կոմունիզմի դեմ պայքարի ագրեսիվ մեթոդներից։



Արդի իրադրությունը պահանջում է ակտիվ պայքար մղել հակակոմունիստական գաղափարախոսության, նրա բոլոր ձևերի դեմ։ Դա հակաիմպերիալիստական բոլոր ուժերի մարտական խնդիրն է։ Եվ քանի որ սովետական մարդկանց, սոցիալիստական հասարակության անդամների գաղափարական աշխատանքի հիմքում ընկած են լենինյան գաղափարները, այդ պայքարը մղվում է ամենայն վճռականությամբ ու հաջողությամբ։

Կոմունիստները, Լենինի հավատարիմ համախոհները, ընդհանրացնելով միջազգային հեղափոխական շարժման պրակտիկան, շարունակում են հարստացնել ու առաջ մղել լենինիզմի անմահ ուսմունքը, որի հոյակապ մարմնացումը ՍՍՀՄ-ն է։

Մեր երկրի փորձը հաստատեց, որ սոցիալիզմը հասարակության սոցիալ-տնտեսական կազմակերպման բարձրագույն ձևն է, որին հասել է մարդկությունը պատմական զարգացման պրոցեսում։ Սոցիալիզմի վճռական նվաճումներից և առավելություններից մեկը տնտեսական զարգացման կայուն, արագ տեմպերն են։ 1929—1966 թվականներին արդյունաբերական արտադրության տարեկան միջին աճը ՍՍՀՄ-ում կազմել է 11,1 տոկոս, մինչդեռ ԱՄՆ-ում՝ 4,0, իսկ Անգլիայում ու Ֆրանսիայում՝ 2,5 տոկոս։ Ինդուստրացման արագ տեմպերը մեր երկրին հնարավորություն են ընձեռել հասնելու արդյունաբերական հսկայական վերելքի։ Բավական է ասել, որ, 1913 թ. համեմատությամբ, 1966 թվականին արդյունաբերության արտադրանքն ավելացել է 66 անգամ, այդ թվում մեքենաշինությանը և մետաղամշակմանը՝ 538 անգամ, քիմիական արդյունաբերությանը՝ 294, պողպատի արտադրությանը՝ 22,5, էլեկտրաէներգիայինը՝ 267, ցեմենտինը՝ 45, թեթև արդյունաբերությանը՝ 16,2, սննդի արդյունաբերությանը՝ 12,8 անգամ, տրանսպորտի բոլոր տեսակների բեռնաշրջանառությունը ավելացել է 23,1 անգամ։ Այսպիսի զարգացման շնորհիվ վաղուց է ինչ Սովետական Միությունը դարձել է զարգացած մեքենաշինության, էներգետիկայի, ժամանակակից մետալուրգիայի, վառելիքի արտադրության, քիմիայի և էլեկտրոնիկայի երկիր։ 1969 թվականին արտադրվել են՝ պողպատ 110 միլիոն տոննա, չուգուն 81,6, նավթ՝ 328, քարածուխ՝ 608 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա 689 միլիարդ կվտ ժամ։ Այս վիթխարի առաջընթացի հաստատուն հիմքերը դրվեցին տակավին 1920 թ. Վ. Ի. Լենինի անմիջական մտահղացմամբ ու ղեկավարությամբ մշակված հանրահայտ ԳՈԷԼՌՕ-ի պլանով։

Ներկայումս սովետական ինդուստրիան ի վիճակի է լուծելու արտադրական ու տեխնիկական ամենաբարդ խնդիրներ, ապահովելու երկրի ամբողջ էկոնոմիկայի զարգացման արագ տեմպեր։ Ընթանալով Լենինի մշակած պլանով, Սովետական Միությունը հասել է էկոնոմիկայի անճգնաժամային, անընդհատ վերելքի, գիտության ու տեխնիկայի զարգացման արագ տեմպերի, աշխատունակ բնակչության զբաղվածության և ժողովրդի բարեկեցության բարձրացման։ Ժողովրդական տնտեսության զարգացման պլանաչափությունը հնարավորություն է տալիս արդյունավետ կառավարել էկոնոմիկան, սահմանել լավագույն համամասնություններ, ռացիոնալ տեղաբաշխել արտադրաուժերը, խնայել նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսները։ Սոցիալիստական պլանավորումն ընդգրկում է հասարակական արտադրության բոլոր օղակները։ Այն զուգակցվում է ձեռնարկությունների տնտեսական օպերատիվ ինքնագործունեության հետ և հենվում աշխատավոր մասսաների ստեղծագործական նախաձեռնության վրա։ Սովետական Միության

պլանային տնտեսության տեսությունն ու պրակտիկան խոշոր ավանդ են ժողովուրդների պատմական փորձում, կոմունիստական շինարարության ասպարեզում։

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման պլանների իրականացման գործում կարևոր նշանակություն ունի պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմի հետևողական կենսագործումը։ Այդ սիստեմն արտացոլում է սոցիալիստական տնտեսավարման փոփոխված պայմանները, ժամանակակից սոցիալիստական արտադրության աճած մասշտաբները, դրա կառուցվածքում տեղի ունեցած որակական փոփոխությունները և գիտատեխնիկական հեղափոխության պահանջները։ Տնտեսական ռեֆորմը, իր էությամբ լինելով հետևողական, սոցիալիստական, արտահայտելով սոցիալիզմի տնտեսական հարաբերություններն արտադրաուժերի զարգացման մակարդակի ու բնույթի հետ համապատասխանեցնելու անհրաժեշտությունը, նոր մոտեցում է էկոնոմիկայի կառավարման ոլորտում։ Այդ ռեֆորմի նպատակն է՝ ուժեղացնել ղեկավարման տնտեսական մեթոդների դերը, կատարելագործել պետական պլանավորումը և ընդլայնել ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը, ըստ ամենայնի արմատավորել ու կատարելագործել տնտհաշվարկը։ Փորձը ցույց է տալիս, որ ռեֆորմի հաջող իրագործումը զգալիորեն կախված է կենտրոնացված ղեկավարման և ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության ճիշտ զուգակցումից, բարոյական ու նյութական խթաններից, ապրանքափողային հարաբերությունների ճիշտ օգտագործումից և դրանց հետ կապված տնտեսական կատեգորիաներից՝ շահույթից, գնից, վարկից, ինչպես նաև լայն մասսաների շրջանում տարվող կազմակերպչական ու գաղափարական-դաստիարակչական աշխատանքի մակարդակից։ Նոր պայմաններում ավելի ներդաշնակ են զուգակցվում հասարակության, կոլեկտիվի և անձնավորության շահերը, աճում է աշխատողների շահագրգռվածությունն արտադրառեսուրսների առավել լիակատար օգտագործման, արտադրանքի որակի բարելավման բնագավառում։

Սոցիալիզմն,— ասված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսներում,— արդեն հսկայական բարիքներ է տվել աշխատավոր մարդուն։ Այդ ամենաառաջավոր, իրոք ժողովրդական սոցիալական կարգերի հետագա զարգացումը հասարակությանը կմոտեցնի անհատի համակողմանի ծաղկմանը, գիտական կոմունիզմի հիմնադիրների կանխատեսումների իրագործմանը։

ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակը լենինյան կենսահաստատ գաղափարների մարմնացումն է, ժամանակակից աշխարհի հեղափոխական վերափոխման վճռական գործոնը։





Մ. ՄԵԼԻՔՅԱՆ

# ԱԶԳԵՐԻ ԴԱՇՆԱԴՐՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԸ

## ԵԼԱԿԵՏԸ

Քաղաքակրթության շրջանից սկսած մարդկային հասարակության պատմությունը սոցիալական մեծ խմբերի՝ դասակարգերի պայքարի պատմություն է եղել։ Դասակարգերի հակամարտությունը դրսևորվել է նաև որպես սոցիալ-էթնիկական մեծ խմբերի՝ ազգությունների հակադրություն ու պայքար։ Թեև պատմության ընթացքում տարբեր ազգությունների ու ռասաների պատկանող աշխատավոր զանգվածները խաղաղ համագործակցել են, հաճախ էլ միավորվել ու համատեղ պայքար մղել շահագործողների ու նվաճողների դեմ, բայց տնտեսապես ու քաղաքականապես իշխող դասակարգերի կամքով մի ժողովուրդը դարձել է մյուսներին նվաճող ու ենթարկող, արյունահեղ պատերազմների թոհ ու բոհում ժողովուրդներն ընդհարվել են ու բնաջնջել իրար։ Մինչմարքսյան հասարակագետները և այժմ էլ բուրժուական շատ մտածողներ, չկարողանալով հասարակական երևույթների մակերեսից թափանցել նրանց ներքին էության մեջ, հանգել են այն եզրակացության, որ սոցիալական հակամարտության, թշնամության, պատերազմների և սոցիալական մյուս չարիքների աղբյուրը հենց ազգային ու ռասայական տարբերություններն են։

Այդ թյուրըմբռնման գիտական հերքումը հնարավոր դարձավ միայն պատմության նկատմամբ մատերիալիստական մոտեցման մշակումից հետո։ Այդ հիմքից ելնելով, գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հանգեցին այն հետևության, որ հակամարտ հասարակարգերում բոլոր տեսակ սոցիալական, այդ թվում և ազգային ու ռասայական հարաբերությունները պայմանավորված են դասակարգային հարաբերություններով, այսինքն՝ վերջին հաշվով, հասարակության տնտեսական կառուցվածքով։ Ար-

տադրության հիմնական միջոցների մասնավոր սեփականությունը և դրանից բխող դասակարգային հակամարտությունն ու մարդու շահագործումը որոշում են ո՛չ միայն անհատ մարդկանց ու դասակարգերի, այլև ամբողջ ժողովուրդների հարաբերությունների բնույթը։ Այստեղից էլ բխում է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի այն հանճարեղ եզրահանգումը, որ ազգերի հակադրությունն ու թշնամությունը վերջնականապես կհաղթահարվեն միայն այն ժամանակ, երբ վերացվի դրանց սոցիալական հիմքը՝ արտադրության հիմնական միջոցների մասնավոր սեփականությունը, այսինքն՝ երբ հաստատվեն սոցիալիստական կարգեր։ Այդ հիմքի վրա կոմունիզմի առաջին ծրագրային փաստաթղթում՝ Կոմունիստական կուսակցության մանիֆեստում հռչակվեց, որ սոցիալիստական հեղաշրջումից հետո այն չափով, ինչ չափով կվերացվի մի անհատի շահագործումը մյուսի կողմից, կվերացվի նաև մի ազգի շահագործումը մյուսի կողմից, ազգի ներսում դասակարգային հակամարտության չքացման հետ միասին կչքանան նաև թշնամական հարաբերություններն ազգերի միջև։

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը կանխատեսեցին ո՛չ միայն ազգերի իսկական հավասարության ու դաշինքի հաստատման սոցիալական հիմքերը և դրանց հասնելու ուղիները, այլև տեսան այդ իրականացնելու միակ հասարակական ուժը՝ արդյունաբերական բանվորների դասակարգին, որի միջազգային համերաշխությունն ու միավորումը ո՛չ միայն ընդհանուր սոցիալական, այլև ազգային-ազատագրության հիմնական պայմանն է։ Դրա համար էլ նրանք հռչակեցին Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք նշանաբանը և բանվորների միջազգային ընկերակցությամբ I Ինտերնացիոնալի կազմակերպմամբ, հիմք դրեցին տարբեր ազգերի բանվորների գիտակից ավանգարդի միջազգային համագործակցության։

Մարքսիզմի հիմնադիրներն ընդգծեցին այն միտքը, որ ճնշված ազգերը ստրկության մեջ կմնան այնքան ժամանակ, քանի դեռ բանվորը ստրուկ է մնում, բայց, միաժամանակ, նշեցին նաև, որ սոցիալական ճնշումից ազատագրված ժողովուրդն ազատ չի լինի, եթե շարունակի ճնշել ուրիշ ժողովուրդների։ Հետևաբար, սոցիալիստական հեղաշրջման կարևոր հարցերից մեկը ազգային ազատագրության հարցը պետք է լինի։

Հենց այս հիմնադրույթները ելակետ դարձան Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի գործի մեծ շարունակող Վ. Ի. Լենինի համար, որը հեղափոխական գործունեության ասպարեզ մտավ մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ ավարտվում էր կապիտալիզմի անցումը նրա վերջին՝ իմպերիալիստական փուլին, սկսվել էր պրոլետարական հեղափոխությունների անմիջական իրականացման դարաշրջանը, և ազատագրական պայքարի էին բարձրացել բազմաթիվ գաղութակալված ազգեր։ Ակնբախ է, որ այդ շրջանում սոցիալական հարաբերությունների ընդհանուր շրջանակներում ազգային հարաբերությունների ծավալն զգալիորեն մեծացել էր և ազգային ու ազգային-գաղութային հարցը դարձել սոցիալիստական հեղափոխության օրակարգի հարցերից մեկը։

Զարգացնելով ու հարստացնելով մարքսիզմի ուսմունքը հասարակության սոցիալիստական վերափոխման մասին, Վ. Ի. Լենինն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց ազգային ու ազգային-գաղութային հարցի գիտական հետազոտությանը և մշակեց կոմունիստական կուսակցության կուռ տեսությունն ու ստրատեգիական-տակտիկական ծրագիրը։ Ուսումնասիրելով ազգերի ու ազգային հարաբերությունների զարգացումը կապիտալիզմի օրոք, Վ. Ի. Լենինը հայտնագործեց այդ բնագավառում կապիտալիզմի համաշխար-



հային օրենքը և, նրանից ելնելով, հանգամանորեն պարզաբանեց ազգերի իսկական հավասարության հաստատման ուղիները, ազգերի ինքնորոշման իրավունքի իրականացման հիմնական հարցերը, ցույց տվեց բանվորների ինտերնացիոնալ համախմբման վճռական նշանակությունը ազգային հարցի լուծման համար, հայտնագործեց ազգերի դաշինքի հիմնական ձևերը սոցիալիզմի օրոք։

Ահա այս բոլորի ամբողջությունն է, որ կարելի է անվանել ազգերի դաշնադրության լենինյան ուսմունք։ Այդ դարակազմիկ ուսմունքի իրականացման ծրագիրը Սովետական Միության կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունն է, որի անվերապահ հաղթանակն այսօր ստիպված են խոստովանել անգամ սոցիալիզմի երդվյալ հակառակորդները։

## ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՕՐԵՆՔԸ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԲՆԱԳԱՎԱՌՈՒՄ

XIX դարի վերջին, տնտեսական բուռն զարգացման հիման վրա, ծայր առավ բազմաթիվ գաղութակալված ազգերի ազգային-ազատագրական շարժումը։ Շարժման մեջ մտան, մասնավորապես, աշխարհի բնակչության զգալի մասը կազմող Չինաստանի և Հնդկաստանի ժողովուրդները։

Քաջածանոթ լինելով եվրոպական բազմաթիվ ժողովուրդների կյանքին, Վ. Ի. Լենինը հանգամանորեն ուսումնասիրեց նաև մյուս աշխարհամասերի ժողովուրդների պատմությունն ու առկա վիճակը և հանգեց այն եզրակացության, որ «Զարգացող կապիտալիզմը գիտե երկու պատմական տենդենց ազգային հարցում։ Առաջինը՝ ազգային կյանքի և ազգային շարժումների զարթոնքն է, պայքարն ամեն տեսակ ազգային ճնշման դեմ, ազգային պետությունների ստեղծումը։ Երկրորդը՝ ամեն տեսակ հարաբերությունների զարգացումն ու հաճախացումն է ազգերի միջև, ազգային միջնորմների քանդումը, կապիտալի, առհասարակ տնտեսական կյանքի, քաղաքականության, գիտության և այլնի ինտերնացիոնալ միասնության ստեղծումը։

Երկու տենդենցն էլ կապիտալիզմի համաշխարհային օրենքն են» (Երկեր, հ. 20, էջ 14)։

Վ. Ի. Լենինը ամբողջ խորությամբ հետազոտեց այդ երկու տենդենցների գործողությունը։ Նա ցույց տվեց, որ կապիտալիզմի զարգացումն ամենուր անխուսափելիորեն հանգեցնում է ազգային համախմբման, ազգային լեզվի միասնականացման ու նրա գործածության ոլորտի ընդլայնման, ազգային պետականության հաստատման։ Կապիտալիզմի համար բնորոշ, օրինաչափ է ազգային պետության գոյությունը, որն առավել է համապատասխանում տնտեսական զարգացման աճող պահանջներին, իսկ գաղութակալ բազմազգ պետությունները, այսինքն՝ այնպիսի պետություններ, ուր մի ազգի շահագործողները բռնի հպատակեցնում ու թալանում են բազմաթիվ ազգերի աշխատավոր զանգվածների, հաճախ դաշինքի մեջ մտնելով նրանց սեփական շահագործող դասակարգերի հետ, վերջիվերջո դատապարտված են կործանման։

Բայց կապիտալիզմի առաջընթացը չի հանգեցնում ազգերի հետագա մեկուսացման ո՛չ միայն այն պատճառով, որ այն հետզհետե ընդլայնում ու հաճախացնում է նրանց հարաբերությունները, այլև նրանով, որ ծնում ու զարգացնում է իր կյանքի պայմաններով ինտերնացիոնալիստական, բոլոր ազգերի ու ռասաների աշխատավորներին համախմբելու ունակ և այդ բանում կենսականորեն շահագրգռված բանվոր դասակարգին։

Ուրեմն, ազգային հարցի լուծման, ազգերի իրական հավասարության հաստատման համար անհրաժեշտ է խստորեն հաշվի առնել երկու տենդենցն էլ։ Դրանցից մեկնումեկի միակողմանի ընդունումը կարող է հանգեցնել նացիոնալիստական, այսինքն՝ ըստ էության բուրժուական մոտեցման։ Միմիայն առաջին տենդենցի վրա շեշտը դնելը կնշանակեր, գերագնահատել ազգերի առանձնացումը, նրանց մեկուսացումը, աչքաթող անել նրանց փոխազդեցությունը, ընդհանուր շահերը, բոլոր ազգերի պրոլետարների միասնությունը։ Միայն երկրորդ տենդենցի վրա պնդելը, իր հերթին, կհանգեցներ ազգային շահերի թերագնահատմանը և, վերջիվերջո, տիրապետող խոշոր ազգերի շովինիստական ջատագովությանը։

Մարքսիստը չի կարող այդպիսի միակողմանի մոտեցում ցուցաբերել։ Դրա համար էլ Վ. Ի. Լենինը վճռականորեն ընդգծել է. «Մարքսիստ չէ, անգամ դեմոկրատ չէ նա, ով չի ընդունում և չի պաշտպանում ազգերի ու լեզուների իրավահավասարությունը, ով չի պայքարում ամեն մի ազգային ճնշման կամ անիրավահավասարության դեմ։ Սա անկասկած է։ Բայց նույնպես անկասկած է, որ այն իբր մարքսիստը, որը «ասիմիլյատորության» համար ինչ հայհոյանք ասես թափում է մի ուրիշ ազգի մարքսիստի գլխին, իրականում իրենից ներկայացնում է պարզապես նացիոնալիստական բաղբենի» (նույն տեղը, էջ 15)։

Այսպիսով, Վ. Ի. Լենինը բացահայտեց ազգային հարցում երկու իրար հակադիր քաղաքականությունները, ավելին՝ երկու արմատապես հակադիր աշխարհայեցողությունները՝ բուրժուական նացիոնալիզմը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը: Առաջինը տենդենցներից մեկի միակողմանի ուռճացումն է, դրա հակադրումը մյուսին, իսկ երկրորդը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմը, տենդենցները դիտում է միասնության մեջ։ «Երկու տենդենցներն էլ մարքսիստների ազգային ծրագիրը հաշվի են առնում,— նշում էր Լենինը,— պաշտպանելով նախ ազգերի և լեզուների իրավահավասարությունը, որևէ արտոնությունների անթույլատրելի լինելը այս տեսակետից (պաշտպանելով նաև ազգերի ինքնորոշման իրավունքը, որի մասին առանձին կասվի ստորև), իսկ երկրորդ՝ պաշտպանելով ինտերնացիոնալիզմի և բուրժուական, թեկուզ և ամենանրբին նացիոնալիզմով պրոլետարիատին վարակելու դեմ անհաշտ պայքար մղելու սկզբունքը» (նույն տեղը, էջ 14)։

Այս սկզբունքների հիման վրա մշակվեց լենինյան ծրագիրը ազգային հարցում, որի էությունը Վ. Ի. Լենինը համառոտակի բնութագրել է այսպես. «Ազգերի լիակատար իրավահավասարություն, ազգերի ինքնորոշման իրավունք, բոլոր ազգերի բանվորների միաձուլում,— ազգային այս ծրագիրն է ուսուցանում բանվորներին մարքսիզմը, ուսուցանում ամբողջ աշխարհի փորձը և Ռուսաստանի փորձը» (նույն տեղը, էջ 569)։

Այդ ծրագիրն ամբողջ կուսակցությունը, և անձամբ Վլադիմիր Իլյիչը, հետևողականորեն պաշտպանեց բոլոր տեսակի հարձակումներից, անխնա քննադատելով ու մերկացնելով ամեն մի, նույնիսկ ամենաչնչին շեղում պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից։

## ԻՆՔՆՈՐՈՇՄԱՆ ԻՐԱՎՈՒՆՔԸ

Պրոլետարիատը ձգտում է ո՛չ թե ազգերի անջատման, մեկուսացման, հակադրման, այլ նրանց ամենասերտ քաղաքական, տնտեսական և մշակութային մերձեցման, նրանց քաղաքական ու տնտեսական միավորման ու միաձուլման, բազմիցս նշել է Վ. Ի. Լենինը։ Պրոլետարիատի շահերին, կապիտա-



լիզմի դեմ նրա արդյունավետ պայքարին, ասում էր նա, անշուշտ, ավելի համապատասխանում է միասնական, կենտրոնացված, զարգացած պետությունը, քան մանր ու թույլ ազգային պետությունները։ Եվ բանվորներն ու բանվորական կուսակցությունը ձգտում են այդպիսի միավորման։ Բայց նրանք վճռականապես դեմ են ամեն գնով միավորման, նրանք կողմնակից են միայն և միայն կամավոր միավորման։

Ֆեոդալիզմն ու, մասնավորապես, կապիտալիզմը, շեշտել է Վլադիմիր Իլյիչը, ստեղծել են ազգերի բռնի, հարկադրական միավորում։ Իմպերիալիզմի էությունը հենց այն է, որ նա ազգերը բաժանում է կեղեքողների և կեղեքվողների։ Իսկական կամավոր միավորման համար անհրաժեշտ է արձակել այդ հարկադրական կապերը, դրանք փոխարինել կամավոր կապերով։ Իսկ դրան հասնելու միակ միջոցն ազգերի լիակատար իրավահավասարությունն է՝ այսինքն՝ բոլոր ազգերի քաղաքական ու պետական ինքնորոշման իրավունքի անվերապահ ճանաչումը։

Այսպիսով, ինքնորոշման իրավունքը, ինչպես բազմիցս և համառորեն ընդգծել է Լենինը, ո՛չ թե իր ազգը, նրա լեզուն, մշակույթը ճանաչելն է, այլ տվյալ ազգային խմբի մի այլ, տիրող ազգից քաղաքականորեն անջատվելու և ինքնուրույն պետություն կազմելու իրավունք է։ Այստեղից հասկանալի է, թե ինչու Վլադիմիր Իլյիչը վճռականորեն հակադրվում էր ավստրիական մի քանի մարքսիստների առաջ քաշած «կուլտուր-ազգային ավտոնոմիայի» տեսությանը։ Այդ, այսպես կոչված՝ «կուլտուրական ինքնորոշումը» ո՛չ միայն չէր ապահովում ազգերի քաղաքական և իրավական ազատությունն ու հավասարությունը, այլև մեկուսացնում էր նրանց միմյանցից, հակադրման լրացուցիչ հող ստեղծում։ Եվ բնորոշ է, որ այդ տեսությունը որդեգրեցին սոսկ մի քանի ազգայնական կուսակցություններ ու խմբեր, ինչպես տխրահռչակ հրեական բունդը և հայկական դաշնակցությունը։

Վ. Ի. Լենինն առանձնապես լայն ու բազմակողմանի է հետազոտել ազգերի ինքնորոշման հարցը։ Հատկանշական է, որ ազգային հարցին նվիրված նրա հիմնական աշխատությունները՝ Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին, Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին, Ինքնորոշման վերաբերյալ դիսկուսիայի արդյունքները, Սոցիալիստական ռեղափոխությունը և ազգերի ինքնորոշման իրավունքը, Մարքսիզմի ծաղրանկարի և «իմպերիալիստական էկոնոմիզմի» մասին, նվիրված են հիմնականում ազգությունների ինքնորոշման իրավունքի խնդիրների հետազոտմանը։

Այդ հարցերում Լենինը հանդես է եկել ո՛չ միայն որպես տեսաբան, այլև քաղաքագետ, կուսակցության ծրագրի ազգային հարաբերությունների դրույթների անխոնջ ջատագով ու պրոպագանդիստ, այդ կետի ամեն տեսակ օպորտունիստական աղավաղումներից անհողդողդ պաշտպան։

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը ժամանակին հատուկ ուշադրություն նվիրեցին եվրոպական այն ժողովուրդների վիճակին, որոնք դեռևս չէին ինքնորոշվել և ազատագրական պայքար էին մղում (իռլանդացիներ, լեհեր, իտալացիներ, հունգարներ)։ Վ. Ի. Լենինի ապրած պատմական նոր ժամանակաշրջանում ազատագրական շարժման մեջ մտան բազում նոր ժողովուրդներ և նա ընդհանրացնելով գաղութային և կիսագաղութային երկրների ազատագրական պայքարը, բազմակողմանիորեն քննարկեց Չինաստանի ու Հնդկաստանի, Իրանի ու Մերձավոր Արևելքի ժողովուրդների, Ֆինլանդիայի, Ուկրաինայի, Հայաստանի, Մերձբալթյան և բազմաթիվ այլ երկրների ինքնորոշման հարցե-

րը։ Նա ցույց տվեց, որ իմպերիալիզմի դարաշրջանում, երբ հրով ու սրով կատարվում է արդեն բաժանված ու գաղութակալված աշխարհի վերաբաժանում իմպերիալիստական խոշոր տերությունների միջև, ազգային-ազատագրական շարժումն ընդգրկում է նորանոր ժողովուրդների և ինքնորոշման հարցը դառնում է համաշխարհային հարց։

Ազգերի ինքնորոշման իրավունքի հարցը Լենինը համարում էր համաշխարհային, նշելով, որ պետք է հաշվի առնել, թե ինչ աստիճանի վրա է կանգնած տվյալ ազգը միջնադարից մինչև բուրժուական դեմոկրատիան և բուրժուական դեմոկրատիայից՝ պրոլետարական դեմոկրատիան ընկած ճանապարհին, և որ «Երկրագնդի բնակչության վիթխարի մեծամասնությունը, հավանաբար ինը տասներորդը, թերևս 95 տոկոսը ընկնում է այդ բնորոշման տակ...» (Երկեր, հ. 29, էջ 200)։ Իսկ սա նշանակում է, որ ազգերի ինքնորոշումը կարող է տեղի ունենալ, մի դեպքում՝ կապիտալիզմի պայմաններում, մյուս դեպքում՝ սոցիալիզմի՝ սոցիալիստական հեղափոխության ընթացքում։ Ընդհանուր զարգացման տեսակետից բուրժուական հիմքի վրա իրականացվող ինքնորոշումը բոլոր դեպքերում դրական է, որովհետև ազգերի համեմատաբար ավելի ազատ զարգացման պայմաններ է ստեղծում և սահմանափակում մի ազգի կողմից մյուսի ենթարկումն ու շահագործումը։ Այս իսկ տեսակետից կոմունիստները պետք է պաշտպանեն գաղութակալված ազգերի ազգային-ազատագրական շարժումները, հենվելով այդ շարժումների համադեմոկրատական բովանդակության վրա և ձգտելով այդ պայքարն ուղղել կապիտալիզմի ու իմպերիալիզմի դեմ ընդհանրապես։ Այստեղից էլ բխում է պրոլետարական հեղափոխական շարժման և իմպերիալիզմի դեմ մղվող ազգային-ազատագրական շարժման դաշինքի հարցը, որը մեր օրում այնքան փայլուն դրսևորվում է սոցիալիստական պետությունների կողմից Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի, արաբական ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարին գործնական օգնություն ցույց տալու բազմաթիվ հանրահայտ փաստերի մեջ։

«Անջատվել՝ միավորվելու համար»,— բազմիցս շեշտել է Վլադիմիր Իլյիչը, դրա մեջ դնելով այն խոր իմաստը, որ բռնի կապերը թոթափելու միջոցով անջատված ժողովուրդները որոշակի պայմաններում անխուսափելիորեն միավորվում են։ Այդ պայմանների մեջ գլխավորը սոցիալական ազատագրությունն ու սոցիալիստական կարգեր հաստատելն է։ Սոցիալիզմը հանգեցնում է ժողովուրդների ամենալայն ինքնորոշմանը և հենց դրա հիման վրա նրանց կամավոր միավորմանը։ Այդ իսկ հիմքից ելնելով Վ. Ի. Լենինն անհաշտ քննադատում էր բանվորական շարժման այն գործիչներին, որոնք տուրք տալով օպորտունիզմին, պնդում էին, թե, իբր, սոցիալիզմի պայմաններում այլևս ազգերի ինքնորոշման հարց չի կարող լինել։ Մերկացնելով Պյատակովի ու Բուխարինի և Ռոզա Լյուքսեմբուրգի ոչ-ճիշտ հարցադրումները ազգերի ինքնորոշման հարցում, Վ. Ի. Լենինը միանգամայն սխալ էր համարում կուսակցության ծրագրից ազգերի ինքնորոշման մասին կետը հանելու նրանց պահանջը։ «Այդ կարելի կլիներ անել,— ասում էր նա,— եթե մարդիկ լինեին առանց ազգային առանձնահատկությունների։ Բայց այդպիսի մարդիկ չկան և այլ կերպ մենք երբեք սոցիալիստական հասարակություն չենք կարող կառուցել» (Նույն տեղը, էջ 231)։

Այս առիթով Վ. Ի. Լենինը որոշակիորեն նշել է, որ պրոլետարական կուսակցությունը պաշտպանում է ազգերի ինքնորոշման իրավունքը (այդ իրա-



վունքը բուրժուազիան էլ էր պաշտպանում) ո՛չ թե նրանց ամեն գնով անջատելու, մեկուսացնելու, առանձնացնելու նպատակով, այլ պետական, քաղաքական իրավահավասարություն ապահովելու և եղբայրական դաշինքը հաստատելու համար։ Իհարկե, քանի դեռ ազգերն ապրում են կապիտալիզմի պայմաններում, քանի դեռ նրանք կազմված են շահագործող և շահագործվող դասակարգերից— ազգերի դաշինքի ու առավել ևս նրանց եղբայրության մասին խոսք լինել չի կարող։ Այդ պայմաններում դաշինք կարող է լինել տարբեր ազգերի իշխող դասակարգերի ու նրանց ղեկավարած պետությունների (ինչպես Անտանտան, Եռյակ միությունը անցյալում, ՆԱՏՕ-ն ու ՍԵԱՏՕ-ն այժմ) կամ տարբեր ազգերի աշխատավորների միջև (ինտերնացիոնալները)։ Ազգերի իսկական դաշինք հնարավոր է միայն այն ժամանակ, երբ նրանց ինքնորոշումն իրականացվի սոցիալիզմի հողի վրա։ Իսկ դրա հիմնական նախապայմանը բոլոր ազգերի բանվորների միավորումն է, նրանց ինտերնացիոնալ համախմբումը միասնական պրոլետարական հեղափոխական կուսակցությունների և միջազգային բանվորական կազմակերպությունների մեջ։

## ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՀԱՄԱԽՄԲՈՒՄԸ ԱԶԳԵՐԻ ԴԱՇԻՆՔԻ ՆԱԽԱՊԱՅՄԱՆՆ Է

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը ո՛չ միայն տեսականորեն հիմնավորեցին բոլոր ազգերի բանվորների միավորման ու համախմբման անհրաժեշտությունը, այլև հիմնադրեցին այդ համախմբումն իրականացնող գործուն կազմակերպությունը՝ I Ինտերնացիոնալը, որը միավորեց մի շարք, հատկապես եվրոպական երկրների բանվորների առաջադեմ ու գիտակից մասը։

Պատմական նոր պայմաններում Վ. Ի. Լենինը զարգացրեց համախմբման այդ տեսությունը, այն կոնկրետացնելով կոմունիստական կուսակցության, որպես բանվոր դասակարգի ավանգարդի մասին իր ուսմունքում։ Կոմունիստական կուսակցության կազմակերպման լենինյան կարևորագույն սկզբունքներից մեկը բոլոր, մասնավորապես, բազմազգ երկրներում, բոլոր ազգերին պատկանող առաջավոր բանվորներին միասնական հեղափոխական կազմակերպություններում միավորելու սկզբունքն է։

Վլադիմիր Իլյիչը կրկին ընդգծեց, որ բանվոր դասակարգն իր վիճակով, կյանքի պայմաններով միջազգային է և ունակ ինտերնացիոնալ համախմբման, բայց դրան կարող է հասնել միայն համառ պայքարով, ամենօրյա ինտերնացիոնալ դաստիարակությամբ, որովհետև կապիտալիզմի օրոք բանվորների զգալի մասը վարակված է բուրժուական նացիոնալիզմով, այսինքն՝ ըստ էության, բուրժուական վերաբերմունք ունի մյուս ազգերի և նույնիսկ մյուս ազգերի բանվորների հանդեպ։ Բանվորների մեջ բուրժուական նացիոնալիզմը սերմանում ու ամրապնդում են կապիտալիստները, քանի որ դա ձեռնտու է իրենց գաղութակալ քաղաքականությանը։

Դեռևս 1903 թ. գրած՝ «Ազգային հարցը մեր ծրագրում» հոդվածում Լենինը նշել է. «Ինքնակալության անիծյալ պատմությունը մեզ ժառանգություն է թողել այն զանազան ժողովուրդների բանվոր դասակարգերի ահագին օտարացումը, որոնք ճնշվում են այդ ինքնակալության կողմից։ Այդպիսի օտարացումը մեծագույն չարիք է, մեծագույն խոչընդոտ է ինքնակալության դեմ մղվող պայքարում, և մենք չպետք է օրինականացնենք այդ չարիքը, սրբագործենք այդ այլանդակությունը կուսակցական առանձնության կամ կուսակցական «ֆեդերացիայի» ոչ մի «սկզբունքով» (Երկեր, հ. 6, էջ 589)։

Անխնա քննադատելով բոլոր նրանց, ովքեր անտեսում էին ազգային շահերը, ճերագնահատում ազգերի ինքնորոշման իրավունքը, Վ. Ի. Լենինը, հետևողական ինտերնացիոնալիզմի դիրքերից, խստորեն քննադատեց նաև նրանց, ովքեր ձգտում էին պառակտել տարբեր ազգերի բանվորներին, մեկուսացնել նրանց առանձին կազմակերպությունների մեջ։ Իր աշխատություններում անհաշտ պայքար մղելով նման ձգտում ունեցող խմբավորումների՝ ուկրաինական նացիոնալիստների, հրեական բունդի, հայկական «սպեցիֆիկմի» դեմ, Լենինը շեշտում էր բազմազգ երկրների և բազմազգ բնակչությամբ արդյունաբերական կենտրոնների բանվորների միասնական կազմակերպությունների անհրաժեշտությունը և նրանց «ասիմիլյացիան» (միասնականացումը, սերտ շփումը, միավորումը) այդ կազմակերպությունների մեջ։ Ով չի թաղվել ազգայնականության ճահճում,— նշում էր Վլադիմիր Իլյիչը,— նա չի կարող չտեսնել կապիտալիզմի մեծագույն պրոգրեսը հենց այդ ասիմիլյացիայի մեջ։ Ռուս և ուկրաինացի բանվորների միասնական շահը, օրինակ, պահանջում է հենց այդպիսի մերձեցում՝ «շփում, միաձուլում, ասիմիլյացիա», իսկ նրանց անջատումը, մեկուսացումը «ազգային բնակարաններում», առանձնացումը զուտ ազգային կազմակերպություններում հենց նրանց հակադրության ու թշնամության ամրագրումն է։ Այդ առանձնացման հետ «...անպայման չի հաշտվում պրոլետարական ինտերնացիոնալիզմը,— նշում էր Լենինը,— որը քարոզում է ո՛չ միայն ազգերի մերձեցում, այլև տվյալ պետության բոլոր ազգությունների բանվորների միաձուլում, պրոլետարական միասնական կազմակերպությունների մեջ» (Երկեր, հ. 20, էջ 356—357)։

Հին, ազգային հակամարտության ու թշնամության աշխարհին, ազգային կովտոցին ու ազգային առանձնացածությանը բանվորները հակադրում են բոլոր ազգերի աշխատավոր զանգվածների միասնականության նոր աշխարհը, որի մեջ, ինչպես մարգարեաբար նշել է մեծ առաջնորդը, տեղ չկա ո՛չ մի արտոնության, ոչ էլ մարդու կողմից մարդու ամենափոքր հարստահարման։

Կապիտալիզմի պայմաններում ազգային հարցի պրոլետարական լուծումը, միակ լուծումը, Լենինը տեսնում էր տարբեր ազգերին պատկանող առաջավոր բանվորների համատեղ պայքարում՝ միասնական հեղափոխական կազմակերպությունների մեջ։ Լենինի ղեկավարությամբ Ռուսաստանում կազմակերպվեց այդ կարող ուժը՝ կոմունիստական կուսակցությունը, որը ղեկավարեց 1917 թվականի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը և դրա հիման վրա ապահովեց Ռուսական պետության մեջ մտնող բոլոր ազգերի սոցիալիստական ինքնորոշումն ու եղբայրական դաշինքը։ Մեծ Լենինի ղեկավարած ինտերնացիոնալիստական կուսակցության ռահվիրաներն էին Ռուսաստանի կազմում գտնվող բոլոր ազգությունների լավագույն զավակները՝ Կոսիորն ու Պետրովսկին, Շահումյանն ու Մյասնիկյանը, Օրջոնիկիձեն ու Ջափարիձեն, Ցրուզեն ու Կատովսկին, Ազիզբեկովն ու Նարիմանովը, Ստուչկան և Կինգիսեպը և շատ ու շատ ուրիշներ։

1919 թվականին Վ. Ի. Լենինի ղեկավարությամբ հիմնադրված III կոմունիստական ինտերնացիոնալը միավորեց սոցիալական և ազգային-ազատագրության համար պայքարող ամենահետևողական ինտերնացիոնալիստական կուսակցություններին։ III ինտերնացիոնալը մշակեց սոցիալիստական և ազգային-ազատագրական շարժումների դաշինքի հիմնական դրույթը և Լենինի առաջարկությամբ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» կոմունիստների մարտական կոչի մեջ մտցրեց գաղութների ու կախյալ երկրների ժողովուրդներին ուղղված դիմումը՝ «Բոլոր երկրների պրոլետարներ և շահագործվող ժողովուրդներ, միացե՛ք»։ Կոմունիստական ինտերնացիոնալը ամենալայն ու գործնական պայքար ծավալեց բանվորական շարժման մեջ թափանցած օպորտունիստական և սոցիալ-հայրենասիրության գաղափարախոսության դեմ և կոփեց տարբեր երկրների բանվորների ու գաղութակալված ժողովուրդների կուռ դաշինքը։ Բոլոր ազգերի ու երկրների հեղափոխական պրոլետարիատի առաջապահ ջոկատների և իրենց ազգային-ազատագրության համար պայքարող ժողովուրդների այս միասնությունն էր, որ գործնական հիմքեր ստեղծեց բազմաթիվ ազգերի հետագա սոցիալիստական միավորման ու դաշինքի համար։

## ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԵՎ ԱԶԳԵՐԻ ԴԱՇԻՆՔԸ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը տապալեց կապիտալիստների ու կալվածատերերի իշխանությունը, վերացրեց արտադրության հիմնական միջոցների մասնավոր սեփականությունը և դրանով իսկ ռեալ հիմքեր ստեղծեց ազգերի կամավոր միության համար։ Բայց դրան միանգամից հասնել չէր կարելի. անհրաժեշտ էր, նախ՝ իրականացնել կայսրության լծի տակ դարերով ճնշված ազգերի ինքնորոշման իրավունքը. մի խնդիր, որը սովետական կարգերին նախորդած կարճատև բուրժուական կարգերը ո՛չ միայն չիրականացրին, այլև ավելի խճճեցին ու սրեցին ազգային հարաբերությունները։

Դրա համար էլ հոկտեմբերից անմիջապես հետո Լենինի նախաձեռնությամբ սովետական պետությունը դիմեց մի շարք գործնական քայլերի. ճանաչեց Ֆինլանդիայի, Լեհաստանի, Լատվիայի, Լիտվայի, Էստոնիայի անկախությունը, դեկրետ հրապարակեց Արևմտյան Հայաստանի ինքնորոշման մասին և 1918 թվականի հունվարին, «Աշխատավոր ու շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայով» հայտարարեց, որ «Ռուսաստանի սովետական հանրապետությունը հիմնվում է ազատ ազգերի ազատ միության հիմունքներով, իբրև սովետական ազգային հանրապետությունների ֆեդերացիա»։ Ֆեդերացիան այդ պայմաններում ազգերի ինքնորոշման և կամավոր միավորման լավագույն միջոցն էր։ Լենինը նշում էր, որ սովետական իշխանության պայմաններում ֆեդերացիան չի հակասում դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքին և ուղի է դառնում ազգերի լիակատար միասնության հասնելու համար։

Ռուսաստանյան ֆեդերացիան քայլ առ քայլ ինքնորոշում և դրա հիման վրա ինքնավարություն տվեց իր կազմում ապրող ազգերին՝ թաթարներին, բաշկիրներին, բուրյաթներին, մորդվաներին, կոմիներին, կալմիկներին, Դաղստանի ազգություններին, ղազախներին և Միջին Ասիայի մյուս ազգերին։ 1922 թվականին Վլադիմիր Իլյիչի նախաձեռնությամբ ստեղծված Անդրկովկասյան Սովետական Հանրապետությունների Ֆեդերացիան միավորեց հայ, վրաց և ադրբեջանցի ազգերի քաղաքական ու տնտեսական ջանքերը։

Այս ամբողջ փորձի հաշվառումով, Լենինը հիմնավորեց և առաջադրեց սոցիալիզմի ուղու վրա կանգնած ժողովուրդների դաշնադրության նոր, ամենակատարյալ ձևը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որը 1922 թվականին միավորեց չորս դաշնակից սոցիալիստական հանրապետությունների, իսկ հետագայում աճեց-դարձավ 15 սոցիալիստական հանրապետությունների միություն։

Սոցիալիստական ազգերի այս նոր դաշնադրությունն ամուր հիմքերի

վրա խարսխելու համար, Լենինը ո՛չ միայն վիթխարի գործնական, այլև խորագույն տեսական աշխատանք կատարեց։ Նա ցույց տվեց սովետական հանրապետությունների «ինքնավարացման» առաջարկի վնասակարությունը, հատուկ ուշադրություն նվիրեց ազգային և միջազգային շահերի զուգակցման ճիշտ մեթոդների մշակմանը, շեշտելով, որ «Մեր փորձը մեր մեջ անխորտակելի համոզմունք է ստեղծել, որ տարբեր ազգերի շահերի նկատմամբ հսկայական ուշադրությունն է միայն, որ վերացնում է կոնֆլիկտների հողը, վերացնում փոխադարձ անվստահությունը, վերացնում է ամեն տեսակ ինտրիգների երկյուղը, ստեղծում է, մանավանդ տարբեր լեզուներով խոսող բանվորների և գյուղացիների, այն վստահությունը, առանց որի բացարձակապես անհնարին են թե՛ ժողովուրդների խաղաղ հարաբերությունները և թե փոքրիշատե հաջող զարգացումն այն ամենի, ինչ արժեքավոր է արդի քաղաքակրթության մեջ» (Երկեր, հ. 33, էջ 457)։

Սոցիալիզմի ուղու վրա կանգնած ժողովուրդների դաշինքի հիմնական պայմաններից մեկը Լենինը համարում էր նրանց ո՛չ միայն իրավական, այլև փաստական (տնտեսական, մշակութային) հավասարության ստեղծումը։ Կապիտալիզմը, ստեղծելով մի ազգի կողմից մյուսներին ենթարկելու ու ճնշելու համակարգը, հավերժացնում է ազգերի զարգացման աստիճանների տարբերությունը, դրա հետևանքով արդյունաբերական ու մշակութային տեսակետից զարգացած ազգերի կողքին պահպանվում են խիստ հետամնաց, աղքատ ու անգրագետ ազգեր։ Ազգերի սոցիալիստական դաշինքի էությունը հենց այն է, որ այն, փոխադարձ օգնության հիման վրա, հաղթահարում է ազգերի զարգացման մակարդակների այդ վիթխարի տարբերությունները և նրանց դարձնում հավասարներ բոլոր՝ քաղաքական, տնտեսական և մշակութային տեսակետներից։ Այս պրոցեսում արմատականորեն փոխվում է մեծ ազգերի համաշխարհային պատմական դերը, ինչն ակնհայտ է մասնավորապես ռուս ազգի օրինակից. եթե մինչև սոցիալիզմը ռուս ազգն իր շահագործողների ձեռքին այլ ազգերին ճնշելու ու գաղութացնելու, նոր երկրներ նվաճելու գործիք էր, ապա սոցիալիստական կարգեր հաստատելուց հետո այն դարձավ մյուս ժողովուրդների ազատագրման, նրանց տնտեսական ու մշակութային առավել արագ զարգացմանը մեծապես օգնող գործոն։ Ռուս ժողովրդի այդ նոր դերը խորապես զգում ու հասկանում են նրա հետ դաշինքի մեջ մտած բոլոր սոցիալիստական երկրների ժողովուրդները, որոնք նրան անվանում են «ավագ եղբայր»։

Սոցիալիզմն ապահովեց ազգերի արմատականորեն նոր փոխհարաբերություններ, կյանքի կոչեց նրանց զարգացման նոր օրինաչափություն, որը դրսևորվում է նրանց կյանքի բոլոր կողմերի, մասնավորապես, տնտեսության ու մշակույթի անշեղ ծաղկման ու մերձեցման երկմիասնական տենդենցներում։ Այդ օրինաչափության վառ դրսևորումը նախկինում հետամնաց բազմաթիվ ազգերի աննախընթաց զարգացումն է, որի շնորհիվ նրանք կարողացան հասնել ամենազարգացած ազգերի մակարդակին։

Վ. Ի. Լենինի բացահայտած ուղիով ընթացող սովետական ժողովուրդներն ստեղծեցին անցյալում չտեսնված ու մինչև սոցիալիզմն անհնար կուռ դաշնադրություն, որի շնորհիվ կանգնեցին համաշխարհային քաղաքակրթության ամենաառաջին շարքերում։ Նրանց օրինակով և անմիջական օգնությամբ Եվրոպայի, Ասիայի և Ամերիկայի 13 երկրների ժողովուրդներ դեն նետեցին կապիտալիզմի լուծը, նվաճեցին սոցիալական և ազգային ազատագրություն,



ՍՍՀՄ ժողովուրդների հետ միասին կազմեցին սոցիալիզմի ու խաղաղության համաշխարհային համակարգը, որը օրավուր բարգավաճում ու հզորանում է, ավելի ու ավելի մեծ դեր խաղալով համաշխարհային զարգացման մեջ։

Սոցիալիզմի համաշխարհային համակարգի երկրները ամուր հենարան են իրենց ազգային-ազատագրության համար պայքարող ժողովուրդների համար, որոնց մեծ մասն արդեն ձեռք է բերել ազգային անկախություն և վճռում է սոցիալական զարգացման բարդ հարցերը։ Նրանց մի մասը հենվելով սոցիալիստական դաշինքի երկրների ամենալայն քաղաքական, նյութական ու մշակութային աջակցության վրա, փորձում է շրջանցել կապիտալիստական զարգացումը և հիմքեր ստեղծել սոցիալիստական զարգացման ուղու վրա կանգնելու համար։

Պատմությունը անհերքելիորեն ապացուցեց, որ ոչ մի ուժ աշխարհում ի վիճակի չէ քանդելու սոցիալիստական կարգերի հիման վրա ստեղծված ժողովուրդների լենինյան դաշնադրությունը։ Այդ դաշնադրության մեջ մտած ամեն մի ժողովուրդ իր, արդեն կեսդարյա փորձով գիտե, որ իր բարգավաճման ու ծաղկման կարևորագույն պայմանը ժողովուրդների անխախտ միասնությունն է, որի շնորհիվ անցյալում անապահով, բռնության ու կոտորածների ենթակա ժողովուրդները այժմ խաղաղ ու ստեղծագործ աշխատանքով կոմունիստական հասարակարգ են կառուցում՝ իրենց դաշինքի եռակի զրահով պաշտպանված։

Այդ դրույթն ամրագրված է ՍՄԿԿ ծրագրի հետևյալ դրույթում. «Յուրաքանչյուր սովետական հանրապետություն կարող է այսուհետև էլ ծաղկել ու ամրապնդվել միայն ՍՍՀՄ եղբայրական սոցիալիստական ազգերի մեծ ընտանիքում»։

Ինչպես մարգարեաբար կանխատեսում էր Լենինը, ժողովուրդների այդ եղբայրական ընտանիքում, ավելին՝ այժմ արդեն սոցիալիզմի համաշխարհային համակարգի երկրներում տեղի է ունենում սոցիալիստական ազգերի հետագա բարգավաճում և մերձեցում, նրանց փոխադարձ շփման աննախընթաց ընդլայնում, որոնց շնորհիվ քայլ առ քայլ հաղթահարվում են ժողովուրդներին անցյալում իրարից անջատող ու մեկուսացնող, իրար հակադրող գաղափարախոսության վերջին նշույլները։ Որքան սերտ է սոցիալիստական ժողովուրդների շփումը, որքան բարձր նրանց կողմից ազգային ու ինտերնացիոնալ շահերի զուգակցումը, համաժողովրդական խնդիրների ըմբռնումը, այնքան ավելի հաջողությամբ են հաղթահարվում տեղայնության ու ազգային եսամոլության դրսևորումները, այնքան ավելի է ամրապնդվում նրանց եղբայրական միասնությունը։

Սոցիալիզմի պայմաններում ապրող ժողովուրդների մեջ մարմնավորվել, միս ու արյուն է դարձել ազգայինն ու միջազգայինը անքակտելիորեն միացնող պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարախոսությունը։ Սոցիալիզմը ստեղծեց հայրենասիրության մի նոր տիպ, որն օրգանապես միաձուլված է ինտերնացիոնալիզմի հետ։ Այդ գաղափարախոսությունն օրըստօրե ամրապնդվում ու խորանում է Սովետական Միության կոմունիստական կուսակցության հետևողական լենինյան ազգային քաղաքականությամբ, որն անհաշտ պայքար է տանում նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային բացառիկության ու անջատվածության ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ, աշխատավորներին դաստիարակում է սոցիալիստական հայրենիքի նկատմամբ անդավաճան սիրո և ազատ ժողովուրդների եղբայրության ոգով։

Վ. Ի. Լենինի ավանդներով կռփված միջազգային կոմունիստական շարժումը, անդուլ պայքար մղելով իմպերիալիզմի աշխարհակործան ուժերի դեմ, հասավ միջազգային սոցիալիստական հեղափոխական ուժերի միասնության, համագործակցության և փոխօգնության։ Ինչպես արդարացիորեն նշված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի թեզիսներում. «Մի մեծ խումբ երկրներում սոցիալիստական հեղափոխությունների հաղթանակը, հեղափոխական բանվորական շարժման հաջողությունները, ազգային-ազատագրական հեղափոխությունների հաղթանակը, ազգային դեմոկրատիայի պետությունների առաջացումը. ահա միջազգային սոցիալական հեղափոխության ուժերի միասնության, համագործակցության ու փոխօգնության պտուղները»։

Զարգանալով լենինյան կենսահաստատ գաղափարների հիման վրա, ժամանակակից համաշխարհային կոմունիստական շարժումը դարձել է մեր դարաշրջանի ամենահզոր և ամենաազդեցիկ քաղաքական ուժը։ Կոմունիստական շարժման զարգացման մեջ խոշոր ուղենիշեր դարձան վերջին տարիների միջազգային խորհրդակցությունները, որոնց ընդունած ծրագրային փաստաթղթերում մշակված են Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգության հրատապ հարցերը։ Ինչպես նշված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի թեզիսներում, հավատարիմ մնալով Մարքսի-Էնգելսի-Լենինի գաղափարներին, միջազգային կոմունիստական շարժումը ներկայումս մշակել է նոր լոզունգ, որը համապատասխանում է հեղափոխական պրոլետարական ինտերնացիոնալիզմի ժամանակակից, հարստացած հասկացությանը՝ «Սոցիալիստական երկրների ժողովուրդնե՛ր, կապիտալի երկրների պրոլետարնե՛ր, դեմոկրատական բոլոր ուժե՛ր, ազատագրված և ճնշված ժողովուրդնե՛ր, միացե՛ք իմպերիալիզմի դեմ, խաղաղության, ազգային անկախության, սոցիալական առաջադիմության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար մղվող ընդհանուր պայքարում»։

Պատմությունը ցույց տվեց ազատագրված ազգերի դաշնադրության լենինյան ուսմունքի անվերապահ ճշմարտությունը և նրա վիթխարի ազդեցությունը մարդկության զարգացման ամբողջ ներկա դարաշրջանի վրա։ Եվ այսօր մարդկության մեծագույն հանճարի հարյուրամյա հոբելյանը հավերժացնող հոյակերտ հուշարձանը ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների ժողովուրդների եղբայրական անսասան դաշինքն է, գաղութային լծից ազատագրված հարյուր-միլիոնավոր մարդկանց ազատագրությունն ու նոր կյանքը։





**Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ**

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԳՐԱԿԱՆ ՀԱՐՈՒՍՏ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ

Վ. Ի. Լենինը համակողմանիորեն զարգացրեց Մարքսի և Էնգելսի հեղափոխական ուսմունքը, հարստացրեց այն նոր հետևություններով ու հայտնագործություններով։ Չկա իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանի պատմական ընթացքով հարուցված որևէ հարց, որի պատասխանը չտար Լենինը։ Նա թողել է գրական վիթխարի ժառանգություն, որը բոլոր երկրների հեղափոխական և սոցիալիզմի համար մարտնչող ուժերի հոգեկան սննդի անսպառ աղբյուրն է։ Նրա երկերով դաստիարակվել ու դաստիարակվում են երկրագնդի միլիոնավոր մարդիկ։ Թե ինչպես է տարածվել Վլադիմիր Իլյիչի գրական ժառանգությունն աշխարհի երկրներում, պատկերացում են տալիս հետևյալ տվյալները։

1969 թ. հունվարի 1-ի դրությամբ, Վ. Ի. Լենինի աշխատությունները ՍՍՀՄ-ում լույս են տեսել ավելի քան 10 հազար հրապարակումներով (աշխատությունների առանձին հատորներ, գրքեր, ժողովածուներ)՝ 348 216 700 ընդհանուր տպաքանակով։ Նրա աշխատությունները թարգմանվել են աշխարհի և ՍՍՀՄ ժողովուրդների 117 լեզուներով (Ա. Սոլովյով. Առաջնորդի փաստաթղթային ժառանգությունը, «Սովետական Հայաստան», № 10, 1970 թ.)։ Անկասկած, այս տվյալները նշանակալից չափով ավելացել են Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստման ընթացքում։ Դրանք մի անգամ ևս հաստատում են լենինիզմի համաշխարհային նշանակությունը, այն պատմական ճշմարտությունը, որ լենինյան ուսմունքն արտահայտում է արդի դարաշրջանի արմատական պահանջները։

ՍՄԿԿ-ն, նրա Կենտրոնական կոմիտեն հսկայական աշխատանք են կատարել լենինյան գրական ժառանգությունը հավաքելու, պահպանելու և հրատարակելու համար։

ՌԿ(բ)Կ IX համագումարի որոշմամբ 1920 թվականին ձեռնարկվեց և 1926-ին ավարտվեց Վ. Ի. Լենինի երկերի ժողովածուի հրատարակությունը՝ 20 հատորով։ ՍՍՀՄ սովետների II և կուսակցության XIII համագումարների որոշումներով 1925—1932 թվականներին իրագործվեցին Վլադիմիր Իլյիչի երկերի երկրորդ և երրորդ հրատարակությունները՝ 30 հատորով։

Կուսակցության Կենտկոմի որոշմամբ 1941 թվականին սկսվեց և 1950 թվականին ավարտվեց Վ. Ի. Լենինի երկերի չորրորդ հրատարակությունը՝ 35 հատորով։ 1958—1965 թվականներին լույս տեսավ նրա երկերի լիակատար ժողովածուն՝ 55 հատորով։ Այդ կապակցությամբ երկերի չորրորդ հրատարակությունը լրացվեց ևս 10 հատորով։ Լույս են տեսել նաև Վ. Ի. Լենինի երկերի հրատարակություններին համապատասխան տեղեկատու հատորներ, որոնք հեշտացնում են այդ երկերի ուսումնասիրությունը։

Երկերի ժողովածուների հրատարակմանը զուգահեռ լույս են տեսել նաև 36 հատոր Լենինյան ժողովածուներ, որոնք պարունակում են Լենինին պատկանող կամ նրան վերաբերող փաստաթղթեր։ Եթե նրա երկերի առաջին հրատարակությունում զետեղվել են 1500, երկրորդում և երրորդում՝ 2700, իսկ չորրորդում՝ 3000 աշխատություն ու փաստաթուղթ, ապա հինգերորդ հրատարակությունում՝ լիակատար ժողովածուում, տպագրված են մոտ 9000 աշխատություն ու փաստաթուղթ։

Տպագրվում է XXXVII լենինյան ժողովածուն, որտեղ զետեղված են նրա մինչև այժմ չհրատարակված ավելի քան 500 փաստաթուղթ։ Երկերի ժողովածուների հինգ հրատարակությունից բացի, մասսայական տպաքանակով, բազմիցս հրատարակվել են Վ. Ի. Լենինի Ընտիր երկերը երկու, երեք և վեց հատորներով, բազմաթիվ թեմատիկ ժողովածուներ՝ ակտուալ հարցերի ընդգրկմամբ, առանձին երկեր՝ տասնյակ հրապարակումներով ու միլիոնավոր տպաքանակով։

Ակներև է այն մեծ աշխատանքը, որ կատարվել է լենինյան գրական հարուստ ժառանգությունը հավաքելու, ժողովրդի սեփականությունը դարձնելու բնագավառում։ Վ. Ի. Լենինի երկերն ու փաստաթղթերը հավաքել և դրանք հրապարակման է պատրաստել ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը, որի կենտրոնական արխիվում խնամքով պահպանվում են առաջնորդի ավելի քան 30 հազար ձեռագրեր, նամակներ և զանազան ինքնագրեր։

Անցած տարիների ընթացքում շատ բան է արված Վ. Ի. Լենինի աշխատությունների նաև հայերեն թարգմանության ու հրատարակման ասպարեզում։ Հայ առաջավոր, հեղափոխական գործիչները, որոնք տիրապետում էին ռուսերենին, Վ. Ի. Լենինի աշխատություններին ծանոթացել են նրանց հրապարակ գալու ժամանակից։ Բայց այդ աշխատությունները ընթերցող լայն զանգվածների սեփականությունը դարձնելու համար անհրաժեշտ էր կազմակերպել դրանց հայերեն թարգմանությունը։ Դրան ձեռնամուխ են եղել բոլշևիկյան կազմակերպությունները դեռևս մեր դարասկզբին։

Պրոլետարիատի մեծ առաջնորդի երկերի հայերեն, ինչպես նաև վրացերեն թարգմանություններն սկսվում են 1903 թվականից, որպես հեղափոխական շարժման կենսաբուխ պահանջ։ Իլյիչի երկերի՝ այլ լեզուներով առաջին, ամենահին թարգմանություններն են դրանք։ Անդրկովկասի, այդ թվում և հայ պրոլետարիատը ռուս պրոլետարիատի հետ միասին դուրս էր գալիս քաղաքական-հեղափոխական ակտիվ պայքարի ասպարեզ։ Անդրկովկասում կազ-



մակերպվել էին լենինյան-իսկրայական կազմակերպություններ, որոնք գլխավորում էին բանվորական շարժումը՝ անհաշտ պայքար մղելով ցարական ինքնակալության ու բուրժուազիայի դեմ։

ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեն լայն աշխատանք ծավալեց Մարքսի, Էնգելսի, Լենինի երկերի, կուսակցական կարևորագույն փաստաթղթերի, մարքսիստական գրականության ու թռուցիկների հայերեն, վրացերեն թարգմանության ու հրատարակության նպատակով։

Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ 1904 թ. սկզբին Ժնևում ՌՍԴԲԿ Կենտկոմին կից ստեղծվեց հայերեն և վրացերեն կուսակցական գրականության հրատարակման հատուկ հանձնաժողով, որն ուներ իր տպարանը, աջակցող խմբերը արտասահմանյան տարբեր քաղաքներում։ Հայկական գրականության հրատարակման գործը ղեկավարում էր Ստ. Շահումյանը։ Հանձնաժողովի անդամներն էին (Շահումյանից բացի) Ա. Երզնկյանը, Մ. Մանուչարյանը։ Հանձնաժողովը սերտորեն կապված էր ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեի հետ։ Նրա հրատարակություններն ստանում էր միութենական կոմիտեն և տարածում Կովկասի քաղաքներում ու շրջաններում։ Նյութերն ուղարկվում էին Վ. Ի. Լենինի (Վ. Ի. Ուլյանովի) հասցեով, որը մատնանշված էր հրատարակվող գրքերի շապկի վրա։

Վ. Ի. Լենինի հայերեն լույս տեսած առաջին աշխատությունը «Ինքնակալությունը տատանվում է» նշանավոր հոդվածն է (Երկեր, հ. 6, էջ 435—442)։ Այն թարգմանված է «Искра» թերթի 1903 թ. № 35-ից և տպագրված է Կովկասյան միութենական կոմիտեի օրգան «Պրոլետարիատի կռիվը» անլեգալ թերթի 1903 թվականի ապրիլ-մայիսի 2—3 միացյալ համարում։ Այդ թերթի նույն համարում հրապարակվել է ՌՍԴԲԿ II համագումարի հրավիրման կազմակերպական կոմիտեի «Ծանուցումը», որը տպագրվել էր «Искра»-ի № 32-ում (Երկեր, հ. 6, էջ 384—389)։

1904 թվականին հայերեն թարգմանվում և Ժնևում հրատարակվում են Վ. Ի. Լենինի մի շարք աշխատություններ։ Կենտկոմին կից հայերեն և վրացերեն կուսակցական գրականության հրատարակման հանձնաժողովը հայերեն թարգմանում և լույս է ընծայում Ծանուցում ՌՍԴԲԿ II հերթական համագումարի մասին գրքույկը, ուր զետեղված էին լենինյան փաստաթղթերը, մասնավորապես նրա գրած Ուսանող երիտասարդության նկատմամբ վերաբերմունքի մասին բանաձևը (նույն տեղը, էջ 599)։ Հրատարակության պատրաստվեց Վ. Ի. Լենինի Գյուղական չքավորությանը գրքույկը (նույն տեղը, էջ 453—550)։ Լույս են տեսնում «Ռուսական պրոլետարիատին» և «Մայիսի մեկը» ՌՍԴԲԿ Կենտկոմի թերթիկները՝ 7000-ական տպաքանակով, որոնք պատկանում են Իլյիչի գրչին (տե՛ս ПСС, т. 8, стр. 170—174, 181—184)։


Ն. ԼԵՆԻՆ

ՊԵՏՈՒԹԻՒՆ

ԵՒ

ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆ




Նկատի առնելով լենինյան խոսքի մեծ ուժը, ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեն նամակով դիմում է Վ. Ի. Լենինին, խնդրելով, որ նա աշխատակցի «Պրոլետարիատի կռիվը» թերթին, որը, ինչպես հայտնի է, լույս էր տեսնում հայերեն, վրացերեն և ռուսերեն։ Վլադիմիր Իլյիչը համաձայնում է։ Կովկասյան միութենական կոմիտեին ուղղած իր պատասխան նամակում նա գրում է. «Թանկագին ընկերներ։ Ստացա «Պրոլետարիատի կռիվ»-ի վերաբերյալ Ձեր նամակը։ Աշխատում եմ գրել և կհաղորդեմ խմբագրության իմ ընկերներին» (Երկեր, հ. 34, էջ 315)։

1905 թվականին ավելի ծավալվեց ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեի հրատարակչական գործունեությունը։ Այդ տարում հայերեն լույս տեսան յոթից ավելի լենինյան երկեր։ «Պրոլետարիատի կռիվը» թերթի 1905 թ. № 6-ում հրապարակվեց Վ. Ի. Լենինի «Երրորդ համագումարը» հոդվածը (Երկեր, հ. 8, էջ 562—571) թարգմանված «Пролетарий» թերթի 1905 թ. № 1-ից), ՌՍԴԲԿ III համագումարի բանաձևը Կովկասի իրադարձությունների մասին (նույն տեղը, էջ 536—537)։ «Պրոլետարիատի կռիվը» թերթի № 7-ում տպագրվեց «Հեղափոխական պրոլետարիատի դեմոկրատական խնդիրները» հոդվածը (թարգմանված «Пролетарий» № 4-ից)։ Նույն թվականի սկզբին Թիֆլիսում առանձին գրքույկով, անլեգալ հրատարակվեց «Պրոլետարիատի և գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրայի մասին» աշխատությունը՝ 1000 օրինակ տպաքանակով (տե՛ս «Пролетарий» №15, 1905)։ 1905 թ. հուլիսի 20-ին լույս տեսավ «Պետական կազմի երեք սահմանադրություն կամ երեք կարգ» թերթիկը՝ 1500 օրինակ։ Հաղորդելով Վ. Ի. Լենինի վերոհիշյալ թերթիկի հայերեն և վրացերեն հրատարակության մասին, բոլշևիկյան կենտրոնական օրգան «Пролетарий»-ն նշում էր, որ այն Կովկասում կարդում են, դուր է գալիս (նույն տեղը)։

Դրանից բացի, 1905 թվականին առանձին գրքույկներով հայերեն տպագրվեցին ՌՍԴԲԿ III համագումարի որոշումները («Ծանուցում ՌՍԴԲԿ III համագումարի մասին»), կուսակցության կանոնադրությունը, Տամերֆորսի կոնֆերանսի բանաձևերը, որոնց մեծ մասը գրել է Վլադիմիր Իլյիչը։

Լենինի վերոհիշյալ աշխատությունները լուսաբանում էին ռուսական առաջին հեղափոխության մեջ պրոլետարիատի, նրա կուսակցության խնդիրները, մերկացնում մենշևիկների օպորտունիզմը, հիմնավորում բոլշևիկների հեղափոխական տակտիկան, պրոլետարիատի հեգեմոնիայի, զինված ապստամբության, պրոլետարիատի ու գյուղացիության հեղափոխական-դեմոկրատական դիկտատուրայի կարևորագույն դրույթները։

1906—1907 թվականներին բոլշևիկյան հայ մամուլը իր էջերում բերում էր «Пролетарий» և «Вперед» թերթերում տպագրված Վ. Ի. Լենինի հոդ-






վածներից ընդարձակ քաղվածքներ՝ ցուցադրելով իր համերաշխությունը դրանց հետ։

Վլադիմիր Իլյիչի աշխատությունների հայերեն առաջին թարգմանությունները կազմակերպել է Ստ. Շահումյանը։ Այդ մեծ և կարևոր գործին մասնակցել են Ս. Խանոյանը, Ռ. Դաշտոյանը և ուրիշ հայ լենինյաններ, որոնց կատարած թարգմանությունները, վավերագրերի բացակայության պատճառով, կոնկրետ նշել հնարավոր չէ։

Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն թարգմանության նպատակով նոր, ծավալուն աշխատանք է սկսվում 1917 թվականից։ 1917—1920 թթ. Անդրկովկասի և Ռուսաստանի տարբեր քաղաքների բոլշևիկյան հայ մամուլը սիստեմատիկաբար տպագրել է Լենինի հոդվածները, ճառերը, զեկուցումները, նամակները։ 1917 թվականին Թիֆլիսում հրատարակվող «Պայքար» թերթում (№ 14, 6 հունիսի) տպագրվեց Վ. Ի. Լենինի բաց նամակը գյուղացիական դեպուտատների համառուսաստանյան համագումարի պատգամավորներին։ Նույն թվականին «Բանվորի կռիվը» հրապարակեց Վ. Ի. Լենինի մի շարք հոդվածներ, մասնավորապես նրա «Ճգնաժամը մոտենում է, փլուզումը՝ աճում» և «Պատասխանը»։ Թերթի 1917 թվականի հոկտեմբեր-նոյեմբերի 10 համարներում առանձին գլուխներով տպագրվեց Վ. Ի. Լենինի Սպառնացող աղետը և ի՞նչպես պայքարել նրա դեմ նշանավոր գրքույկը։ Թերթում 1918 թ. հունվարին լույս տեսան Պետություն և հեղափոխություն գրքի մի շարք գլուխներ։ Վլադիմիր Իլյիչի այդ գիրքը (ուր նա զարգացնում է պրոլետարիատի դիկտատուրայի մասին մարքսիստական ուսմունքը) ռուսերեն լույս էր տեսել նույն թվականի հունվարին։

Բոլշևիկյան այլ թերթերում («Բանվոր», «Բանվորի խոսք», «Նեցուկ», «Կոմունիստ», «Կարմիր օրեր», «Կարմիր դրոշակ», «Տեղեկատու», «Կարմիր աստղ» և այլն) 1917—1920 թվականներին հրատարակվել են Վ. Ի. Լենինի այնպիսի կարևոր աշխատություններ, ինչպիսիք են՝ Լոզունգների առթիվ, Քաղաքական կուսակցությունները Ռուսաստանում և պրոլետարիատի խնդիրները, Երրորդ ինտերնացիոնալը և նրա տեղը պատմության մեջ, Շաբաթօրյակների մասին, «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ մեծածավալ աշխատությունը, բազմաթիվ զեկուցումներ, համագումարներում, միտինգներում, ժողովներում արտասանած ճառեր, նամակներ ու փաստաթղթեր։ Այսպիսով, հայ ընթերցողը պարբերական մամուլի միջոցով հնարավորություն էր ստանում ժամանակին ծանոթանալու լենինյան երկերին, ելույթներին, նրա ստորագրությամբ պետական կարևորագույն որոշումներին։

Երևանում հրատարակվող կոմունիստական «Խոսք» թերթը 1918—1919 թվականների մի շարք համարներում զետեղել է ընդարձակ գրախոսական Վ. Ի. Լենինի Պետություն և հեղափոխություն գրքի մասին, որը առանձին

գրքով լույս տեսավ Թիֆլիսում՝ 1918 թվականին։ Գրախոսականի հեղինակը՝ Արշ. Մելիքյանը, տալով գրքի մանրակրկիտ շարադրանքը, ավարտում է այն հետևյալ խոսքերով. «Վաղուց է արդեն կարիք զգացվում, որ գրված լիներ նման աշխատություն։ Ինչպես մի ժամանակ նույն հեղինակի «Что делать» (1902) գիրքը ագահությամբ կարդացվում և ուսումնասիրվում էր մարքսիստների կողմից, նույնպես և «Պետություն և հեղափոխությունը» ամեն մի կոմունիստի համար կդառնա նրա սեղանի գիրքը» («Խոսք» № 7, 1919, 15 փետրվարի)։

Վ. Ի. Լենինի աշխատությունների թարգմանության և հրատարակության գործում մեծ աշխատանք կատարեց ՌՍՖՍՀ ազգությունների ժողովրդական կոմիսարիատի հայկական գործերի կոմիսարիատը՝ Մոսկվայում և, հատկապես, Վահան Տերյանը, որը կատարելապես տիրապետելով հայերենին ու ռուսերենին, լինելով կրթված մարքսիստ, թարգմանեց Լենինի մի շարք աշխատություններ (Կարլ Մարքս: Համառոտ կենսագրություն և մարքսիզմի շարադրությունը, Պետություն և հեղափոխություն: Առաջինը լույս տեսավ 1918, երկրորդը՝ 1920 թվականին)։

1918—1919 թվականներին Մոսկվայում Հայկական գործերի կոմիսարիատի և ՀԿԿ Կենտկոմի հրատարակությամբ առանձին գրքերով լույս տեսան Վ. Ի. Լենինի Նամակ ամերիկյան բանվորներին, Երրորդ ինտերնացիոնալն ու իր տեղը պատմության մեջ, Թեզիսներ բուրժուական և պրոլետարական դեմոկրատիայի մասին, Ինչ պետք է լինի մեր կուսակցության անունը, Քաղաքական կուսակցությունները Ռուսաստանում և պրոլետարիատի վերաբերմունքը աշխատությունները (վերջինս թարգմանել է Հ. Սուլովյանը)։

1920 թվականին Պետություն և հեղափոխություն և այլ գրքերից բացի, Մոսկվայում առաջին անգամ հայերեն հրատարակվեց Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա հռչակավոր գիրքը, որտեղ Վ. Ի. Լենինը տվել է իմպերիալիզմի գիտական վերլուծությունը, բացահայտել նրա բնույթը, հակասությունները, ապացուցել, որ իմպերիալիզմը կապիտալիզմի վերջին փուլն է, սոցիալիստական հեղափոխության նախօրյակը։

Այս տարիներին Վլադիմիր Իլյիչի մի քանի աշխատություններ լույս տեսան Թիֆլիսում («Երրորդ ինտերնացիոնալ» հրատարակչությամբ) և Բաքվում (Մեծ նախաձեռնություն գրքույկը)։

1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն։ Սկսվեց հայ ժողովրդի վերածնության, նրա սոցիալիստական զարգացման փուլը։ Հաղթանակի առաջին օրը Հեղկոմը Հայաստանի աշխատավորության և Հայկոմկուսի անունից ողջունեց Վ. Ի. Լենինին։ Մեծ առաջնորդը ջերմորեն շնորհավորեց Հայաստանի աշխատավորներին Անտանտի և նրա գործակալների՝ դաշնակների լծից ազատագրվելու առթիվ։

1920 թ. դեկտեմբերի 5-ին Երևանում սկսեց լույս տեսնել ՀԿԿ Կենտկոմի և Հայհեղկոմի օրգան «Կոմունիստ» (հետագայում «Խորհրդային Հայաստան») թերթը, որի առաջին համարի առաջին էջում հրապարակվեց Հայհեղկոմի նախագահի՝ Ս. Կասյանի անունով ստացված Վ. Ի. Լենինի ողջույնի հեռագիրը։ Հայաստանի աշխատավորությունը մեծ ցնծությամբ ու ոգևորությամբ ընդունեց առաջնորդի ողջույնը։

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո նոր, իսկապես հզոր թափ ստացավ մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի հայերեն հրատարակությունը։ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմը



և կառավարությունը նյութական բոլոր հնարավոր պայմանները ստեղծեցին Մարքսի, Էնգելսի, Լենինի երկերի սիստեմատիկ, գիտական հրատարակության համար։ Երևանում ստեղծվեց Հայաստանի պետական հրատարակչություն, նրա բաժանմունքը՝ Մոսկվայում, կուսակցական հատուկ հրատարակչություն Երևանում (կուսհրատ), որոնք հրատարակչական լայն աշխատանք ծավալեցին։ Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի հայերեն թարգմանության գործում ներգրավվեցին տեսականորեն պատրաստված կուսակցական ու պետական ականավոր գործիչներ, գիտնականներ, փորձառու թարգմանիչներ։

Բացի պարբերական մամուլից, ուր հրապարակվում էին Լենինի երկերը, զեկուցումները, ճառերը, ելույթները, զրույցները, դրանց մասին հաղորդումները, հանրապետությունում և նրանից դուրս ստեղծված հրատարակչական մարմինները պարբերաբար և մեծ տպաքանակով լույս են ընծայել նրա հիմնական երկերը։

1921 թվականին, Վ. Ի. Լենինի մի շարք գրքերի հետ միասին լույս են տեսնում Պարենային հարկի մասին և «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ աշխատությունները։ «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ հանճարեղ երկը բոլշևիկյան կուսակցության բազմամյա փորձի, հեղափոխական պայքարում ստուգված նրա տակտիկայի ու ստրատեգիայի ամփոփումն էր, որն ուներ համաշխարհային նշանակություն։ Այն դարձավ աշխարհի բոլոր կոմունիստների սեղանի գիրքը, նրանց զինեց քաղաքական պայքարի ղեկավարման գիտությամբ, օգնեց քաղաքական ճիշտ գիծ մշակելու։

1924 թ. հոկտեմբերի 4-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմը հաստատեց Վ. Ի. Լենինի հիմնական աշխատությունների հայերեն հրատարակության պլանը։ Այդ թվականից լույս են տեսնում Վ. Ի. Լենինի երկերի թեմատիկ ժողովածուները։ 1926 թվականին հրատարակվում է Ազգային հարցը ժողովածուն (404 էջ), որը պարունակում է ազգային հարցի մասին Լենինի հոդվածները, նամակները և այլ նյութեր։ 1927—1931 թվականներին հրատարակվում են Կոոպերացիայի մասին, Նոր տնտեսական քաղաքականություն, Հոկտեմբերյան հեղափոխությունը, Կոմունիստական ինտերնացիոնալ, Քաղաքատնտեսության հարցերը, Գյուղացիության մասին և բազմաթիվ այլ երկեր։

1929 թվականին առանձին գրքով հրատարակվում են Վլադիմիր Իլյիչի նշանավոր Ի՞նչ անել, 1930-ին՝ Մի քայլ առաջ, երկու քայլ ետ աշխատությունները. այս երկերում նա մշակել է իր կուռ ուսմունքը նոր տիպի պրոլետարական կուսակցության, նրա գաղափարախոսության, կառուցվածքի ու գործունեության բնույթի մասին։ 1929 թվականից սկսած հնարավոր եղավ հետզհետե հայերեն տպագրել Լենինի ընտիր երկերի վեցհատորյակը, ինչպես նաև ձեռնարկել Երկերի ռուսերեն 2-րդ հրատարակության հայերեն թարգմանությանը։ 1930—1938 թվականներին լույս տեսան Լենինի երկերի 8 հատորները։ Առանձնապես պետք է ընդգծել Երկերի 13-րդ հատորի թարգմանությունը (1933 թ.), որն ընդգրկում է հեղինակի հռչակավոր Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ փիլիսոփայական աշխատությունը և հանդիսանում է դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմի հետագա փայլուն զարգացումը։

Վ. Ի. Լենինի վերոհիշյալ, ինչպես և փիլիսոփայական մի շարք այլ աշխատությունների թարգմանությունը կատարել էր Ց. Խանզադյանը։

ՀԿԿ Կենտկոմը պարբերաբար անդրադարձել է մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի հայերեն հրատարակությանը։ 1931 թվականի մայիսի

19-ին Կենտկոմը քննեց Վ. Ի. Լենինի երկերի վեցհատորյակի և Կ. Մարքսի Կապիտալի առաջին հատորի թարգմանության հարցը։ 1932 թ. ապրիլի 1-ին Կենտկոմի բյուրոն որոշեց մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի հայերեն թարգմանության հրատարակման պատրաստումը, խմբագրումը հանձնարարել Հայաստանի ՍՍՀ Կենտգործկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին և հաստատեց ընդհանուր խմբագրական կոլեգիա, որի կազմում էին Ա. Խանջյանը, Դ. Սիմոնյանը և Հ. Գյուլիքևխյանը։




ՀԿ(բ)Կ Կենտկոմի որոշումներին համապատասխան, 1931 թվականին հրատարակվեց Վ. Ի. Լենինի երկերի վեցհատորյակի երկրորդ հատորի հայերեն թարգմանությունը՝ 10500 տպաքանակով։ Հատորն ընդգրկում էր նրա 1905—1914 թվականներին գրած աշխատությունները։ Առաջին հատորը լույս տեսավ 1932 թվականին (1894—1904 թթ. գրած երկերը), մյուսները՝ 1933—1935 թվականներին։ 1935 թվականին 10 հազար տպաքանակով լույս ընծայվեցին Վ. Ի. Լենինի Ընտիր երկերը՝ երկու հատորով։ Այնուհետև այն լույս տեսավ 1939, 1948 թվականներին։ Տպագրվեց նաև Ընտիր երկերի միհատորյակը։

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի որոշմամբ 1941 թվականից սկսվեց Վ. Ի. Լենինի Երկերի չորրորդ հրատարակությունը։ ՀԿԿ Կենտկոմը որոշեց նույն թվականից ձեռնարկել չորրորդ հրատարակության հայերեն թարգմանությանը։ Վ. Ի. Լենինի աշխատությունների մինչ այդ եղած թարգմանությունները մեծ չափով նպաստեցին իրագործելու այդ լուրջ խնդիրը։

1941—1947 թթ. լույս տեսան չորրորդ հրատարակության առաջին, երկրորդ և երրորդ հատորները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի հայերեն թարգմանության և հրատարակության գործում կարևոր նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի— ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի հիմնումը 1947 թվականի վերջին։ Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալում ստեղծվեց մարքսիզմ-լենինիզմի կլասիկների երկերի թարգմանության հատուկ սեկտոր։ Վ. Ի. Լենինի երկերի թարգմանությունը և խմբագրումն այնուհետև իրագործեց մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը։ Հրատարակման գործն ապահովեց Հայպետհրատը։

Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալին և Հայպետհրատին հաջողվեց 1948—1952 թթ. թարգմանել և հաջորդաբար հրատարակել Վ. Ի. Լենինի երկերի չորրորդ հրատարակության 35 հատորները։ Հայկական



ֆիլիալը հետագայում շարունակեց չորրորդ հրատարակության լրացուցիչ 10 հատորների թարգմանությունը՝ ռուսերեն լույսընծայմանը զուգահեռ։

Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին արդեն հայ ընթերցողն իր տրամադրության տակ ունի հանճարեղ առաջնորդի երկերի բոլոր 45 հատորները (չորրորդ հրատարակություն)։ Սա խոշոր իրադարձություն է Հայաստանի կոմունիստական կուսակցության, ամբողջ հայ ժողովրդի գաղափարական կյանքում, միաժամանակ կուլտուրական վիթխարի նվաճում, առաջընթաց մեծ քայլ հայոց լեզվի զարգացման ասպարեզում։

Վ. Ի. Լենինի երկերի 45 հատորի հրատարակմանը զուգահեռ լույս են տեսել նաև նրա ընտիր երկերի եռհատորյակը, մոտ 75 թեմատիկ ժողովածուներ և հարյուրավոր առանձին աշխատություններ։ Հաշվի առնելով ընթերցողների մեծ պահանջը, Վլադիմիր Իլյիչի մի շարք երկեր բազմիցս հրատարակվել են հայերեն։ Այսպես՝ Պետություն և հեղափոխությունը տպագրվել է 9, Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական հեղափոխության մեջ՝ 4, «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ՝ 7, Երիտասարդական միության խնդիրները՝ 10, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստադիա՝ 7, Սովետական իշխանության հերթական խնդիրները՝ 5, Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ՝ 3, Պրոլետարական հեղափոխությունը և ռենեգատ Կաուցկին՝ 5, Ի՞նչ անել՝ 6, Մի քայլ առաջ, երկու քայլ ետ՝ 3, Ինչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպես են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ՝ 4 անգամ և այլն։ Այստեղ չեն նշված այն բազմաթիվ հրատարակությունները, որ կատարվել են թեմատիկ ժողովածուներում և երկերի հատորներում։

Հանրագումարի բերելով Լենինի գրական ժառանգության հայերեն հրատարակության վերաբերյալ տվյալները, ստանում ենք հետևյալ պատկերը. 1918—1970 թթ. նրա աշխատությունները, առանձին գրքերով, հայերեն լույս են տեսել 364 անգամ, 2 միլիոնից ավելի տպաքանակով։

Այս բոլորը ռեալ հիմք են ծառայում մոտակա տարիներին իրագործելու Վլադիմիր Իլյիչի երկերի լիակատար ժողովածուի 55 հատորների հայերեն հրատարակությունը, որին ՀԿԿ Կենտկոմի որոշմամբ արդեն ձեռնամուխ են եղել մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը և «Հայաստան» հրատարակչությունը։

Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն թարգմանությունները տարածվել են ո՛չ միայն Սովետական Հայաստանում ու Սովետական Միությունում, այլև արտասահմանյան հայության շրջանում։ Պետք է նշել, որ արտասահմանյան հայ կոմունիստական ու պրոգրեսիվ մամուլը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո, հաճախ իր էջերում տպագրել է Լենինի հոդվածները, ճառերը, զրույցները, նամակները։ Այսպես, ԱՄՆ-ում հրատարակվող «Կռան» թերթի 1919 թվականի № 18—19-ում զետեղվել է Վ. Ի. Լենինի Գյուղում տարվող աշխատանքի մասին զեկուցումը ՌԿԿ VIII համագումարում։ Նույն թերթի 1920 թ. մարտի 5-ի № 32—33-ում՝ Լենինի զրույցը «Ունիվերսալ Սերվիս» ամերիկյան գործակալության Բեռլինի թղթակից Կարլ Վիգենդի հետ, հայերեն թարգմանված է ամերիկյան «New York Evenang Journal»-ից, որը նրա զրույցը վերնագրել էր՝ Բոլշևիկների նպատակն է խաղաղություն և ավելի շատ առևտուր,— ասում է Լենինը։ «Երիտասարդ Հայաստան» թերթը 1920 թ. № 85-ում տպագրել էր Վ. Ի. Լենինի զրույցը Լենկոլն Այրեի հետ։

*Այդ երկու գրույցներում մեծ առաջնորդը զարգացնում էր տարբեր սոցիալական սիստեմների միջև խաղաղ գոյակցության հնարավորության հարցը։ Լենինի վերոհիշյալ զրույցները ռուսերեն հրատարակվել են՝ առաջինը 1950, երկրորդը՝ 1957 թվականին։*

*Վ. Ի. Լենինի բազմաթիվ երկեր տպագրվել են ամերիկյան կոմունիստական հայկական մամուլում («Բանվոր», «Գործավոր», «Պրոլետար», «Նոր աշխարհ»)։ 1922 թ. ԱՄՆ-ում առանձին գրքով հայերեն լույս տեսավ Վ. Ի. Լենինի* Պետություն և հեղափոխություն *աշխատությունը. նույն թվականին Ֆիլիպեում (Բուլղարիա)՝* Կոմունիստ երիտասարդությունը և նրա դերը *գրքույկը։*

*Վ. Ի. Լենինի գաղափարները լայնորեն տարածվել են արտասահմանի հայ աշխատավորների շրջանում, ոգեշնչել նրանց պայքարի՝ հանուն դեմոկրատիայի ու սոցիալիզմի։*

*Վ. Ի. Լենինի երկերի հայերեն թարգմանությունը և հրատարակությունը մի խումբ թարգմանիչների ու խմբագիրների մեծ ջանքերի արգասիք են։ Հասկանալի է այդ գործի բարդությունն ու պատասխանատվությունը։ Անհրաժեշտ էր լիովին հարազատ մնալ լենինյան բնագրին և, միաժամանակ՝ հայոց լեզվի օրինաչափություններին։ Լենինի երկերի հայերեն թարգմանությունները կատարված են գիտական բարեխղճությամբ։ Դա, իհարկե, չի ժխտում հետագա թարգմանությունների ու վերահրատարակումների կատարելագործման անհրաժեշտությունը։*

*Վ. Ի. Լենինի երկերի հայերեն թարգմանության գործում վերը նշված թարգմանիչներից բացի, երախտիք ունեն՝ Վ. Փոթեյանը, Ե. Տեր-Մինասյանը, Ա. Խոնդկարյանը, Հ. Թուրշյանը, Տ. Դադյանը, Վ. Ավագյանը, Ռ. Գուլքանյանը, Պ. Աբելյանը, Մ. Զաքարյանը, Աղ. Հակոբյանը, Կ. Վարդանյանը, Լ. Աբովյանը, Ստ. Ներսիսյանը, Խ. Ավդալբեկյանը, Թ. Ավդալբեկյանը, Խ. Սարգսյանը, Ս. Հակոբյանը, Հ. Ամիրխանյանը, Պ. Նազարյանը, Հ. Կարախանյանը և ուրիշներ։ Թարգմանությունները խմբագրել են Հ. Դոնոյանը, Գ. Պարիսը, Ա. Բզնունին, Տ. Ա. Ալեքսանյանը, Տ. Պ. Ալեքսանյանը, Ա. Ադոյանը, Հ. Ասլանյանը, Հ. Պողոսյանը, Օ. Հովհաննիսյանը, Ջ. Գրիգորյանը, Վ. Ղազանչյանը, Հ. Թումանյանը, Ա. Իսահակյանը, Ջ. Բաշինջաղյանը, Խ. Բարսեղյանը, Բ. Մարտիրոսյանը, Ա. Թելունցը, Հ. Մամիկոնյանը, Մ. Արզումանյանը, Գ. Ղարիբջանյանը, Ս. Բուդումյանը, Ռ. Աթայանը և ուրիշներ։*

*Վ. Ի. Լենինի գրական մեծ ժառանգությունը դարձել է հայ ժողովրդի սեփականությունը, այն անսպառ գանձարանը, որից նա քաղում է սովետական մարդկանց ու երկրագնդի ողջ աշխատավորության կոմունիզմի համար պայքարի ոգեշնչող լենինյան վեհ գաղափարները։*



# ՍՈՎԵՏՆԵՐԻ ՀԱՂԹԱԿԱՆ ԵՐԹՈՒՄ



Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# ԼԵՆԻՆԻԶՄԻ ՋԱՀԱԿԻՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Մեծ ճակատամարտը շահելուց առաջ պետք էր գաղափարապես նախապատրաստել հաղթանակը: Թեև հայ ժողովրդի տնտեսական ու սոցիալական կյանքի իրավիճակը պարունակում էր նրա ազգային ու սոցիալական ազատագրության օբյեկտիվ նախադրյալները, բացառված չէր, որ նույն վիճակը, վատթարանալով, կարող էր հարատևել, եթե մարդկանց ուժերը, նրանց մտքերն ու տրամադրությունները չուղղվեին դարի կենսահույզ խնդիրների հեղափոխական լուծմանը: XIX դարի վերջին և XX դարի սկզբին, ինչպես հայ ժողովրդի, նույնպես և ռուսական կայսրությունում ապրող մյուս ժողովուրդների աշխատավոր կանգվածների կյանքի բարելավման համար պահանջվում էր ամենից առաջ ստեղծված իրավիճակի համակողմանի գիտական վերլուծում, հասարակական-քաղաքական ուժերի ճիշտ գնահատում, գիտականորեն հիմնավորված, իրականանալի նպատակի և դրան հասնելու համար անհրաժեշտ գործողությունների մշակում:

Մինչև 1890-ական թվականները Ռուսաստանը քիչ չէր տեսել մտքի լուսավոր շողեր, սակայն լույսի հեղեղ էր պետք, որ ջրի երես հաներ կյանքի բոլոր ստվերոտ կողմերը, և տառապյալ աշխատավորության կռիվը վարեր ճշմարիտ հունով: Լույսի այդ հեղեղը եղավ Վ. Ի. Լենինի ուսմունքը: Լենինիզմի լույսի ներքո պարզորոշ երևացին և հայ իրականության հակադիր դասակարգային բևեռները, նրանց բախման ձևերն ու եղանակները:

Հայ ժողովրդի կյանքում կրկնվող արյունալի բախումները դարի գլխավոր

սոցիալական կոնֆլիկտով բացատրելը ցույց էր տալիս, որ մեր իրականության մեջ արդեն թափանցել է մարքսիզմ-լենինիզմը: Սկզբնապես մի խումբ սովորող հայ երիտասարդներ, առաջադեմ հայ բանվորներ կանգնեցին հարցերի լուծման միջազգային դիրքերում և Հայաստանինն ու հայկականը քննեցին՝ հաշվի առնելով Անդրկովկասն ու համաանդրկովկասյանը, Ռուսաստանն ու համառուսաստանյանը, միջազգայինը: Հայ իրականության մեջ հանդես եկավ նոր տիպի հասարակական գործիչը՝ մարքսիզմով զինված գաղափարական մարտիկը, որի գլխավոր հոգսը աշխատավոր մարդու ազատագրումն էր: Ցույց տալով հայ ազգի (ինչպես և ամեն մի այլ ազգի) դասակարգային ներքին հակամարտությունը՝ հասարակական այդ նոր գործիչը պնդում էր, թե հայ բանվորները, բոլոր աշխատավորները միաբան են ու համախոհ ամբողջ Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի հետ:

Երբ Լենինը գիտականորեն հիմնավորեց ամբողջ Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի շահերի միասնության վեհ գաղափարը, ապացուցեց ազատագրական պայքարում հաղթանակ նվաճելու համար բոլոր ազգերի բանվորների *համատեղ պայքարի* կենսական անհրաժեշտությունը, այդ պահից ի վեր Կովկասում հեղափոխականության բնորոշ հատկանիշներից մեկը դարձավ հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմին:

Ն. Գ. Չեռնիշևսկին ռուսաստանյան զրկված մուժիկին կոչ էր անում կացին վերցնել տիրող կարգերի դեմ, և դրանից հույսի ջերմություն էր լցվում նաև առաջադեմ մտածողների սրտերը: Ասպարեզ իջան նարոդնիկները. ռուսաց քաղաքներում սովորող հայոց զավակներից շատերը մտան նրանց ընդհատակյա խմբակները և, արհամարհելով իրենց կյանքին սպառնացող վտանգը, նետվեցին հակացարական ահեղ մարտերի հորձանուտը:

Ուրիշ էր 1890-ական թվականների ժամանակը: Ցարի դեմ մահափորձի ելած Ալեքսանդր Ուլյանովի եղբայրը եկել էր Պետրոգրադ, և մեծ եղբոր գաղափարակից քաջամարտիկներն ու կյանք մտնող բանվոր-հեղափոխականները համախմբվել էին նրա շուրջը: Մինչև Պետերբուրգում ուսանող թիֆլիսեցի Արշակ Զուրաբյանն ու շուշեցի Բոգդան Կնունյանցը Պայքարի միության հավաքների ժամանակ կհանդիպեին Վլադիմիր Ուլյանովին, ղպլարեցի Իսահակ Լալայանցը դեռևս 1893 թ. ընկերակցել էր նրան Սամարայում և նրա հետ մեկտեղ կազմել Ռուսաստանի հնագույն մարքսիստական խմբակներից մեկը: Ամբողջովին նվիրվելով Վ. Ի. Լենինի գործին, Լալայանցը կատարում էր նրա կարևոր հանձնարարությունները թե՛ Ռուսաստանում և թե արտասահմանում: 1890-ական թթ. և 900-ական թթ. սկզբին երիտասարդ Իլյիչի՝ որպես հասուն քաղաքական գործչի, բացառիկ խելքի տեր մտածողի մասին իմացան Թիֆլիսի և Բաքվի հայազգի բանվորները, Անդրկովկասի ու Ռուսաստանի զանազան քաղաքներում սովորող հայ երիտասարդները, որոնց մեջ էին Ստեփան Շահումյանը, Ալեքսանդր Բեկզադյանը, Ասատուր Կախոյանը, Սերգո Մարտիկյանը, Սուրեն Սպանդարյանը, Սարգիս Կասյանը, Դանուշ Շահվերդյանը, Սահակ Տեր-Գաբրիելյանը, Վլադիսլավ Կասպարյանցը, Սիմոն Տեր-Պետրոսյանցը (Կամո), Ասքանազ Մռավյանը, Արշավիր Մելիքյանը, Սարգիս Խանոյանը, Գևորգ Ղարաջյանը, Մելիք Մելիքյանը, Աշոտ Խումարյանը և ուրիշներ:

Նոր տիպի կուսակցության ստեղծման լենինյան պլանը, ազգային հարցի մասին Վ. Ի. Լենինի աշխատությունները, նրա կողմից Ռուսաստանի պրոլետարիատի կոնկրետ խնդիրների գիտական հիմնավորումը և հակամարքսիստական հոսանքների դեմ ծավալած պայքարը օգնեցին դարի շեմին



կյանք մտնող բազմաթիվ հայ առաջադեմ երիտասարդների՝ ընթանալու ժողովրդի սոցիալ-քաղաքական ազատագրման ճիշտ ուղիով: Հայտնի է, որ նախքան հայ իրականության մեջ մարքսիզմի մուտքը, Հայաստանում արդեն կային հռչակված հասարակական գործիչներ, քաղաքական կուսակցություններ, հոսանքներ, խմբավորումներ, կար խայտաբղետ ազգային մամուլ և հրապարակախոսություն: Սակայն մարքսիստներն ընթացան միանգամայն նոր, տակավին խոպան սոցիալական մարտադաշտերով: Նրանք առաջինն էին, որ քննադատական հայացք նետեցին հասարակական գործունեության ավանդական ձևերի, ազգայնական կուսակցությունների քարոզների վրա:

Վլադիմիր Իլյիչը ճանապարհ էր հարթում: Նա բացահայտում էր համառուսաստանյան կյանքի յուրօրինակությունները, շեշտում, որ ժամանակը հեղափոխական է, կուսակցության դերը՝ վճռական: Ընդունելով, որ պատմության գլխավոր հեղինակը ժողովուրդն է, Լենինը միաժամանակ ցույց էր տալիս բանվոր դասակարգի գործին նվիրված կազմակերպիչների, ղեկավարների կարևոր դերը հեղափոխության հաղթանակի գործում: Լենինի անձնական օրինակը, նոր ու ներշնչող տեսական խոսքը, նրա անմիջական, կազմակերպական-դաստիարակչական աշխատանքը առաջ քաշեցին ու ձևավորեցին լենինյան տիպի հեղափոխական գործիչների, որոնց մեջ պատվավոր տեղ են գրավում նաև հայ ժողովրդի բազմաթիվ անձնվեր զավակներ: Նրանց մեջ քիչ չէին այնպիսիք, որ անձնապես ծանոթ ու մոտ էին Իլյիչին, կատարում էին նրա անմիջական հանձնարարությունները, ինչպես և այնպիսիք, որ Լենինի հետ միայն հեռակա նամակագրական կապ ունեին: Կենտրոնից հեռու՝ Հայաստանում և Անդրկովկասում ասպարեզ իջան բազմաթիվ հեղափոխական գործիչներ, որոնք խոշոր ծառայություններ մատուցեցին հայ իրականության մեջ լենինիզմի տեսության պրոպագանդմանը, Լենինի ուսմունքը հայ ժողովրդի լայն զանգվածներում տարածելու գործին:

Հայ առաջին մարքսիստ-լենինյանների քաղաքական հասունության ամենափայլուն վկայություններից մեկը 1902 թ. Թիֆլիսում ձևավորված հայ սոցիալ-դեմոկրատիայի միության Մանիֆեստն է: Կարդալով այն՝ Լենինը «Искра»-ի էջերից ողջունեց Միության հանդես գալը և ընդգծեց ազգային հարցի ճիշտ լուծումը նրա ծրագրային փաստաթղթում: Բարձր էին գնահատվում հայ սոցիալիստների ջանքերը: Նրանք ճիշտ էին գտել լուծումը: Հրապարակ էր իջել հայկական պրոլետարական ինտերնացիոնալ այն ուժը, որն ըմբռնել էր դարի ոգին և ընդգծում էր, որ հայ ժողովրդի ազգային-սոցիալական ազատագրության ճշմարիտ ուղին համառուսաստանյան պրոլետարիատի և հայ աշխատավորական տարրերի համատեղ պայքարն է ընդհանուր դասակարգային թշնամու դեմ:

1903 թվական... Բրյուսելում և Լոնդոնում տեղի ունեցած ՌՍԴԲԿ II համագումարի նիստերում Բաքվի պատգամավոր Բ. Կնունյանցը շատ ելույթներ ունեցավ: Նա պաշտպանում էր Վ. Ի. Լենինի թեզերն ու առաջարկությունները՝ խորապես շահագրգռված, որ լենինյան կուսակցությունը ձևավորվի կատարյալ ինտերնացիոնալիզմի հիմունքներով, արտահայտի ռուսական պետության կազմում գտնվող բոլոր ազգերի աշխատավորների շահերը: Նա դիպուկ հակահարված էր տալիս հրեական բունդի նացիոնալիստական անջատողական վարքագծին:

Հեղափոխական շրջադարձի այդ նշանավոր տարում՝ 1903 թ., արտասահմանում Իլյիչի հետ ծանոթացավ Ստեփան Շահումյանը: Այդ պահից ի վեր

նրանց միջև հաստատվեցին գաղափարական անմիջական կապեր՝ փոխադարձ նամակագրությամբ, մտքերի անկեղծ փոխանակմամբ:

ՌՍԴԲԿ II համագումարից հետո, Լենինի հանձնարարությամբ, Շահումյանը գալիս է Կովկաս՝ տեղի բոլշևիկներին ծանոթացնելու համագումարի որոշումներին, ապա վերադառնում Ժնև՝ նրան իրազեկ դարձնելու կովկասյան իրադարձություններին: Իսկ արտասահմանում խիստ անհրաժեշտ էր Շահումյանի ներկայությունը. այնտեղ նա պետք է ձեռնարկեր հայերեն ու վրացերեն մարքսիստական գրականության հրատարակմանը, ինչպես և կազմակերպեր պայքարը հայկական ու վրացական նացիոնալիստների դեմ: Շահումյանն անկուզական լենինյան էր՝ անձնուրացությամբ նվիրված պրոլետարիատի ազատագրման գործին: Մինչև Լենինի հետ ծանոթանալը, նա արդեն կարևոր ավանդ էր մուծել համառուսաստանյան հեղափոխական շարժման մեջ: 1899 թ. Լոռու Ջալալօղլի գյուղում, նրա նախաձեռնությամբ, ստեղծվել էր առաջին մարքսիստական խմբակը, իսկ 1902 թ. նա խոշոր դեր էր խաղացել Թիֆլիսում հայ սոցիալ-դեմոկրատների միության ստեղծման գործում: Հանդիսանալով պրոլետարական տիպի նոր գործիչ՝ Ստ. Շահումյանը շուտով դարձավ մարքսիզմի ականավոր տեսաբաններից մեկը, որը կարողանում էր խորապես վերլուծել հասարակական կյանքի զարգացման օրենքները և կազմակերպել մարդկանց՝ գալիք գոռ մարտերին:

Կոլեկտիվիզմի, հեղափոխական մտածողության և հեղափոխական ոգու գլխավոր աղբյուրն էր լենինյան «Искра»-ն: Շնորհիվ հայ բոլշևիկյան մամուլի բազմաթիվ օրգանների, իսկրայական կայծից հեղափոխական մտքի նոր օջախներ վառվեցին կովկասահայ իրականության մեջ:

1902 թ. Թիֆլիսում լույս տեսավ «Պրոլետարիատ»-ը՝ հայ իրականության մեջ լենինյան մտքի առաջին ջահակիրներից մեկը: Կազմակերպված կոլեկտիվ խոսք էր այն, կշռադատված ու մտածված գրավոր հայացք, գիտականորեն հիմնավորված ամփոփ տեսակետ հայ ժողովրդի ազատագրության ուղիների մասին: «Պրոլետարիատի» շարունակությունը եղավ «Պրոլետարիատի կռիվը», իսկ 1906 թ. մարտին հնչեց «Բանվորի ձայնը», որն ազգային սահմանափակության, հետադիմության դեմ ծառացավ իր անկեղծ ու պարզ բանվորական խոսքով: «Բանվորի ձայնը» մերկացնում էր դաշնակցության այն կեղծիքը, թե բանվորությունն իր հովանավորության տակ է, և ինքն է բանվորական դատի պաշտպանը: Մերժելով դաշնակցությունը՝ նա միաժամանակ ցույց էր տալիս, որ համեմատաբար փոքրաթիվ հայ բանվորությունն ազդեցիկ ուժ է և կոչված է վճռական դեր խաղալու սոցիալիստական հեղափոխության համար մղվող պայքարում: Չմոռանանք, որ առաջավոր հայ պրոլետարիատին իր շահերի բերումով կորավից էր չքավոր և աղքատ, մեր իրականության մեջ ստվարաթիվ գյուղացիությունը: Հայ ազգի մեծամասնությունը եղել է աղքատ, ընչազուրկ, մի ժամանակ նաև՝ անօթևան, իսկ այդ կանգվածների շահերը համընկնում էին պրոլետարիատի ազատագրական տենչերին: Նրանց խորապես հուզում և ուրախացնում էր Ռուսաստանի պրոլետարիատի, Բաքվի, Թիֆլիսի, Ալավերդու և Ղափանի բանվորների հակցարական, հակաբուրժուական կռիվը:

Վ. Ի. Լենինը հարցերը լուծում էր ստեղծագործորեն և իր համախոհներից պահանջում՝ չանտեսելով զարգացման ընդհանուր օրինաչափությունները, գերի չդառնալ շաբլոնին: Հայաստանի և կովկասահայ իրականության նկատմամբ այդպիսի ստեղծագործական մոտեցմամբ միայն կարելի էր ճիշտ լուծել հայ ժողովրդի և՛ ազգային, և՛ սոցիալական ազատագրության հարցերը:



«Բանվորի ձայնի» խմբագիրը Սարգիս Կասյանն էր. դեռ Բեռլինի համալսարանում սովորելիս, նա կարդացել էր Լենինի *Ի՞նչ անել*: Հարցադրման բախտորոշ պատասխանը, որ պարունակում էր Լենինի երկը, շուշեցի երիտասարդին ելակետ հանդիսացավ: Շուտով նա դարձավ հայ բոլշևիկյան ժուռնալիստիկայի և հեղափոխական հրապարակախոսության կարկառուն առաջնեկներից մեկը: 1906 թ. լույս է տեսնում բոլշևիկյան «Կայծ» թերթը. այն նախապատրաստող հայ առաջին լենինյանները դրանով հրապարակավ արտահայտում էին իրենց հավատարմությունը լենինյան տեսությանը, անվան ընտրությամբ իսկ ցույց տալով, որ հետևորդներն են «Искра»-ի գաղափարների:

«Կայծ»-ին հաջորդեցին «Նոր խոսք»-ը և «Օրեր»-ը, որոնք հայ իրականության մեջ տարածում էին լենինիզմի տեսությունը, հին ու նոր ավանդական կարծիքների ու հայացքների ոլորտում հարուցում նոր հեղաշրջում՝ հաստատելով հեղափոխական նոր կարծիքն ու աշխարհայացքը: Մյուս կողմից՝ այդ թերթերն իրենց բոլշևիկյան խոսքով հեղափոխական մարքսիստական մտքի պատմությունը հարստացնում էին հայաստանյան դեպքերի, հայկական երևույթների (թե՛ անցյալ, թե՛ ներկա) լենինյան նոր մեկնաբանությամբ: «Կայծ»-ի և հայ բոլշևիկյան մամուլի մյուս օրգանների էջերում տպագրված՝ Ստ. Շահումյանի հոդվածները, նրա *Ազգային հարցը և սոցիալ-դեմոկրատիան* խոշոր նվաճում էին հեղափոխական տեսության մարզում:

Ժամանակի անդրկովկասյան դեպքերի սպանդարյանական վերլուծությունը կոնկրետ իրադրության նկատմամբ լենինյան ուսմունքի ստեղծագործական կիրառման հիանալի օրինակ է: Նույն թերթի էջերում, համեմատելով ազգայինն ու միջազգայինը՝ Ս. Կասյանը ցույց էր տալիս «ազգայնականի» հակաբանվորական էությունն ու վնասակարությունը: Ուսումնասիրելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի երկերը (նախքան դրանց հայերենացումը)՝ Ս. Կասյանը մարքսյան մտքերը ո՛չ միայն ստեղծագործորեն լուսաբանում էր հայ հասարակայնությանը, այլև դրանք փրկում դաշնակցական և սպեցիֆիկյան աղավաղումներից, ցույց տալիս այդ աղավաղումների սոցիալ-քաղաքական, իմացաբանական արմատները:

Առաջին հայ լենինյանները մարքսիզմը պրոպագանդում էին ստեղծագործաբար, ելնելով կոնկրետ իրադրությունից, սոցիալական ուժերի փոխհարաբերությունների վիճակից: Իլյիչի ուսմունքի լավագույն պրոպագանդան բոլշևիկյան կազմակերպությունների օրավուր ծավալվող գործունեությունն էր, բոլշևիզմի դրոշի ներքո աշխատավորական լայն խավերի մղած պայքարը ցարիզմի ու բուրժուազիայի, ամեն տեսակ օպորտունիստների, նացիոնալիստների դեմ:

Լենինիզմի ազդեցությունը կյանքում արտահայտվում էր նաև արվեստագիտության և գրականության ասպարեզում: Մեր դարի առաջին երկու տասնամյակներում սկզբնավորված հայ պրոլետարական պոեզիան անմիջականորեն ծառայում էր աշխատավորների ազատագրման վեհ գործի հաղթանակի կոփմանը: Այդ առումով խոշոր դեր խաղաց գաղափարայնությամբ հագեցած Հակոբ Հակոբյանի պոեզիան. պրոլետարական պոեզիան իր զարգացման բարձրագույն փուլում, հանձին Չարենցի, գտավ իր մեծ մարմնավորողին:

Լայն էր հայ իրականության մեջ մարքս-լենինյան գաղափարների ազդեցության ոլորտը: Դա պայմանավորված էր ո՛չ միայն պրոպագանդիստների, գրողների գրավոր, այլև կազմակերպիչների բանավոր խոսքով, նրանց ամենօրյա բացատրական աշխատանքով: Թեև 1907 թ., «Օրեր»-ի փակումից հետո,

երկար ժամանակ հայերեն բոլշևիկյան թերթ լույս չէր տեսնում, բայց այդ ժամանակամիջոցում Հայաստանում ապրում ու գործում էին բոլշևիկներ, Հայաստան եկան Լենինի բանակին պինվորագրված հեղափոխական շատ գործիչներ: 1907 թ. Հայաստան է եկել Բ. Կնունյանցը, 1911-ին՝ արտասահմանից Երևան է վերադարձել Արշավիր Մելիքյանը, 1907—1914 թթ. տարբեր ժամանակներում, Հայաստանում եղել են՝ Ս. Կասյանը, Բ. Բորյանը, Աս. Կախոյանը, Գ. Սաղաթյանը. այդ նույն ժամանակամիջոցում այստեղ հեղափոխական գործունեություն են ծավալել Մ. Միրաքյանը, Հ. Սարուխանյանը, Բ. Ղարիբջանյանը, Գ. Աթարբեկյանը և շատ ուրիշներ: Մշտապես վառ պահելով լենինիզմի ջահը՝ նրանք անվեհեր պայքարում էին այն գաղափարների դեմ, որոնք մթագնում էին աշխատավորների դասակարգային գիտակցությունը, շեղում նրանց հեղափոխական շարժման մայրուղուց:

Տարբեր կեռմաններով հայ իրականության մեջ էին թափանցում Լենինին անձնապես ծանոթ, նրա հետ նամակագրական կապ ունեցող այն բոլշևիկների նամակներն ու փորձը, որոնք այդ տարիներին, որպես քաղաքական վտարանդիներ, ապրում էին արտասահմանում (Ալ. Բեկզադյանը, Վլադ. Կասպարյանցը և ուրիշներ): Կասպարյանցը Բեռլինում կատարում էր Իլյիչի և Նադեժդա Կրուպսկայայի կուսակցական կարևոր հանձնարարությունները, որ տրվում էին նրան Կրակովից և Պորոնինից, ապա 1914 թ. սեպտեմբերից հետո գրեթե ամեն օր նա հանդիպում էր Լենինին շվեյցարական Բեռն քաղաքում, ուր բնակություն էր հաստատել այդ ժամանակ:

Ինչ խոսք, այդ տարիներին հայ ժողովրդի լայն խավերին չէին կարող հասնել Լենինի գործի պաշտպանության համար նրա հայ պինակիցների մղած պայքարի բոլոր մանրամասները: 1912 թ. նոյեմբերին Իլյիչի հանձնարարությամբ Ալ. Բեկզադյանը մասնակցում է II ինտերնացիոնալի Բազելի կոնգրեսին և մյուս բոլշևիկ-պատգամավորների հետ պաշտպանում սպառնացող պատերազմի նկատմամբ Լենինի դիրքորոշումը. 1913 թ., դարձյալ Լենինի հանձնարարությամբ, գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության համագումարում նա պայքարում էր հանուն հեղափոխական տեսության անաղարտության:

Երբեք չեն մոռացվի Իլյիչի նկատմամբ Կամոյի անսահման սերն ու նվիրվածությունը: Կամոյի՝ այդ անվարան գաղափարականի ուժը լենինյան ուսմունքի նկատմամբ խոր հավատարմությունն է, նրա գաղափարական համոզվածությունը, սոցիալիզմի հաղթանակի նկատմամբ հավատը:

Պայքարի պրոցեսում ստվարանում էին լենինիզմի ջահակիրների շարքերը Հայաստանում: 1915 թ., երբ հրապարակ իջավ «Պայքար» թերթը, նրա շուրջը համախմբվեց հայ բոլշևիկ լրագրողների մի ստվար բազմություն. նրանց մեջ էին՝ Բ. Բորյանը, Ա. Կարինյանը, Հ. Կամարին, Պ. Մնացականյանը և շատ ուրիշներ: Իսկ երբ 1917 թ. Ալեքսանդրապոլում լույս տեսավ Հայաստանում հրատարակվող առաջին հայերեն բոլշևիկյան թերթը՝ «Նոր կյանքը», նրա էջերում հանդես եկան քաղաքում գործող բոլշևիկներ՝ Բ. Ղարիբջանյանը, Գ. Հայկունին, Գ. Հանեսօղլյանը և ուրիշներ:

1917 թ. օգոստոսից ՌՍԴԲԿ Շուշիի կազմակերպությունը հրապարակում է «Նեցուկ» բոլշևիկյան թերթը՝ Աշոտ Հովհաննիսյանի խմբագրությամբ, որի շուրջն են համախմբվում տեղի ականավոր բոլշևիկ գործիչները: Թերթը պաշտպանում էր բանվորության ու սեփականազուրկ գյուղացիության շահերը, նպաստում ճնշված խավերի դասակարգային գիտակցության կարգացմանը, կոչ անում աշխատավորներին՝ ընթանալու Սովետական Ռուսաստանի հեղափոխական ճանապարհով:



1917—1918 թթ. տարբեր վայրերում լույս տեսնող բոլշևիկյան մամուլի էջերում լենինիզմի դիրքերի ջերմ պաշտպանությամբ հանդես էին գալիս Ա. Մռավյանը, Ռ. Քաթանյանը, Ս. Ալավերդյանը, Ս. Հովսեփյանը, Ա. Ամիրյանը, ինչպես նաև Ս. Խանոյանը, Ա. Խումարյանը և ստվարաթիվ ուրիշ հայ լենինյաններ: Հայ մեծ քնարերգու Վ. Տերյանն առաջինը թարգմանեց Լենինի *Պետություն և հեղափոխություն* երկը՝ գրեց *Ի՞նչ է ասում Լենինը գյուղացիներին* բրոշյուրը, որում պարզաբանում էր Վլադիմիր Իլյիչի ապստամբ ուսմունքի էությունը:

Լենինիզմի ջահակիրները Հայաստանում 90-ական թվականների սկզբից սկսած, մոտ երկու տասնամյակ շարունակ, տեսական ծավալուն պայքար մղեցին լենինիզմի հակառակորդների դեմ: Ընդգծելով, որ հայ ժողովրդի ազատագրական պայքարի առաջատար ուժը բանվոր դասակարգն է, իսկ չքավոր գյուղացիության լայն զանգվածները կոչված են այդ պայքարում աջակցելու նրան, մարքսիստ-լենինյանները պարզաբանում էին, որ հայ *առաջավոր* մտավորականության հայրենասիրական ցանկությունները կարող են իրականանալ միայն բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի հաղթանակով:

Հայ լենինյանները ճիշտ բնութագրեցին մեր իրականության մեջ գործող բուրժուական ու մանրբուրժուական կուսակցություններին, ցույց տվին նրանց առաջադրած միջոցների սխալականությունն ու վնասակարությունը և աշխատավոր ժողովրդի ուժերը հանեցին նրանց դեմ:

Դաշնակցականների տիրապետության դեմ մղված գաղափարական պայքարում առանձնահատուկ տեղ է գրավում Ս. Ատենյանի (Ս. Կասյան) *Ո՞ւր է ելքը* պատմական մեծարժեք երկը, որում լենինյան դիտակետից, գիտական խորությամբ վերլուծված է Հայաստանի և հայ ժողովրդի վիճակն իր կյանքի ամենածանր, ճակատագրական պահին: Գիրքը ցույց է տալիս ճիշտ ելքը— հեղափոխական պայքարի միջոցով սովետական իշխանության հաստատումը Հայաստանում:

Պայքարելով դաշնակցականների և օտարերկրյա իմպերիալիստների տիրապետության դեմ, հայ լենինյաններն առաջ քաշեցին «Սովետական Հայաստան» լոզունգը և նպատակահարմար գտան՝ մնալով Ռուսաստանի կոմունիստական կուսակցության անբաժան ջոկատներից մեկը, կազմակերպորեն ձևավորվել, որպես Հայաստանի կոմունիստական կուսակցություն: «Սովետական Հայաստան» լոզունգը դարձավ պայքարի գլխավոր նշանաբանը, և ոտքի հանեց ժողովրդի բոլոր կենսունակ, առաջադեմ ուժերին:

Սովետական իշխանության համար մղվող պայքարը (1917—1920 թթ.) իրական փաստ դարձրեց զանգվածային հեղափոխական շարժումը և նոր սերնդից առաջ քաշեց գաղափարապես, տեսականորեն զինված ու հեղափոխական ստեղծագործական աշխատանքի ունակ բազմաթիվ մարդիկ: 1917 թ. ապրիլին Թիֆլիսում աշակերտական և ուսանողական տարիքի մի խումբ երիտասարդներ հիմնադրեցին «Նոր սերունդ» թերթը, որը պրոպագանդում էր հեղափոխական գաղափարներ, քարոզում պրոլետարական ինտերնացիոնալիզմ, հայ երիտասարդներին կոչ անում պայքարել հանուն սոցիալիստական հեղափոխության հաղթանակի: Այդ թերթի ապրիլյան համարներից մեկում տասնվեցամյա Աղասի Խանջյանը մի սուր հոդվածով հանդես եկավ դաշնակ-

ցության դեմ: Նա բացեիբաց մերկացրեց դաշնակցության կարտուղի գործողությունները, այդ կուսակցության գործիչներին մեղադրեց խաբեության, երկերեսանիության մեջ, նրանց անվանեց մոլի ազգայնականներ և հպարտորեն հայտարարեց՝ ուրախ է, որ Երևանում և Հայաստանում կան շատ երիտասարդներ, որ հասկանում են այդ բոլորը և չեն գնում դաշնակցության հետևից: Օգոստոսին նույնպիսի հոդված գրեց տասնյոթամյա Ա. Բուդաղյանը:

1919 թ. մայիսին Երևանում լույս տեսավ առաջին հայերեն կոմերիտական թերթը՝ «Սպարտակը», որն ամբողջովին ուղղված էր դաշնակցականների տիրապետության դեմ: Երևանում և Հայաստանի մի շարք վայրերում ստեղծված կոմերիտական «Սպարտակ» կազմակերպությունները պաշտպանում էին Վ. Ի. Լենինի գլխավորած սովետական կառավարությունը և լենինիզմի դիրքերից քննադատում դաշնակցության կործանարար քաղաքականությունը: Երևանի «Սպարտակ» կազմակերպության ձևավորման գործում մեծ դեր խաղաց և երկար ժամանակ նրա գաղափարական ղեկավարը հանդիսացավ ականավոր մարքսիստ-հրապարակախոս Արշավիր Մելիքյանը:

Լենինիզմի լույսով հեղափոխվել էին երիտասարդ սերնդի մտքերն ու զգացմունքները: Քսանամյա Ղուկաս Ղուկասյանը, նրա ընկերները գրում, դժվարությամբ տպագրում ու տարածում էին թռուցիկներ՝ դրվատելով լենինյան կուսակցության արդարացի քաղաքականությունը, կոչ անելով օր առաջ տապալել դաշնակցության տիրապետությունը, երկրից դուրս վռնդել օտարերկրյա նվաճողներին:

Նետվելով հեղափոխության կրակների մեջ՝ լենինիզմի գաղափարների ջահակիրներ դարձան և հայ ժողովրդի բազմաթիվ դուստրերը: Համառուսաստանյան պրոլետարական շարժման մեջ փայլեցին Լենինի բանակին պինվորագրված այնպիսի պայծառ անուններ, ինչպես՝ Լուսիկ Լիսինյանը, Ռոզա Կասպարովան, Փառանձեմ Կնունյանցը, Զավահիր Տեր-Պետրոսյանցը, Շուշանիկ Մանուչարյանցը, Ելենա Բեկզադյանը, Զինաիդա և Եվգենյա Կասպարյանցները, Վարդուշ Տարախչյանը, Ֆլորա Վարդանյանը, Սերիկ Դավթյանը և ուրիշներ:

Ժողովրդին մերված, նրա վշտով ու տառապանքով ապրող հայ կոմունիստները ռուսական հեղափոխությունը համարում էին ո՛չ միայն հայ պրոլետարիատի ազատագրության, այլև ողջ ժողովրդի ֆիզիկական գոյության փրկության, ազգային ազատագրության, պետական վերածննդի միակ հուսալի ուղին: Հեղափոխության միջոցով իր ժողովրդի փրկության հույսին փարած՝ մարքս-լենինյան գաղափարներին պինվորագրված Վահան Տերյանը, հայ ժողովրդի կյանքի ճակատագրական պահին գոչում է՝

*Զարդեցե՛ք անդուլ, անգութ, անխնա,*
*Ջնջեցեք աշխարհն ապական ու հին,*
. . . . . . . . . .
*Եվ կործանեցեք բանտերը վերջին,*
*Փշրեցեք վերջին շղթաները պիրկ,*
*Որ կաշկանդել են մեր միտքն ու հոգին,*
*Եվ խորտակեցեք աշխարհն այս զազիր...*

Ու թողնելով մենության խավար կնդանը՝ նա գալիս է լսելու իր ժողովրդին, տեսնելու հզորազոր շարքերը, և դառնալու նրա կոչնակը. «կանչեմ ձեզ, ճչամ՝ եղբայրնե՛ր, ելե՛ք...»: Նա չի վախենում «տանկերով», դաշույններով իր երկրի դեմ եկող թշնամուց. վերածնված մի ողջ ժողովրդի հաղթանակի հավատն է արտահայտել բանաստեղծն այս տողերում.

*Մեր կրակի դեմ՝ անզոր են,*
*Մեր դրոշի դեմ՝ կխորտակվեն.*
*Մենք մութ աշխարհում՝ ջահ ենք,*
*Մենք տանջված երկրին՝ դրոշ:*

Որտեղի՞ց այդ ուժը, հաղթանակի անսասան հավատը: Բրյուսովին նվիրված բանաստեղծության միջոցով նա ողջ ռուս ժողովրդին ուղղելով իր խոսքը՝ նրան համարում է փրկության ու լույսի ավետաբեր:

Շատ հին է հայ առաջավոր մտածողների՝ ռուսական ուժին ապավինելու, ազատագրական մաքառումներում նրան կորավիգ ընտրելու միտումը: Ժողովրդի պատմության փորձն էր նրանց հանգեցրել այդ ճիշտ ճանապարհին: Հայ լենինյանները, հետևողականորեն հավատարիմ մնալով Լենինի գործին, չէին շեղվում ազատության երդվյալ պինվոր Մ. Նալբանդյանի և մեծ լուսավորիչ Խ. Աբովյանի մատնանշած ելքից: Ընթանալով լենինյան բանակի շարքերում, հայ ժողովրդի կոմունիստ մարտիկները կարողացան վարպետորեն զուգակցել հայ ազգի սոցիալական և ազգային-ազատագրական ձգտումները և այդպիսով ապահովել նրա գալիք վերածնունդը:

Հայաստանում մարքս-լենինյան ուսմունքի տարածողներն ու կիրառողները ո՛չ միայն ինտերնացիոնալիստական ոգի ունեին, այլև ինտերնացիոնալիստական կազմ. այսպես՝ 1901 թ. Երևանում առաջին սոցիալ-դեմոկրատական խմբակի նախաձեռնողը եղավ վրաց ժողովրդի զավակ Շամշե Լեժավան: 1905—1907 թթ. հեղափոխությունից առաջ և հեղափոխության տարիներին Երևանի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության ղեկավարն էր հնագույն մարքսիստ-լենինյան Գեորգի Սոկոլովսկին: Նա հիանալի խոսում էր հայերեն. քաղաքի աշխատավորները սիրով նրան կոչում էին «Մեր Գևորգ»: 1906 թ., որպես Երևանի կազմակերպության պատգամավոր, նա մասնակցում է ՌՍԴԲԿ IV համագումարին և այնտեղ անձամբ հանդիպում ու զրուցում Իլյիչի հետ. վերադառնալուց հետո բանվորներին պատմում է Լենինի մասին, համախմբում նրանց լենինյան դրոշի ներքո: Նույն տարիներին Երևանի Սարաջովի անվան գործարանի սոցիալ-դեմոկրատական բջջի քարտուղարը ռուս բանվոր Կիրիլն էր. որպես ՌՍԴԲԿ Երևանի կոմիտեի անդամ, նա ջերմորեն պաշտպանում էր բանվորների հեղափոխական պահանջները:

1917 թ. Ալեքսանդրապոլում սոցիալիստական հեղափոխության լենինյան կուրսն իրականացնող ականավոր բոլշևիկներից էր Պյոտր Արվելաձեն: Ականավոր հին բոլշևիկ Բորիս Վասիլևիչ Լեգրանը 1920 թ. նոյեմբերից առաջ, որպես Ռուսաստանի լիազոր ներկայացուցիչ, գալիս է Հայաստան՝ կորավիգ լինելու նրան դժվար կացության ժամին, կանխելու թուրքական արշավանքը, պայմաններ ստեղծելու, որ հայ ժողովուրդն ազատ ապրի, ստեղծագործի:

Հայաստանի աշխատավորները երբեք չեն մոռանա պանծալի լենինյան Գ. Կ. Օրջոնիկիձեի ջերմ սերը: Որպես Կովկասում կուսակցության լենինյան Կենտկոմի ներկայացուցիչ, 1920 թ. ամռանն ու աշնանը նա ուշի-ուշով հետևում էր Հայաստանի իրադարձություններին, Լենինին հայտնում հայ ժողովրդի ծանր վիճակի մասին, միջոցներ մշակում Հայաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի արագացման համար: Հայաստանի բոլշևիկները հանձին նրա տեսնում էին Վ. Ի. Լենինի գործի հավատարիմ պինվորին և ականավոր գործչին:

Հայաստանի բանվորներն ու գյուղացիները, առաջնորդվելով լենինյան գաղափարներով, պայքարում էին հին կարգերի տապալման համար, հանուն իրենց հայրենի օջախում նոր, լուսավոր կյանքի կառուցման: Այդ արշալույսը Հայաստանում ծագեց 1920 թ. նոյեմբերի 29-ին, ծագեց մեծ պայքարի ու կոհերի, արյան գնով: 1920 թ. բռնկված մայիսյան ապստամբությունը դրսևորեց ժողովրդի անկասելի ձգտումը՝ միավորվելու Սովետական Ռուսաստանին, ընթանալու Լենինի կանխագծած ուղիով:

Հանուն հայ ժողովրդի սովետական վաղվա, Լենինի անունը շրթներին, իրենց գործի արդարացիության ու հաղթական վախճանի անսասան հավատով, հերոսաբար զոհվեցին կուսակցության շատ ականավոր գործիչներ՝ Բ. Ղարիբջանյանը, Ստ. Ալավերդյանը, Ղ. Ղուկասյանը, Հ. Սարուխանյանը, Ս. Մուսայելյանը, Արշ. Փանյանը, Ե. Սևյանը և ուրիշ անձնվեր հեղափոխականներ:

Երբ մահից ու ավերից փրկված հայ ժողովուրդն սկսեց իր նոր կյանքը, Լենինը մշակեց Անդրկովկասում, ինչպես և Հայաստանում կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ճանապարհը, ցույց տվեց երկրամասում սոցիալիստական վերափոխման հիմնական ուղիները:

Հայաստանի հեղկոմի անդամներն ու կուսակցական ղեկավար գործիչները՝ Ս. Կասյանը, Ալ. Բեկզադյանը, Ս. Տեր-Գաբրիելյանը, Ա. Մռավյանը, Ի. Դովլաթյանը, Ա Նուրիջանյանը, Գ. Ալիխանյանը, Ս. Լուկաշինը, Ա. Հովհաննիսյանը, Հ. Կոստանյանը և մյուսներն ամբողջ եռանդով նվիրվեցին Լենինի խորհուրդների կենսագործմանը:

1921 թ. ապրիլին, հանրապետության ժողկոմխորհի նախագահ Ալ. Մյասնիկյանը, այդ պատասխանատու պաշտոնն ստանձնելուց առաջ, Մոսկվայում հանդիպեց ու զրուցեց Վ. Ի. Լենինի հետ, լսեց նրա պատգամները և մեծ ավանդ մուծեց սովետահայ պետականության ամրապնդման, Հայաստանում սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծման, նոր կուլտուրայի, մարդկանց միջև նոր հարաբերությունների ձևավորման ու զարգացման գործում:

Այսպիսով, լենինյան հայաստանյան բանակի առաջամարտիկներին վիճակվեց հաջողությամբ լծորդելու սոցիալական և ազգային-ազատագրական շարժումների գաղափարները և դնելու հարազատ ժողովրդի ստեղծագործական վերածննդի կայուն հիմքերը, սովետական բազմազգ ժողովուրդների հետ համախմբվելու լենինյան ազատարար դրոշի ներքո:

Աննախընթաց վերելքի մայրուղիներում լենինիզմի պայծառ ջահն է լուսավորում նոր կյանքի կառուցման մեծ գործը Սովետական Հայաստանում:





**Վ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**

# ՆՈՐՈԳ ՀԱՅՐԵՆԻՔ

## ՃԱԿԱՏԱԳԻՐԸ

Ասում են, թե Արևմուտքում կան գիտնականներ, որոնք փորձում են ստեղծել մի այնպիսի լուսանկարչական ժապավեն ու ապարատ, որոնք տիեզերական ինչ-որ հեռավորության վրա կարողանան վերարտադրել մեր մոլորակի անցյալի անցուդարձը, պատկերները: Նրանք պնդում են. եթե աշխարհի վրա ամեն ինչ նյութական է, ուրեմն նյութական է և պատկերի արտացոլումը, որը կարող է գոյություն ունենալ տվյալ առարկայի վերացումից հետո էլ: Եվ, ահա, պատկերացրեք, որ կա այդ հրաշք-ապարատը, այն լուսանկարել է մեր մոլորակի պատկերն այնպես, ինչպես այն եղել է կես դար առաջ: Այդ լուսանկարի վրա, անպատճառ, տեղ կգտնի և մեր փոքր Հայաստանը՝ իր լեռներով, ձորերով, գյուղերով ու... բզկտված, սովալլուկ մարդկանցով: Ահա Երևանը՝ կավածեփ խրճիթների երդիկներից ելնող ծխի, փոշու ու ցեխի մեջ կորած:

Բայց, ներեցեք, դեռ չկա այդ ապարատը (իսկ, ընդհանրապես, դրա հնարավորության հարցը թողնենք գիտնականների տնօրինությանը). բավարարվենք ականատեսների պատմածով ու հուշերով: Նրանք քիչ բան չեն ասում: Հիշենք, թե հայ մեծ կոմպոզիտոր Ալեքսանդր Սպենդիարյանն ինչպես է նկարագրում իր առաջին տպավորությունը Երևանից: Ձիասայլակին նստած, ցեխոտ ու ջրափոսերով ծածկված ճանապարհով նա կայարանից եկել է քաղաք: Ամենուր վաճառասեղաններ՝ դեղձի, խաղողի, պոմիդորի կույտերով: Խայտաբղետ հասարակությունը, փոշին ու ցեխը նրան զարմանք են պատճառել:

Ես մտովի շարունակում եմ նրա հուշերը և նկարագրում Երևանը: Ահա Ղանթարը՝ շրջապատված ուղտերի ու գրաստների քարավաններով. ամենուր ծալապատիկ վաճառականներ են, թափառաշրջիկներ. ծոր է տալիս արևելյան մեղեդին, ու տարածվել է անանուխի, խորովածի սուր հոտը: Երեկոյան, երբ փակվում են փոքրիկ չայխանաներն ու խաղաղվում է եռուզեռը, որբերի ու գաղթականների խմբերն իրենց բաժինն են հավաքում շուկայի աղբակույտերից ու, փաթաթվելով անկողին-ցնցոտիների մեջ, նիրհում Ղանթարի սև պարսպի կամարակապ խցերում: Օրը մեռնում է...

Նորից հառնում են հուշերս: Այս ամենը ես չեմ տեսել Երևանում (չէի կարող), տեսել եմ վաթսունական թվականներին, աֆրիկյան մայր ցամաքում: Բայց որքա՜ն նմանություն կա իմ տեսածի ու քսանական թվականների Երևանի միջև: Դրանք մարդկային ճակատագրերի ընդհանրության, նմանության, այն բանի վկայություններն են, որ աշխարհի բոլոր մարդիկ անցնում են նույն ճանապարհը, տեսնում նույն տառապանքն ու զրկանքը, և նույն ուժը կարող է նրանց բերել այն, ինչին հասավ հայ ժողովուրդը 1920 թվականին:

Նորից հուշերին դիմենք. ունկնդրենք կեսդարյա անցյալից եկող ճշմարտության ձայնին:

«...Հայաստանի տնտեսական կյանքը ո՛չ միայն քայքայվել ու կործանվել է, այլ փորձեր էլ չեն արվում վերականգնելու, վերաշինելու այդ կյանքը... Յուրաքանչյուր փորձ՝ անելու այն, ինչ հնարավոր է՝ նախապես դատապարտված է անհաջողության... Մեր բանվորությունը միջին թվով ստանում է 500—600 ռուբլի, իսկ գավառում աշխատավարձը մարդկային գոյության ծաղրանքի չափ չնչին է՝ 8—10 ռուբլի օրական, այն էլ 10—12 ժամվա աշխատանքի համար... Եվ այդ չնչին, ողորմելի աշխատավարձով բանվորը, ընտանիքատեր, բայց ընչազուրկ բանվորը պետք է ապրի ներկա պայմաններում, երբ միայն հացի գրվանքան արժե 15—18 ռուբլի: Դա ոչ թե վարձ է, որով բանվորը պետք է ապրի, այլ մի միջոց, որ նրա օրգանիզմի քայքայման՝ մահվան պրոցեսը կատարվի դանդաղ: Մեռնում է ո՛չ միայն գյուղացին, այլև բանվորը. մեռնում է իսկական ժողովուրդը: Սրից ազատվածը մեռնում է սովից: Որքա՜ն կեղծ է մարդկանց մտահոգությունը, որ ուզում են փրկել ժողովուրդը սրի մահացու հարվածներից, որպեսզի հանձնեն նրան սովի տանջալից մահին...»:

Այս տողերի հեղինակը բոլշևիկ Սարգիս Կասյանն է. նա նկարագրում է Հայաստանը 1919 թվականին: Այսպիսին էր ժողովրդի ճակատագիրը— փրկված սրից, նա մեռնում էր սովից, անապահովությունից ու համաճարակից:

Ո՞րն էր ելքը...

Պայքարը... Եվ ժողովուրդը ձեռնոց նետեց իր իսկ ճակատագրին ու հաղթեց ինքն իրեն: Դա զարթոնքի, ինքնաորոշման, ինքնաճանաչման ու վերածննդի հաղթանակն էր:

Ժողովուրդն աշխարհին մեկնեց իր նոր դրոշը— լենինիզմի դրոշը...

## ԴՐՈՇԸ

Այն անցել է պայքարի ու հաղթանակների փառավոր ճանապարհ ու աշխարհում տարածել իր խաղաղ, ստեղծագործ ծփանքը:

Այդ պայքարն սկսվեց կես դար առաջ: Ժողովրդի աշխատավոր զավակները, երբ տեսան ջարդ ու ավեր, տեսան իրենց երկիրը՝ կանգնած կործանման եզրին, իրենց ճակատագիրը կապեցին լենինիզմի հետ ու լենինիզմը գրեցին իրենց դրոշի վրա: Եղբայրության, ազատության ու երջանկության խորհրդանիշն է այն: 1920 թ. նոյեմբերի 29-ն էր այդ, որ ծնվել, սնվել, աճել ու հասունացել էր տարիների ընթացքում:

Դա հեղափոխություն էր ու նոր արշալույս:

Իվանովոյի մարզի տեքստիլագործները Ալեքսանդրապոլ (Լենինական) ուղարկեցին 30 հաստոց և 2170 իլիկ՝ որպես նվեր: Այդ հաստոցները հիմք դրեցին մի հսկա կոմբինատի: Անվախ օդաչուները, հաղթահարելով դժվարությունները, Ռուսաստանից ինքնաթիռով 600 հազար ռուբլի ոսկի բերեցին



Երևան՝ Պարսկաստանից հաց գնելու, ժողովրդին սովից փրկելու համար: Հետո Մոսկվան ու Երևանը դաշն կապեցին առմիշտ:

Կոտայքի շրջանի Գյամրեզ գյուղի երիտասարդները 1923 թվականին իրենց ձեռքով, առանց տեխնիկայի ու մեքենաների, տասնյակ կիլոմետրեր խրամուղի փորեցին, խմելու ջուր բերելով ծարաված գյուղին. «Հունիսի 11-ի լուսաբացին ջուրը իր ավետաբեր ձայնով հայտնեց գյուղացիությանը իր գալուստի մասին: Գյուղացիների անհագին բազմությունը ուռաներով, կեցցե՛ կոմերիտմիությունը, կեցցե՛ մեր երիտասարդությունը աղաղակներով դիմավորեց կենսաբեր ջրին»:

Գյուղը, որ դարեր շարունակ կար ու ծարավ էր, գյուղը, որ լեռնային աղբյուրների ու առվակների հայրենիքում կարոտ էր մի կաթիլ ջրի, հաղթեց ինքն իրեն ու վերջ տվեց դարավոր ծարավին: Դա սոսկ ջուր չէր: Մարդիկ ջրի հետ զգացին նոր կյանքի ուժը: Այդ ջուրը 1926 թվականին լույսի վերածվեց. Հայաստանի կենաց սիրտն սկսեց տրոփել պետական առաջին հիդրոկայանի՝ Երևանի ՀէԿ-ի էլեկտրաէներգիայով: Երևանը, մյուս քաղաքներն ու գյուղերը լույս ստացան:

Սովետական Ռուսաստանը նորից ոսկի տվեց հանրապետությանը, տվեց մեքենաներ ու տրակտորներ: Ուկրաինան ուղարկեց ցորեն, Ադրբեջանը՝ նավթ: Բայց դա սոսկ սերմացու և վառելիք, հերկած մի ակոս չէր: Հայաստանի աշխատավորները տեսան եղբայրության ուժը: Դա նրանց նոր դրոշն էր, դրոշ, որի վրա կար պետականության կնիքը, որը համախմբեց, հավաքական մի ուժի վերածեց դարեր շարունակ պետականություն չունեցող ու օրենքի պաշտպանությունից զուրկ մի ժողովրդի: Այդ ուժը պետք է հրաշքներ գործեր ու գործեց:

Եվ այդ ամենի արդյունքն այն եղավ, որ կես դարի ընթացքում մեր վերածնված հայրենիքը դարձավ գիտության ու տեխնիկայի առաջնակարգ երկիր, որն արտահանում է հազարավոր ժամանակակից մեքենաներ:

Այցելելով Դամասկոսի տոնավաճառը, հիանալով հայկական հանրապետության տաղավարով, ուր հպարտ ծածանվում էր մեր դրոշը, հալեպահայ բանվոր Հովսեփ Դեղեյանը գրել է. «Բանվորի արդար հպարտությամբ ես տեսա մեր դրոշը, որ կծածաներ Դամասկոսի տոնավաճառին վրա... Դա մեր ժողովրդի հաղթականության ու նորոգ կյանքի խորհրդանիշն էր»:

## ԾՈՒԽԸ

Օջախի ծուխը մարդն է, իսկ մարդը չի կարող ապրել առանց ծխի: Մեր փոքրիկ լեռնաշխարհի երդիկները ծխացին, ծխացին առաջին գործարաններն ու հանքահորերը: Դա կյանքի ծուխն էր: Ազատագրված, նոր գաղափարներով զինված, սոցիալիստական եղբայրությամբ զոդված ժողովուրդն արձակեց իր պոտենցիալ հնարավորությունների սանձերը, սխրանքներ գործեցին կուտակված եռանդն ու հայրենասիրությունը:

Ես նայում եմ մի հին, խունացած լուսանկար: Երևանյան առաջին շաբաթօրյակի՝ Քանաքեռի ՀէԿ-ի մասնակիցներն են: Ես ծանոթանում եմ մեր հայրերի սերնդին: Բահով ու քլունգով, մոռացած հանգիստ ու ապահովություն, անձնուրացաբար քարը դնում են քարին, կյանք տալիս Երևանի կաուչուկի գործարանին, Կիրովականի քիմիական կոմբինատին: Քարը քարին վեր են բարձրանում առաջին հնգամյակի կառույցները: Այնտեղ՝ վերևում, օդն ալիքվում է կառուցման ծխով:

Անսասան հավատ էր պետք, որպեսզի ստեղծվեր ամեն ինչ… ոչնչից, ոչինչի վրա:

Ծխացող ավերակներին փոխարինեցին ծխացող հսկաները: Դա հավատի հաղթանակն էր: Այդ հավատը ժողովուրդը ժառանգել էր իր լավագույն զավակներից, որոնք պայքարի ծանր օրերին մահվան դեմուդեմ՝ մնացին կանգուն, աներեր: Ժողովուրդը հիշում է իր մեծ զավակին՝ Ստեփան Շահումյանին: Մինչև դավադիր գնդակը կխոցեր նրա սիրտը, մինչև հրազենից արձակված ծուխը կմշուշեր նրա պայծառ դեմքը, աննկուն բոլշևիկը բացականչեց.

— Մենք մեռնում ենք հանուն կոմունիզմի: Կեցցե՛ կոմունիզմը:

Այդ հավատը նրան տվել էր լենինիզմը: Ու հիմա, ժառանգած այդ ուժը, ժողովուրդն աշխատում է:

Ծխում էին գյուղական դարբնոցներն ու գործարանային բաժանմունքները: Մեկը դարձավ տասը, տասը բազմապատկվեց, ու հանրապետությունը ծածկվեց արդյունաբերական ձեռնարկությունների լայն ցանցով: Քիմիան, մեքենաշինությունը, լեռնահանքային արդյունաբերությունը, տեքստիլն ու տրիկոտաժը, ճշգրիտ սարքաշինությունն ու գործիքաշինությունը դարձան բնորոշը, որոշիչը տնտեսության մեջ:

Կիրովականում մի քանի տարի առաջ նոր բնակություն հաստատած մի հայրենադարձի տվել էին քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների ցուցակը. «Ընտրեք, խնդրեմ, որտե՞ղ եք ուզում աշխատել»: Մոռացած բնտրության մասին ու, չկարողանալով թաքցնել զարմանքը, նա բացականչել էր.

— Մեղա՛, տեր աստված… Այսքան ֆաբրիկ, որ միայն Կիրովականին մեջ կա, ամբողջ Արևելքում չկա…

Չկա… Փոխարենն ինքը, Արևելքն ու շատ երկրներ ծանոթ են Կիրովականի մակնիշին: Քիմիական պարարտանյութեր է տալիս նա աշխարհին, ճշգրիտ հաստոցներ, մետաղազոդման այրիչներ, ավտոմատ սարքեր…

Լենինականի տեքստիլ կոմբինատը միլիոնավոր մետրերով գործվածք է ուղարկում մեր հայրենիքի տարբեր ծայրերը: Երևանի հայէլեկտրագործարանի մեքենաները լույս և ուրախություն են պարգևում Միության ու արտասահմանյան շատ երկրների մարդկանց:

Երկու տարի առաջ Քիշինևում պատահական մի հանդիպման ժամանակ երիտասարդ բանվոր Վանչո Ջեկալը պատմում էր, թե իր ընկերը՝ Սլավկան, ինչպիսի վառ տպավորություններով է վերադարձել Երևանի ֆրեզերային հաստոցների գործարանից: «Դա սովորական գործարան չէ,— հետագայում պատմում է Սլավկան,— դա մի կատարյալ հսկա է, որն իր արտադրանքն ուղարկում է աշխարհի բոլոր ծայրերը և որն ինձ մեծ հիացմունք պատճառեց… Երևանի ֆրեզերագործների փորձը մեզ շատ օգնեց…»:

Հսկա գործարան… Նայում ես արդյունաբերական Երևանին՝ էլեկտրամեքենաշինական, «Երազ», «Էլեկտրոն», հաստոցաշինական ու հարյուրավոր այլ գործարանների լուսավոր արտադրամասերն ու մտովի հիշում անցյալի (ոչ հեռավոր) պատկերները: Ահա Տեր-Սարգսյանների կաշեգործարանը: 10—12 ժամ մինչև ծնկները թաղված նեխաջրի մեջ, աշխատում էին հարյուրավոր ցեխոտ ու մրոտ պատանիներ: Նրանց դեմքին դրոշմված էր անորոշության ու հոգսի կնիքը: Ի՞նչ անակնկալ էր պատրաստում նրանց համար վաղվա օրը, ինչո՞վ էին ապրելու նրանք: Հյուծված, երազանքից զուրկ այդ պատանիները մեռնում էին դանդաղ:

Չմեռա՛ն…



Այդ սերունդը ոտքի կանգնեց, գտավ ինքն իրեն: Զգաց իր ուժն ու կյանք տվեց աշխարհի 75 երկրների հետ տնտեսական կապ ունեցող հանրապետության, նրա արդյունաբերությանը: Պատահական չէ, որ ամերիկացի անվանի նկարիչ Ռոքուել Քենտը Հայաստանը համարեց հրաշալիքների երկիր, իսկ ֆրանսիական Բանիո քաղաքի քաղաքագլուխը շատ պարզ շարադրեց իր հիացմունքը. միայն Կիրովականի օրինակով կարելի է համոզվել, թե ինչ կարող է անել ազատագրված ժողովուրդը:

Այդ ժողովուրդը ծնեց տեխնիկական մեծաքիվ մտավորականություն, տնտեսությունը դրեց գիտական հիմքերի վրա: Ժողովուրդը, որ սնել ու անեցրել էր նոր բանվորին ու ինժեներին, այժմ ինքը երախտապարտորեն մեծարում ու փառաբանում է նրան ու նրա աշխատանքը:

Երևանի պետական համալսարանի, պոլիտեխնիկական ինստիտուտի մի խումբ շրջանավարտների ուժերով հիմք դրվեց մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտին:

«Հրազդան», «Արագած», «Նաիրի» և այլ մակնիշի հաշվիչ մեքենաներն ստացան կյանքի ուղեգիր, իսկ ինստիտուտը՝ ծննդյան վկայական և անվանակոչվեց «Մերգելյանի ինստիտուտ»: Հետո «Մերգելյանից» բաժանվեց արտադրությունն ու դարձավ «Էլեկտրոն» գործարան: Հարահոսի վրա դրվեց հրաշք մեքենաների արտադրությունը: «Հրազդանը» սկսեց հաշվել, հիշել, մտածել: Բանվոր մարդկանց միտքն ու ձեռքը մեքենային սովորեցրին նվագել և նկարել: Ընդամենը տասը տարվա ընթացքում Հայաստանում կիբեռնետիկան ստացավ այնպիսի զարգացում, որ հարկ եղավ բացել ո՛չ միայն ֆակուլտետներ ու բաժիններ բուհերում, այլև առանձին պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարան, տեխնիկում: Միաձուլվեց, մի միասնություն դարձավ գիտնականի, բանվորի, ինժեների ու տեխնիկի աշխատանքը: Այդ աշխատանքի արդյունքը միջազգային ցուցահանդեսների դափնեկիր «Հրազդան—3»-ն էր, ինքնածրագրող և ունիվերսալ մաթեմատիկական հիանալի մեքենաների «սերունդը»:

Դա երազի իրականացումն էր, որը մի օր պետք է կյանք տար և իսկական «Երազին»: Սեփական ավտոգործարան ունենալը, ասում են՝ ինդուստրիալ բարձր զարգացման չափանիշն է: Հայաստանն ունի ինդուստրիալ այդ դեմքը, քանի որ ունի սեփական ավտոգործարան: Ռոմանտիկ, մեծ հավատ ունեցող ժողովուրդը երբեմն անհանգիստ է, շտապող: Այդպիսին էին այն մարդիկ, որոնք կյանք տվին «Երազին»: Ես բախտ եմ ունեցել տեսնելու այդ հսկա գործարանի առաջին մեքենայի ծնունդը: Դե, դա ի՞նչ գործարան էր: Դա միայն հսկա կառույց էր, բետոնե մի կմախք, որի հողե հարթակներից մեկի վրա «պճնվում, զգեստավորվում» էր առաջին «Երազը»: Եվ այժմ պետք չէ այդ մասին հուշեր պատմել ու գրել. չէ՛ որ դա ընդամենը 2—3 տարի առաջ էր: Հիմա էլ գործարանը դեռ կառուցվում է, բայց Միության շատ ճամփաներում վաղուց սլանում են մեր «Երազները»:

Ծուխն է շեն օջախի խորհրդանիշը՝ դարբնոցի, թոնրի, գործարանի ու խարույկի ծուխը: Հիմա շատ հեռվից շեն օջախի «այցեքարտն» է երևում, երբ մոտենում ես Միխանայի լեռներին: Մարմարիկ գետը դեռ չի հավաքվել ջրամբարում և խաղաղ իր երթն է շարունակում, բայց նրա ափերին արդեն ծխում են Հրազդանի ՋԷԿ-ի հսկա տուրբինները, երկինք են խոյանում լեռնաքիմիական կոմբինատի երկաթե կարկասները: Միայն կոմբինատ չէ այդ. արդյունաբերական նոր քաղաք է՝ արտադրության ծավալի իմաստով, նոր

բանավան՝ կուլտուր կենցաղային օբյեկտներով, նոր երկաթգծով, բանվորա-ինժեներական հազարավոր նոր կադրերով: Շինարարների ինտերնացիոնալ ջոկատն իր օգնության ձեռքն է մեկնել մի ժողովրդի, որը թանկ գնով է ձեռք բերել խաղաղ աշխատելու և ստեղծագործելու իր իրավունքը:

Այդ ժողովուրդը գեղեցկուհի Սևանը վերածեց լույսի, կառուցեց Սևան—Հրազդանյան ոռոգիչ-էներգետիկ կասկադը, որը քսանհինգ տարի շարունակ լույս ու էներգիա տվեց մեր երկրին ու հանդիսացավ նրա տնտեսության զարգացման հիմքը: Սևանը մեծահոգի մոր պես սնեց իր որդիներին, վերածվելով հազարավոր աղբյուրների, հերկած խոպանի, կանաչած արոտավայրերի ու այգիների: Նա լուծեց հանրապետության առաջ կանգնած բազմաթիվ պրոբլեմներ ու... ծնվեց իր՝ Սևանի վերահաստատման, գոյատևության պրոբլեմը: Մայրն ինքն արդեն օգնության կարիք ուներ, և որդիները չզլացան այն: Ծուխը կանգուն պահելու տենչով լցված՝ մարդիկ շարունակեցին հրաշքը: Նրանք եղբայր ժողովուրդների ներկայացուցիչների հետ ստորգետնյա պայքար մղեցին, որ կյանք առնի Արփա—Սևան ջրատարը, որ միշտ ծփա լեռնային ծովակը: Այնտեղ, ուր ուրարտական արքաները թողել են իրենց սեպագիր արձանագրությունները, սերունդներին պատմելով, թե՝ «Ես՝... Խալդյան աստծո մեծությամբ, կառուցեցի այս բերդը...», ծնվեց նոր օրերի հուշարձանը՝ շինարար հասարակ մարդկանց պատվին, անմահացնելով նրանց փառքը:

Դեռ ջուրը չի անցնում թունելով, ու չկա գրանիտե հուշասյունը: Բայց այն կլինի: Եվ կլինի հուշասյունը, որի վրա իրենց մակագրությունները կթողնեն Արփա—Սևանի իսկական «արքաները»:

«Ես՝ թունելագործ Հրաչիկ Ասատրյանս, իմ կամքով ու իմ խղճի թելադրանքով, եղբայրության լենինյան գաղափարներով տոգորված, կառուցեցի այս թունելը՝ ի բարօրություն բարեկամների և ի փառս մեր հայրենիքի.

Ես՝ ուկրաինացի...

Ես՝ վրացի...

Ես՝ ռուս...»:

Ու կմնա մեր հավերժ ծխացող օջախում եղբայրության այդ կոթողը՝ շինարար մարդու հավերժացման խորհրդանիշը:

## ՀՈՂԸ

Հին ժամանակներում հայ շինականն ունեցել է արևի, հողի ու ջրի պաշտամունք: Բայց հողը ոչինչ է, եթե նրա հետ եղբայրացած չէ ջուրը: Հողը՝ մարդուն երկրի հետ կապող ամենազոր միջոցը, որ այսօր նույնիսկ ճամփորդ է դարձել՝ ամփոփվելով հեռավոր երկրներից հայրենիք եկած զբոսաշրջիկի վերադարձի ճամպրուկի մեջ, հիմք է օջախի համար և՝ պատմություն:

Բայց հենց այդ հին ժամանակներում, երբ անհանգիստ էին հայոց լեռները, երբ պոռթկում էր նրանց հրե զայրույթը, հողը ծածկվեց ապառաժներով ու ստացավ քարաստան անունը. և կոփվեց, ժայռի պես ամրացավ նրա ժողովրդի կամքը, դիմադրողականությունը:

Անհրաժեշտ էր մեղմել քարոտ հողի չարությունը, մեղմել ոչ թե դարերի ընթացքում, այլ անհապաղ, շտապ: Շտապ, քանզի այն ճամփան, որ ուրիշներն անցնում էին դարերով, մենք պետք է անցնեինք մի քանի տարում, որ աշխատավոր մարդը ստանար հաց, բարեկեցիկ կյանքի միջոցներ:

Գիտեր ժողովուրդը, որ հողի բարկությունը չեն կարող մեղմել հին աղոթքները: Ջուր էր պետք: Ու մնաց ջրի պաշտամունքը նոր օրերում. սուրբ



Քասախի կողքին ծնվեց բոլշևիկ Շիր-կանալը, ծնվեցին Արզնի-Շամիրամի, Թալինի ու Արտաշատի ջրանցքները: Սկզբում ձեռքով, իսկ հետո՝ հզոր մեքենաներով վերացվեցին հողի պեպենները, ու ազատված դաշտերում բարձրացան քարակույտերը: Հողը կյանք առավ, քարակույտերը կորան ծփացող արտերի, այգիների մեջ:

Տարիներ առաջ, Ապարանի շրջանի Մուլքի գյուղի մոտ, մարդիկ մի փոքրիկ ջրանցք բացեցին և պտտեցրին տեղական «էլեկտրակայանի» անիվը. կատարյալ հրաշք թվաց այդ ամենքին: Իսկ տարիներ անց ոչ ոք չզարմացավ, երբ Քասախի ընթացքը սանձվեց մի հսկա պատնեշով, և 880 հեկտարի վրա սկսեց ծփալ արհեստական լիճը: Զարմացան, երբ մարդիկ խնամքով նոր հասցե տվին հնադարյան Թուխ-Մանուկ վանքին, այն տեղափոխելով լեռնալանջը: Ծնվեց Ապարանյան լիճը: Հողը բարեկամացավ ջրին, հողը ժպտաց մարդուն, պտղավորվեց: Անվանի գուսան Մահուբի Գևորգի հայրենիքում՝ Երնջատափում, իմացան, որ Քասախի ջրերը միայն չեն կուտակվելու կիրճում, այլ բարձրանալու են լեռները: Զարմացան, միայն հիշեցին իրենց հայրենակցի թախծոտ երգերը աստծու կողմից իրենց բաժին հանված դառը ճակատագրի մասին, հիշեցին «Արարատի լանջին քար ու քոի մեջ, աստծու աչքից հեռու կորած Ապարանի» մասին ու.. խոսքերն այս. գյուղացուն տուր ջուր, տուր տրակտոր, և նա հրաշքներ կգործի: 160 հեկտար պտղատու այգի, 1000 հեկտար արտեր, 300 հեկտար անտառ. այս ամենը լիճը կտա միայն Ապարանին, նրա ջրերը բետոնե ուղիներով կհոսեն ու կոռոգեն Աշտարակի, Էջմիածնի հողերը, կմիանան Արզնի-Շամիրամին, կթեթևացնեն Սևանի հոգսը:

Ջուրը փոխում է ո՛չ միայն հողի տեսքը. այն շենացնում է գյուղը, փոխում նրա պատկերը: Բուսաբուծության ու անասնապահության զարգացումը կերպարանափոխեց գյուղացուն: Նա այլևս իր փոքրիկ հողակտորը ցանկապատած ու իր ցավով տապակվող, երկնքի ողորմածությանն ապավինող հայ շինականը չէ: Համայնական դաշտի տերն է նա, հանրային ունեցվածքի տերը, աշխատանքային նոր հարաբերությամբ ընդհանուրի հետ դաշնագրված գյուղացին: Իր նախահայրերից ժառանգելով հայրենի հող ու շեն օջախ ունենալու երազանքը, նոր կարգերի շնորհիվ ստացավ այդ երազանքն իրականացնելու իրավունք ու հնարավորություն: Ո՞ւր են «մթնում կորած» մեր խրճիթները: Ժամանակակից քարաշեն հարմարավետ բնակարանները, կուլտուրայի տներն ու կենցաղային օջախները հիմնովին փոխեցին կյանքը: Մարդը նոր եռանդով ու նոր տեխնիկայով սկսեց հերկել հողը: Արարատյան դաշտավայրից խաղողն ու պտուղները բարձրացան վեր, լեռները՝ մինչև 2000 մետր բարձրություն:

Երբ ֆրանսահայ զբոսաշրջիկները երկու տարի առաջ ծանոթացան Թալինի շրջանի Կաթնաղբյուր գյուղի դպրոցին, նրանք չկարողացան զսպել իրենց հիացմունքը:

— Այսպիսի շենքի ֆրանսիական համալսարաններն անգամ կերազեն:

Իսկ երբ Արագածի լանջին տեսան դեղին դաշտաշերտեր ու իմացան, որ դա հացահատիկ է, ապշած բացականչեցին.

— 2500 մետրի վրա ցորե՛ն...

Այո՛: Քարից ազատված հողն էր վարձահատույց լինում մարդուն...

Իսկ արշավը քարի վրա շարունակվում էր: Իջևանցիները հազարավոր հեկտար հողեր են խլել լեռնալանջերից. այնտեղ այժմ խաղողն է ժպտում բոլորին. Մեղրու շրջանում Արաքսի հովտից ավտոմեքենաներով ու սայլերով

հող են բարձրացնում դեպի վեր՝ լերկ ժայռերը. գարունն այդ ժայռերը ծածկում է դեղձենու վարդագույն, իսկ ամառը՝ նռնենու կարմրավառ ծաղիկներով: Թալինի շրջանում հորատամուրճով ծակում են քարը, անցքի մեջ հող լցնում ու տնկում խաղողի դալար շիվը. մի քանի տարի անց այնտեղ այգի կլինի:

Փոխեց հողն իր բնավորությունը, իր կենսագրությունը: Նրա հետ նաև՝ հողի մշակը: Գյուղ մուտք գործեցին մասնագետը, գիտնականը, բժիշկը, ինժեներն ու մեխանիզատորը: Գյուղը պատրաստեց իր սեփական կադրերը: Փոխվեց մարդու վերաբերմունքը հողի նկատմամբ:

— Մի հողակտորից՝ երկու բերք...
— Բացենք մի ակոս և...
— Հեկտարները դարձնենք հարուստ...
— Հանուն մեքենայացման...

Այսպես պատասխանեց շինականը նոր կյանքին: Երկիրը կոչ ուղղեց կոլտնտեսականներին. երիտասարդությանը՝ մեքենաների ղեկի մոտ: Սկսվեց մեխանիզատորների պատրաստման մեծ գործը: Գյուղն ունեցավ մեքենայական իր պարկը, իր կադրերը: Ախուրյանի շրջանում մեխանիզատորներից վեցը դարձան Սոցիալիստական աշխատանքի հերոս:

Իսկ մի քանի տարի հետո նրանք հատուկ դասընթացներ բացեցին՝ իրենց գիտելիքներն ու փորձը երիտասարդությանը հաղորդելու համար: Համատարած մեքենայացումն ու արտադրության գիտական կազմակերպումը նոր տեղաշարժեր կատարեցին գյուղում: Այժմ ոչ ոք չի մտածում օրվա հացի մասին. այժմ կոլտնտեսականը մտածում է խոր մասնագիտացման, լրիվ զբաղվածության ու կուլտուրական մեծ շինարարության մասին: Նորը դաստիարակեց նոր հոգեբանություն, գյուղացուն դարձնելով սոցիալիստական շինարարության ակտիվ կառուցող: Հայ շինականն ստացել էր ջուր, հողը՝ ազատվել քարից ու կապանքներից: Դա մեծ հաղթանակ էր: Հեղափոխություն:

## ՄԱՐԴԸ

Երկու, իրար նման կենսագրություն: Գործարան և մարդ: Այդ կենսագրությունները լրացնում են իրար: Բաժանել չես կարող: Տարիներ առաջ, փոքրիկ ու անշուք մի «խրճիթում», հիմք դրվեց Երևանի մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գործարանին: Անհրապույր, անգույն շենքում տեղադրված ցաքուցրիվ մեքենաների վրա աշխատում էին ջահել մարդիկ: Սարգիս Թումանյանին նշանակեցին այդ «խրճիթ-գործարանի» դիրեկտոր: Կոլեկտիվը մեծ չէր, բայց նրանցից ոչ ոք չգիտեր, թե ինչ պլաններ էին մշակում այն մի խումբ մարդիկ, որոնք առանձնանում էին դիրեկտորի ոչ պակաս անշուք սենյակում ու ժամերով խորհրդակցում: Չգիտեին, որ հենց այդտեղից պետք է սկսվեր մեծ վերակառուցումը:

— ...Այստեղ կբարձրանա նոր մասնաշենքը... Բոլոր բաժանմունքները կկառուցվեն ալյումինից ու ապակուց, հանդերձարաններ կլինեն, բանվորները կնստեն փափուկ թիկնաթոռներին: Բանվորների թիվը հազարների կհասնի:

Լսեցին, համաձայնեցին, թեպետ շատերը չհավատացին: Այդ հրաշքը պետք է ծնվեր փաստորեն ոչնչից: Ինչպե՞ս, ինչի՞ գնով... Անձնազոհ աշխատանքի: Սարգիս Թումանյանի օրինակը վարակիչ էր, նա վառվում էր իր գաղափարով, գիշեր-ցերեկ չէր հեռանում կառույցից: Նա ինժեներ էր, շինարար, նկարիչ, նաև... գյուղատնտես, որը հետևում էր բակի կանաչ տարածությունների խնամքին ու մշակությանը: Նա սեփական օրինակով էնտուզիաստներ



պատրաստեց: Ծնվեց էնտուզիաստ կոլեկտիվ, ընդհանուրի շահերով ապրող, հավատով լեցուն, երազող մարդը: Այդ մարդն ի վիճակի էր հաղթահարելու ամեն տեսակ դժվարություն ու տեսնելու այն, ինչ չէին տեսնում ուրիշները: Դա հեղափոխական սերնդի պատմության շարունակությունն էր, հեղափոխության շարունակությունը, որ սկիզբ էր առել տարիներ առաջ:

Գուցե ոչ-ոք գործարանում այդ օրերին չէր հիշում կամ խոսում քսանական թվականների սերնդի մասին, բայց նրանց երակներում հոսում էր նույն արյունը: Ու նրանք այլ կերպ չէին կարող վարվել: Հետո միայն հիշեցին. քսանական թվականներին էր... Հանրապետության նոր վերելքը, նրա նոր դրոշը ոգևորության ու ստեղծագործական կյանքի հզոր թափ էին առաջացրել:

Հայ ժողովուրդը նոր կարգերի շնորհիվ ձեռք էր բերել մի անգնահատելի նվաճում— ստեղծվել էր Սովետական Սոցիալիստական պետությունը: Լենինյան գաղափարների դրոշակակիրներն էին կանգնել նորաստեղծ պետության, նրա կառավարության գլուխ՝ գործի վերածելու Իլյիչի պատգամները— էլեկտրիֆիկացիա, ոռոգում... Ահա նրանք՝ Սարգիս Լուկաշինը, Ալեքսանդր Մյասնիկյանը, Ասքանազ Մռավյանը, Սերգո Մարտիկյանը, Սարգիս Կասյանը, Աշոտ Հովհաննիսյանը, Պողոս Մակինցյանը, Արտաշես Կարինյանը և ուրիշներ, կառավարական երկհարկանի, սև տուֆաշեն շենքում հավաքված, երազում, ծրագրում են Հայաստանի պայծառ գալիքը: Նրանցից շատերը չկան հիմա. չկան, բայց հուշ չեն դարձել: Նրանց նախագծումների, երազանքների մարմնացումը, մեծ գործերի հուշարձանն են մեր երկրի բազմաթիվ գործարանները, կուլտուր-գիտական հաստատությունները, առաջավոր արդյունաբերության ու գյուղատնտեսության, ծաղկած կուլտուրայի երկիր դարձած մեր նոր հայրենիքը: Ինդուստրիալ և վերածնված Հայաստանը լենինյան գվարդիայի անձնվեր գործիչների դավանած գաղափարների հավերժական կոթողն է:

Երևանի ստվերախիտ բակերից մեկում՝ բացօթյա «ակադեմիայի» ջրավազանի մոտ, 1923 թվականին հավաքվում ու երազում էին Ալեքսանդր Թամանյանը, Մարտիրոս Սարյանը, Եղիշե Չարենցը, Ալեքսանդր Սպենդիարյանը և ուրիշներ: Երազում էին, վաղվա, մյուս օրվա անելիքները ծրագրում: Մեկը մշակում էր Երևանի գլխավոր հատակագիծը, մյուսը երաժշտանոց ստեղծելու և նվագախումբ ունենալու խնդիր էր դնում, երրորդը՝ բանվորներ հավաքագրում մշակույթի պալատի շինարարության համար:

Նրանք մեր անտիտղոս ու անկոչում առաջին ակադեմիկոսներն էին, որ կյանք տվին իրենց երազանքներին, վաստակելով առաջնեկների, նախակարապետների պատվավոր կոչումը: Դա կյանքի նկատմամբ մարդու նոր վերաբերմունքի հաղթանակն էր, սերնդե-սերունդ, ավանդաբար փոխանցվող հաղթանակը:

Հիմա ո՞վ կարող է հավատալ, որ «էլեկտրոն» հսկա գործարանի տեղում տասը տարի առաջ խառնաշփոթ բարաքներ էին, ցաք ու ցրիվ մի մեծ բակ:

Այսպիսին է նոր մարդը. նա ամեն տեղ թողնում է իր ակնբախ հետքերը, անցնում երկրով մեկ և գործով ու արարչություններով տարածում իր համբավը: Հարցրե՛ք այդ գործերի մասին Վարշամ Ազարյանին, ու նա ձեզ կպատմի, թե ինչ է նշանակում հավատալ ու սիրել աշխատանքը: Քառասուն տարին նոր է բոլորել, բայց արդեն քսաներկու տարվա շինարար է: Նրա ոտնահետքերը կանգուն շենքերն են Ղափանում, հազարավոր բնակարաններ, ուր ապրում են մարդիկ, ծնվում նորանոր պատմություններ: Ջուր մի՛ հարցրեք իր մասնա-

գիտության մասին. չի կարող պատասխանել: Նա ծեփագործ է, հյուսն, քարտաշ, պատշար վարպետ, ամեն ինչ է ու, առաջին հերթին՝ մարդ, հայրենի հողը սիրող ու գնահատող: Հիշում է Վարշամը ծանր օրերը, երբ հողը գնում էր ոտքերի տակից, ցնցվում լեռնաշխարհը: Երկրաշարժի ծանր հարվածները շատերին հանել էին հավասարակշռությունից. խուճապահար մարդիկ դուրս էին ելել կիսավեր տներից ու... ապաստան էին որոնում: Վարշամը չթողեց տեղամասը: Նրա ընկերները նույնպես շարունակեցին աշխատանքը: Որքան ուժեղանում էին ստորգետնյա ցնցումները, այնքան եռանդով էին աշխատում նրանք: Մարդկանց բնակարան էր պետք՝ շտապ, շուտ, ապահով... Մի՞թե դա պայքար չէր, մի՞թե դա հեղափոխության շարունակությունը չէր այսօր՝ մեր գործերում, մեր վարքագծում, մեր կյանքում: Երբ հանդարտվեց երկրաշարժը, Վարշամը՝ շինարարների բրիգադավարը, գրեց իր ծոցատետրում.

«Երկրաշարժի դեմ կռվելն իսկական ռազմաճակատ էր, պատերազմ: Այրեն բրիգադիս աշխատողները՝ Արկադի Սողոմոնյանը, Ռազմիկ Բալասանյանը, Յուրիկ Ծատուրյանը, Մարտուն Հակոբյանը, Արամայիս Նազարեթյանը, Ալավերդի Նազարովը, Վարդուշ Գաբրիելյանը, Արամայիս Մովսիսյանը, Ալի Բաղալովը. նրանք լավ զինվորներ են, հերոսներ»:

Նոր մարդը փշրեց այն բոլոր կապանքները, որոնք խանգարում էին նրա առաջընթացին: Նա սիրեց գիտությունը, աշխատանքը, սիրեց... մարդուն: Ու ոչ-ոք չզարմացավ, որ տարիներ առաջ Կիրովականի ինժեներները քաղաքում հիմնեցին երկամյա ինստիտուտ և հասարակական կարգով ինժեներական գիտելիքներ հաղորդեցին հարյուրավոր բանվորների: Սկսվեց նոր շարժում, ծնվեց բանվոր-ինժեները: Մշակվեց հարաբերության նոր չափանիշ, առավել ընդգծված դրսևորվեց այդ նորի բովանդակությունը: Սա նախկին շինովնիկ-վարչարար ինժեները չէ, որ վախենում է իր իմացածը տալ ուրիշին՝ իր եկամտից ու մենաշնորհից չզրկվելու համար: Սա հին բանվորը չէ, որ խոնարհաբար ծառայում է ուրիշին: Բանվորը համարձակ՝ գիտելիքների է ձգտում, և այդ գործում նրան առաջին հերթին օգնում է ինժեները: Տարիներ անց նույն արտադրամասում, որպես հավասար կոլեգաներ, իրար կողքի կանգնում են ինժեներն ու նախկին բանվորը: Ավելին, այդ բանվորը հասարակական կյանքի ինչ-որ բնագավառում ինքն է օգնում, խորհուրդներ տալիս ինժեներին:

Նոր բանվորը, շինարարը դառնում է մի Գառնիկ Մանասյան, որ հայրենական պատերազմում կորցնելով հորը (մոր մահից հետո չորս եղբայրների ու քույրերի հետ մնալով որբ) իր մեջ ուժ է գտնում, նրան ուժ են տալիս՝ ոտքի կանգնելու: Ու ոտքի կանգնեց, ընդունվեց պրոֆտեխնիկական ուսումնարան, եկավ կառույց: Հիմա անվանի շինարարը, Լենինի շքանշանակիրն ու ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատը անդադրում շենացնում է Քաջարանը, վայելելով մարդկանց հարգանքը:

Մարդը քայլում է մայր հողի վրա ու ամեն տեղ թողնում իր ոտնահետքերը: Դրանք նրա գործերն են, արարչությունները. նա աշխատում է, որ միշտ շեն մնա մեր օջախ-հայրենիքը, որ միշտ բարձր ծածանվի մեր նոր դրոշը, ու ժողովուրդը համարձակ նայի իր ճակատագրին: Այդ մարդը իր բազուկներով ու քրտինքով կառուցում է մեր կյանք-հուշասյունը՝ միշտ կանգուն, հավերժող:





Կ. ՏՈՆՈՅԱՆ

# ԼՈՒՅՍԻ, ՀՈՒՅՍԻ ՀԱՅՐԵՆԻՔ

*Ինչ ցնորք էր քեզ թվում դեռ երեկ՝*
*Տվեց լենինյան հաղթանակը քեզ:*
Ե. ՉԱՐԵՆՑ

Մենք թռանք Վնուկովոյից: Օրն արևոտ էր, օրը պարզ, և ինքնաթիռից ցած անծայրածիր տարածված էր կանաչ, ջրառատ և խիտ բնակեցված երկիրը: Հարևանս, արդեն ծերացած, սակայն թուխ դեմքի թարմությունն ու կեցվածքի կգաստությունը պահպանած և կանոնավոր հագնված մի մարդ, հարցրեց ինձ.

— Դուք հա՞յ եք:

— Հայ եմ,— ասացի:

— Խոսենք, ուրեմն, հայերեն, ծանոթներ ըլլանք. Խաչատուր Ցավորյան:

Զրուցեցինք: Իգդիրցի է, ռուսական, ապա դաշնակցական բանակի կազմում կռվել է թուրքերի դեմ, նահանջել մինչև Ղարաքիլիսա, այդտեղից անցել Բաթումի, այնտեղից՝ արտասահման՝ Արգենտինա: Նկարչության ուսուցիչ է ծերունին և գալիս է Հայաստան՝ նրա կուլտուրային ծանոթանալու:

— Հայաստանին կարոտե՞լ եք,— հարցնում եմ:

— Օ՜, շատ: Հիսուն տարի չեմ եղել այնտեղ:

Եվ Ցավորյանի հիշողության մեջ Հայաստանը մնում է այնպես, ինչպես վերջին անգամ տեսել է հիսուն տարի առաջ— ծայրահեղ աղքատության ու քայքայման հասած երկիր, սովից ու համաճարակից մեռնող ժողովուրդ և ոչ մի հոգեկան կյանք, ոչ մի խինդ, բերկրանք:

— Դա հոգեվարք ապրող ժողովուրդ էր:

Դաշնակների տիրապետությունը նա համարում է ազգակործան ավանդույթներից մեկը:

— Հիսուն տարի առաջ, երբ թողնում էի Հայաստանը, համոզված էի, որ մեր ժողովուրդն այլևս դատապարտված է մահվան: Բայց հետո եղավ հրաշքը, Հայաստանն ապրեց:

Նա շարունակ խոսում էր այն տարիների մասին, կարծես նրա ողջ կյանքը խտացած էր անցյալում, և ինքն Արգենտինայում չէր ապրել: Ես զգացի տարբերությունն իմ և նրա միջև: Իմ կյանքը շարունակվել էր նաև հետո, ամբողջ հիսուն տարի, և այդ տարիներից ես նրան շատ բան ունեի պատմելու:

Ինքնաթիռը մեզ տանում էր դեպի Արարատի կապտավուն լանջերը, դեպի իմ հնամենի, վարդագույն քաղաքը: Այն օրերին մենք երկուսս էլ այնտեղ էինք, ստածուց վաղուց մոռացված մեր երկրում, զուցե իրարից ոչ շատ հեռու:

— Իսկ հիշո՞ւմ եք, թե ինչպես դաշնակցական մինիստրին ու նրա կնոջը մաուզերիստները օրը ցերեկով Աստաֆյան փողոցում կառքից վար բերին:

— Հիշում եմ:

Մենք ծիծաղում ենք: Այդ մասին չէր, որ պիտի պատմեի: Նրան հետաքրքրում է Հայաստանի այսօրվա կուլտուրան: Նա մտադիր է այդ մասին մի հոդվածաշար գրել հայկական մամուլում:

— Կհիշե՞ք, թե ինչպես Ալեքսանդրապոլի կայարանում դինամիտով ու վառոդով բեռնված գնացքը պայթեց...— հարցնում է նա:

Նրա հետ քաղաքում շրջելուց առաջ կուզեի թափառել այդ անցած օրերի թախծոտ հուշերում, մտաբերել... Ահա ինքնաթիռը պատրաստվում է վայրէջքի:

Արդեն պարկորոշ երևացող այս կավոտ հողի վրա դոփել են դեռ հկորակոր Արգիշտիի բրոնզապատ ռազմիկները... Մենք թերթում ենք դաշնակցական թերթերի ու փաստաթղթերի դեղնած էջերը. «Երևան կայարանում գտնվող գաղթականների վիճակը սարսափելի է: Մի շաբաթից ավելի է ոչ սնունդ են ստանում, ոչ հաց: Կայարանի շրջակայքում, այնտեղ, ուր կանաչ կա, մարդիկ անասունի պես արածում են... Երևան կայարանի պարետ՝ պրապորշչիկ Դավիդյանց»: Ալեքսանդրապոլի քաղաքագլխի նամակը դաշնակցական կառավարության նախագահին. «Մենք պատերազմում ենք առանց ալյուրի, կենքի և դեղորայքի... Բնակչությունից խլվում է վերջին հոգապահուստ ալյուրը... Գավառի երիտասարդությունը թուրքերի կողմից քշվել է գերության և նահատակվել է սարսափելի տանջանքներից...»: «Ժողովուրդ» թերթի հաղորդումը Կոշ գյուղի վիճակի մասին. «Մինչև պատերազմը գյուղում ապրում էր 1450 հոգի, նրանցից 903-ը մահացան սովից... Առանց բողոքի ու հառաչանքի մյուսները գնում են իրենց մերձավորների ճանապարհով... Ո՞վ ուշադրություն կդարձնի այսպիսի հեռավոր վայրում ընկած գյուղին, ո՞վ կհասնի Կոշ, որպեսզի նայի կենդանի ուրվականներին, նրանց թշվառությանը և բոլորովին քարուքանդ եղած գյուղին...»: Իսկ հոգևոր կյանքն խսպառ մեռած էր: Հոգևոր կյանքը մի ժողովրդի, որ պատմության ամենամութ երթուղիներով անցնելիս, իր հոգու չգիտես ո՛ր առեղծվածային անկյունում միշտ պահել է մի լույս, մի երազ, որպեսզի հետո, երբ բռնակալ ձեռքը նրանից փոքր-ինչ ետ քաշվի՝ վառի այն որպես կանթեղ, լուսավորի իր և հարևան ազգերի ճանապարհը, որպեսզի պատմության շատ սակավ ու կարճատև խաղաղ պահերին կառուցի Զվարթնոց ու Հռիփսիմե, գրի «Մատյան ողբերգության» և «Եղծ աղանդոց»: Այս ժողովրդի հոգևոր կյանքը թվում էր իսպառ մեռած:

Փակվել էին կուլտուրական առանց այդ էլ սակավաթիվ հաստատությունները: Եղած մի քանի տասնյակ դպրոցները թշվառ վիճակում էին, շենքերը՝



խարխլված, ապակիները՝ ջարդված, երեխաները՝ կիսամերկ, չկային ուսումնական պիտույքներ: Դասատուներն ամիսներով աշխատավարձ չէին ստանում և ապրում էին կիսաքաղց: Ժողովրդի ավելի քան 80 տոկոսն անգրագետ էր: Դաշնակների ամբողջ տիրապետության ընթացքում Հայաստանում տպագրվեցին մի քանի գիրք: Երկրում իշխում էին մաուզերն ու թալանը:

Այս ժողովրդի կենսունակության մասին առասպելներ են պատմում: Նրան համեմատում են մոխիրների միջից հառնող փյունիկի հետ: Ի՞նչ ուժ կարող էր այդ օրերին նրան նորից ոտքի կանգնեցնել, կենդանություն պարգևել: Այդպիսի ուժ եղավ Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունը: 1920 թվականի նոյեմբերի 29-ին Իջևանի և Դիլիջանի շրջանների աշխատավորությունը բոլշևիկների ղեկավարությամբ ապստամբեց: Ռուսական բոլշևիկների օգնությամբ Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն: Սարգիս Կասյան, Ավիս Նուրիջանյան, Ալեքսանդր Բեկզադյան, Իսահակ Դովլաթյան, Ասքանազ Մռավյան, Սահակ Տեր-Գաբրիելյան, Աշոտ Հովհաննիսյան, Հայաստանում նրանք առաջինը պարզեցին սովետական իշխանության կարմիր դրոշը: Հայաստանի սովետական կառավարության կազմի մեջ են՝ Ալ. Մյասնիկյանը, Ս. Լուկաշինը, Ա. Մռավյանը, Պ. Մակինցյանը, Ա. Կարինյանը, Ա. Երզընկյանը, Ալ. Բեկզադյանը, Ս. Խանոյանը, Ա. Խաչյանը, Ս. Համբարձումյանը, Դ. Տեր-Սիմոնյանը, Ալ. Շահվերդյանը: Նրանց հատուկ էր շիտակությունը, անվեհերությունը, աննկուն հավատը, հանուն այդ հավատի կռվելու պատրաստակամությունը և մարդկային բարձր կուլտուրան: Նրանք հենց այն հեղափոխական գործիչներից էին, որոնց այսօր մենք մեծ ակնածանքով անվանում ենք իսկական լենինյան: Տակավին քաղաքացիական կռիվների թոհուբոհում, տակավին քայքայված ու կազմալուծված տնտեսության վերականգնման անհամար դժվարություններում, սովյալ ու հյուծված ժողովրդի հոգսերով ծանրաբեռն, նրանք ամենաառաջնահերթ խնդիրներից մեկը համարեցին նոր Հայաստանի սոցիալիստական բարձր կուլտուրայի ստեղծումը: Իրենց բազմազբաղ օրերում նրանք գտնում էին ժամեր՝ զրուցելու որևէ գրողի, դերասանի, գիտնականի, արվեստագետի հետ: Կարևորագույն, անհետաձգելի, անհամար գործերում նրանք չէին մոռանում կանգահարել, տեղեկանալ՝ «Իսկ ինչպե՞ս է իրեն զգում այսինչ գրողը...», «Այսինչ գիտնականը ապահովվա՞ծ է, արդյոք, վառելիքով...»: 1921 թվականի դեկտեմբերի 1-ին, Բաքվի սովետի հանդիսավոր նիստում, Սերգո Օրջոնիկիձեն ասաց. «Մենք գիտենք, ընկերնե՛ր, թե որքան դժվար է սովետական իշխանություն կառուցել: Է՛լ ավելի դժվար, միլիոն անգամ ավելի դժվար է կառուցել այդ իշխանությունն այնտեղ, տանջված, հոշոտված Հայաստանում, որը համարյա վերածվել է գաղթականների հանրապետության...»: Սակայն այն, ինչ տեղի ունեցավ հետագա 3—4 տարում, մանավանդ նոր կուլտուրայի ստեղծման ասպարեզում, նման էր հրաշքի:

Հայաստանում կուլտուրական կյանք ստեղծելու համար առաջին հերթին անհրաժեշտ էր մտավորականություն: Հայ մտավորականությունը ցրված էր Ռուսաստանով, Եվրոպայով մեկ: Նրան հայրենիք վերադարձնելու, սոցիալիզմի կառուցման գործին մասնակից դարձնելու խնդիրն իր առջև դրեց բոլշևիկյան նոր կառավարությունը: Նրա հրավերով եկան և Արարատների մոտ, այս հնամենի կավաշեն քաղաքում հավաքվեցին Ալեքսանդր Սպենդիարյանը, Ավետիք Իսահակյանը, Մարտիրոս Սարյանը, Ալեքսանդր Թամանյանը, Վահրամ Փափազյանը, Ստեփան Զորյանը, Ռոմանոս Մելիքյանը, Հասմիկը, Թորոս Թորոմանյանը, Եղիշե Թադևոսյանը, Հակոբ Կոջոյանը, Իսահակ Ալիխան-

յանը և շատ ուրիշներ: Շինելի վրայից քաղաքացիական կռիվների փոշին թափ տալով՝ լուսավորության կոմիսարիատ մտավ Եղիշե Չարենցը:

Մի քանի տարում հայրենիքը համախմբեց իրականավոր գիտնականներին նորաբաց համալսարանի շուրջ: Նոր սերնդի դաստիարակության ու գիտության կարգացման գործին լծվեցին՝ Հակոբ Մանանդյանը, Մանուկ Աբեղյանը, Հրաչյա Աճառյանը, Արսեն Տերտերյանը, Գրիգոր Ղափանցյանը, Աշոտ Հովհաննիսյանը, Հայկ Ակատյանը, Լեոն, Պապա Քալանթարյանը, Հովհաննես Նավակատիկյանը, Գրիգոր Արեշյանը և ուրիշներ... Նրանցից շատերը գիտություն ու արվեստ էին ուսանել Եվրոպայի ու Ռուսաստանի խոշորագույն համալսարաններում. նրանց հատուկ էր գիտական խորիմացությունը, բարձր կուլտուրան: «Հին» մտավորականի իրենց աշխարհընկալմամբ նրանցից ոմանք չէին համակրում բոլշևիկներին. «Այդ մարդիկ ամեն ինչ գլխիվայր շրջեցին, տակնուվրա արին»: Նրանցից ոմանք ամենևին չէին մասնակցում ժամանակի մեծագույն պատմական իրադարձություններին: Բայց նրանց բոլորին այս հինավուրց նահանգական քաղաքն էր բերել մի կգացում— ուժերը ներածին չափով նպաստել հարազատ ժողովրդի կուլտուրայի հարության ու վերելքին: Եվ նրանք դարձան հայ ազգի նորագույն վերածննդի գործիչները: Այսօր էլ հիացմունք է պատճառում նրանց գիտական ու հասարակական գործունեության արտակարգ արգասավորությունը, կարմացնում է նրանց սխրալի աշխատանքը: Հողե պատեր ու տանիք ուներ նրանց առաջին բնակարանը, անձրևներին կաթում էր, իսկ գիշերները նրանք աշխատում էին նավթի լամպի լույսով: Եվ Եվրոպայից բերած սև սերթուկի ուսերին նստում էր երևանյան դեղին, արևոտ փոշին, և սև սերթուկի ուսերը գորշանում էին:

Իսկ բոլշևիկները համառորեն առաջ էին տանում կյանքը: «Կորչի՜ անգրագիտությունը», համարձակ ու վստահ հռչակում էին նրանք: Եվ գյուղերում ու քաղաքներում սունկերի նման բուսնում էին լույսի բազմաթիվ մանրիկ օջախներ— անգրագիտության վերացման կայանները: Արդեն 1925 թվականին կային անգրագիտության վերացման մոտ 500 կայան՝ 15790 սովորողով: Մի քանի տարիների ընթացքում մեր նորաստեղծ երկիրն ունեցավ գիտության և արվեստի ինստիտուտ, կոնսերվատորիա, մանկավարժական ու գեղարվեստական ուսումնարաններ, պետական հանրային գրադարան, մատենադարան, ուր ժողոված է բազում ավերներից, ավարից փրկված մեր գրավոր կուլտուրան, նույնիսկ ավազի վրա գրվող այբուբենի միջոցով սերնդե-սերունդ ավանդվող մայրենի գիր ու տառով ստեղծվածը, որի մասին հետագայում այնպիսի ջերմ, հիացական տպավորություններ պիտի թողնեին մեր ազգակից և օտարերկրյա այցելուները:

Ապա Հայաստանն ունեցավ իր պետական հրատարակչությունը, պետական թանգարանը և պետական դրամատիկական թատրոնը. իսկական սոցիալիստական կուլտուրական հեղափոխության սկիզբն էր դա, հեղափոխություն, որը հատկանշվում էր ոչ թե ճոճռան շաղակրատանքով, այլ ամենաիսկական, ամենաանհրաժեշտ և ամենակենսական գործով: Դա լենինյան գվարդիայի աշխատանքային ոճն էր: Աշխատանքից հետո, «Գրագիտություն» այբբենարանը թևի տակ, բանփակ էր շտապում բանվորը, լիկկայան՝ գյուղացին:

Բացվեցին բազմաթիվ դպրոցներ: Ճիշտ է, դրանք չունեին համապատասխան գույք, կզացվում էր գրենական պիտույքների խիստ պակաս, չկային դասագրքեր, աշակերտները կիսաքաղց էին... բայց կար այն հեղափոխական ոգևորությունն ու խանդավառությունը, վաղվա նկատմամբ հաստատ հավատը, որը բոլոր պայմաններում կարող էր հրաշքներ գործել:



Սովետական իշխանության հաստատումից մի քանի շաբաթ հետո բացվեց Երևանի պետական համալսարանը, որը դարձավ հանրապետությունում բարձրագույն կրթության կարգացման հիմքը: Ճիշտ է, այդ համալսարանն վուրկ էր պարապմունքերն անցկացնելու տարրական հարմարություններից, երբեմն հարկ էր լինում նստել ցուրտ լսարաններում, իսկ ուսանողների մեծամասնությունը կրում էր հասարակ, կապույտ սատինե վերնաշապիկ:

Սակայն, կատարվել էր հրաշքը, և առաջին անգամ հայը հնարավորություն ունեցավ հայրենիքում բարձրագույն կրթություն տալու իր զավակներին: Ուսանողական թաղամասում գտնվող եռահարկ սև շենքը շատ փոքր էր մեր ուսումնածարավ երիտասարդության համար, և սրանից մի քանի տարի առաջ Չարենցի փողոցում կառուցվեց համալսարանի նոր շենքը՝ իր մի շարք կորպուսներով: Այսօր այնտեղ սովորում են 12000 ուսանող:

Համալսարանի մի քանի ֆակուլտետներ հիմք հանդիսացան հետագայում բացված պոլիտեխնիկական, բժշկական, գյուղատնտեսական ու մանկավարժական ինստիտուտների համար, որոնց շրջանավարտներն աշխատում են մեր հանրապետության և Միության ժողովրդական տնտեսության, առողջապահության, լուսավորության, գյուղատնտեսության և այլ բնագավառներում: Երևանը դարձավ բարձրագույն կրթության խոշոր կենտրոն, որի ուսումնական հաստատություններում սովորում են ո՛չ միայն Հայաստանի քաղաքների ու գյուղերի երիտասարդությունը: Վերջին տարիներին Հայաստան սովորելու են գալիս նաև արտասահմանյան երկրներից— Արաբական Միացյալ Հանրապետությունից, Սիրիայից, Իրաքից, Աֆղանստանից, Կուբայից:

Բոլշևիկներն, ինչպես հարկն է, հարգում, գնահատում էին «հին, իսկական» մտավորականությանը, միաժամանակ վստահ, որ՝ «...այսօր չունենք, բայց վաղը անպայման կունենանք մեր իսկական բանվորա-գյուղացիական, պրոլետարական մտավորականությունը»: Եվ ունեցան: Իսկ «հինն» սկսում էր համակրել բոլշևիկներին և, հանդիպելով Աբովյան փողոցի նորատունկ ծառերի տակ, հին պրոֆեսորներն ասում էին միմյանց. «Բոլշևիկները, այո՛, իսկապես գործեր են անում...»:

Ինքնաթիռը վայրէջք է կատարում: Հիմա ես շատ հոգնած եմ, և վաղն ինձ անհետաձգելի գործեր են սպասում, բայց ես կշրջեմ նրա հետ, ցույց կտամ, կպատմեմ... Աստիճանների ցածում, մի ձեռքին ճամպրուկ, մյուսն ինձ մեկնած, մոտենում է Խաչատուր Յավորյանը:

— Ես չհասցրի մաղթել ձեզ բարի...

— Բարի այցելություն և հաջողություն, շրջեցեք մեր քաղաքում, եղեք ամենուր, ծանոթացեք: Համոզված եմ, որ գոհ կմնաք,— ասում եմ ես հաստատ համոզմամբ, վստահ:

Հիմա 1970 թվականն է: Մենք ոտք ենք դնում մի հողի վրա, ուր յուրաքանչյուր չորրորդ մարդը սովորում է, ուր յուրաքանչյուր տասը հազար բնակչի հաշվով 2,5—3 անգամ ավելի շատ ուսանող կա, քան Անգլիայում, Ֆրանսիայում, ԳՖՀ-ում և Իտալիայում: Դաշնակցական տիրապետության ժամանակ դպրոցներում սովորող մոտ 15 հազար երեխայի փոխարեն, Հայաստանի հանրակրթական դպրոցներում այժմ սովորում են 612 հազար երեխա: Դպրոցների

համար կադրեր են պատրաստում մի քանի մանկավարժական ինստիտուտ ու մանկավարժական ուսումնարան: Ուսուցչի մասնագիտությունն այս երկրում ամենահարգիներից է: Համատարած գրագիտության, առաջավոր գիտության, հզոր ինդուստրիայի և ծաղկող կուլտուրայի երկիր է այսօր Հայաստանը:

Արգենտինահայ Խաչատուր Յավորյանի հետ ես անցնում եմ Երևանի պողոտաներով: Հին Երևանից խղճուկ բեկորներ են մնացել՝ քաղաքի ինչ-որ թաղամասերում: Անցնում ենք լայն, գեղեցիկ փողոցով. սա Բարեկամության պողոտան է, պատմում եմ ես իմ ազգակցին: Ահա Հայաստանի գիտությունների ակադեմիան: Մի քանի տասնյակ գիտական հիմնարկներ է միավորում այն: Այստեղ գիտական հետազոտություններ են տարվում արդի գիտության ամենաբազմազան ճյուղերում: Հայկական ակադեմիայի գիտական շատ նվաճումներ հայտնի են ողջ ՍՍՀՄ-ում և նրա սահմաններից դուրս: Ընդհանրապես 100-ից ավելի գիտահետազոտական հիմնարկություններ ունի այսօր Հայաստանը: Դա նշանակում է, որ միջին հաշվով, ամեն տարի մեր հանրապետությունում ստեղծվել է ո՛չ պակաս, քան երկու գիտահետազոտական հաստատություն: 72 ակադեմիկոս և ակադեմիայի թղթակից անդամ ունենք մենք այսօր, գիտության 400 դոկտոր և 2700՝ թեկնածու:

Հայաստանի գիտնականներն ուսումնասիրում են ժողովրդական տնտեսության կարգացման, կուլտուրայի հետ սերտորեն կապված, ինչպես և միութենական ու համաշխարհային նշանակություն ունեցող բազմաթիվ հարցեր:

Սովետականացումից տարիներ անց Հայաստանն ունեցավ իր կանգվածային նոր մտավորականությունը և աշխարհին ծանոթ այնպիսի համբավավոր գիտնականներ, որպիսիք են՝ Օրբելի և Ալիխանյան եղբայրները, Վ. Համբարձումյանը, Ն. Սիսակյանը, Ս. Մերգելյանը, Ա. Շահինյանը, Ա. Մնջոյանը և ուրիշներ: Հայաստանն ունեցավ ինժեներների, ճարտարապետների, արվեստի ու գիտության գործիչների իր նոր բանակը: Չարենցին, Բակունցին հաջորդեցին բազմաթիվ տաղանդավոր բանաստեղծներ ու արձակագիրներ:

Հայաստանը, որ սովետականացման առաջին տարիներին այնպես կարիք ուներ մտավորականության, այժմ ամեն տարի գիտնականներ է ուղարկում արտասահման. Նրանք մեկնում են ո՛չ միայն ուսումնասիրելու արտասահմանյան կոլեգաների առաջավոր փորձը, այլև հրավիրվում են՝ դասախոսություններ կարդալու Եվրոպայի և Ամերիկայի համալսարաններում: Արտասահմանից ժամանող գիտնականներն օգտակար, ուսանելի շատ բան են գտնում սովետահայ կոլեգաների աշխատանքային փորձում:

Ամեն առավոտ քաղաքի տարբեր մասերից հազարավոր երիտասարդներ են գալիս քաղաքի այս թաղամասը: Ամբողջ կարողությամբ աշխատող քաղաքային տրանսպորտն այդ ժամին դժվարությամբ է հասցնում տեղափոխել ուսանողների հախուռն հոսանքը դեպի քաղաքի այս մասը: Մոտ 100 հազար ուսանողներ են սովորում այսօր մեր բուհերում ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում: Ուշադրություն դարձրեք՝ դաշնակցական տիրապետության ժամանակ Հայաստանը չուներ ո՛չ մի ուսանող: Ժամանակակից արվեստի, գիտության ու տեխնիկայի գրեթե բոլոր ճյուղերի մասնագետներ են պատրաստում մեր միջնակարգ ու բարձրագույն ուսումնական հաստատությունները:

Ահա մամուլի տունը՝ քաղաքի կենտրոնում. տպագրական պատշաճ բազայով, պոլիգրաֆ կոմբինատով: Դաշնակներից մեկ ժառանգություն մնաց երկու տպագրական մեքենա, ոչ մեծ քանակությամբ մաշված տառեր և ընդամենը 15 տպագրիչ բանվոր: Այսօր միայն Երևանում գործում են 6 խոշոր տպարան, հանրապետությունում հրատարակվում են 83 թերթ, 100 ամսագիր և տարեկան ավելի քան 1000 անուն գիրք: Մարդաշատ են բազմաթիվ գրախանութները, ինչպես և պարենային ու արդյունաբերական խանութները: Ամեն առավոտ հերթեր են մամուլի կրպակների առջև:

— Առավոտ կանուխ, երբ տեսա լրագրավաճառի կրպակին առջևի երկար հերթը, մեր ազգին բզկում ցավերով տառապող մեծ երգիծաբանին 3 ոսկիով ջուն առնող մեծահարուստը հիշեցի և Պարոնյանին խոսքերը. «Մեր հարուստներն ամեն բանի ստակ կուտան, բացի լրագիրներե և գիրքերե»: Կենդանի ըլլար, տեսներ սա հերթերը և ուրախանար:

Տպագիր խոսքը, գիրքը, մեր ժողովրդի համար դարձել են կենսականորեն անհրաժեշտ հոգևոր սնունդ:

Գեղարվեստը մեզանում ընդունել է իսկական մասսայական բնույթ: Հարյուրավոր նկարիչների ու քանդակագործների ստեղծագործությունները պարբերաբար ցուցադրվում են մշտական գործող ցուցահանդեսներում: Անցյալի արվեստին ծանոթանալուն, գեղարվեստական բարձր ճաշակ կարգացնելուն նպաստում են տասնյակ թանգարանները, պատկերասրահները: Գեղարվեստի ցուցահանդես, պատկերասրահ հաճախելը մեր աշխատավորի համար դարձել է նույնպիսի անհրաժեշտություն, ինչպես՝ կինոն կամ թատրոնը:

Մասսաների շրջանում կուլտուրայի տարածման, նրանց գեղարվեստական հակումների բավարարման, կուլտուրական հանգստի կազմակերպման իսկական օջախներ են դարձել մեր գործարաններում, գյուղերում, ավաններում ու քաղաքներում գործող հազարավոր ակումբները, կուլտուրայի պալատներն ու տները:

Պատմության գիրկն է անցել հին, բարի խրճիթ-ընթերցարանը, ուր գյուղացին գնում էր՝ գիրկապ անելով կարդալու օրաթերթի վերջին ուշացած համարը: Հազարավոր մասսայական գրադարաններ այսօր գիր ու գրականություն են մատակարարում մեր ընթերցասեր հասարակությանը և տակավին չեն սպառում նրա աճած պահանջը:

Պրոֆեսիոնալ արվեստի աննախընթաց կարգացմանը զուգահեռ, որպես նրա առողջ, կենարար համալրում, դեռ սովետական կարգերի առաջին տարիներից իր գանձերը բացեց և գնալով ավելի բուռն ծաղկեց իսկական ժողովրդական կազմակերպված արվեստը՝ գեղարվեստական ինքնագործունեությունը: Արվեստի կազմակերպման այս ձևը մեզանում այնպիսի չափեր է ընդունել, որ այսօր դժվար է որոշել՝ որտեղ է վերջանում ժողովրդականը, և որտեղից է սկսվում պրոֆեսիոնալը:

Երեկո է, և մենք հասել ենք Կոմունարների գեղեցիկ այգում գտնվող Սունդուկյանի անվան պետական դրամատիկական թատրոնին:

— *Արա գեղեցիկ*. մտնենք, եթե կհաճեք:

— Այսքան ճոխ լեզու, պատմական անցյալի այսքա՜ն վառ ու հարազատ արտացոլում, հայրենասիրության այսպիսի ոգեկմայլ ցուցադրում բնավ չէի պատկերացներ,— հուզմունքից կերկերուն ձայնով ասում էր ազգակիցս երբ դուրս եկանք թատրոնից:

Իսկ մի քանի օր անց, Երևանը և նրա շրջակա՝ քաղաքից այնքան էլ չտարբերվող գյուղերն ու ավանները, շատ գործարաններ ու կուլտուրայի օջախներ այցելած արգենտինահայ Յավորյանը, դուրս գալով ժամանակակից կյանքն արտացոլող ներկայացումից, հիացմունքով գոչեց.

— Իրոք որ աշխարհին, այո՛, 50 տարի առաջ շուռ է եկած:

Իսկ երբ օպերայի և բալետի հոյակերտ պետական թատրոնում դիտեց «Խանդութ» ու «Մարմար» բալետները, լսեց «Ալմաստ» ու «Անուշ» օպերաները, նրա բերկրանքը հորդել էր և, ուրախության արցունքով թրջված աչքերով, նա անընդհատ կրկնում էր.

— Երանի իմիններս ամենքն ալ հոս ըլլային, սեփական աչքերով տեսնեին: Ի՞նչ խոսքերով պիտի կրնամ ներկայացնել այս ամենը, և երաժշտասեր, արվեստասեր իմ ժողովուրդին համակ ներշնչանքն ու ոգևորությունը:

«Սովետական Իտալիա»— երեսնական թվականներին կոչեց մեր երկիրը Ռոմեն Ռոլանը: Ի՞նչ կասեր նա հիմա: Հայկական կոնսերվատորիայի կողքին Երևանում և Հայաստանի շատ քաղաքներում ու բանվորական ավաններում, շրջկենտրոններում, գործում են երաժշտական դպրոցներ, միջնակարգ և բարձրագույն ուսումնական շատ հաստատություններ ունեն իրենց երգչախմբերն ու նվագախմբերը: Հայ լավագույն կոմպոզիտորներին, երաժիշտներին, երգիչներին գիտեն և սիրում են ողջ Սովետական Միությունում: Արամ Խաչատրյանի, Առնո Բաբաջանյանի, Ալեքսանդր Հարությունյանի, Էդվարդ Միրզոյանի, Գրիգոր Եղիազարյանի ստեղծագործություններն իրենց կայուն տեղն ունեն մեր Միության, Եվրոպայի և Ամերիկայի սիմֆոնիկ նվագախմբերի համերգացանկերում: Աշխարհի շատ երկրների ցանկալի հյուրն են Կոմիտասի անվան լարային կվարտետը, Հայաստանի պարի անսամբլը: Աշխարհով մեկ մեր երգարվեստի փառքն են տարածում Սովետական Միության ժողովրդական դերասանուհիներ Գոհար Գասպարյանն ու Զարուհի Դոլուխանյանը՝ Լոնդոնում, Փարիզում, Տոկիոյում, Նյու-Յորքում, Պրագայում, Հարավային Ամերիկայի և Մերձավոր Արևելքի շատ մայրաքաղաքներում ունեցած իրենց հյուրախաղերով: Սովետական Միության ժողովուրդներն ամենուր ջերմ սիրով են ունկնդրում Հայաստանի պետական ակադեմիական երգչախմբի համերգները, որի գեղարվեստական ղեկավարն է հանրապետության ժողովրդական արտիստ Հովհաննես Չեքիջյանը:

Ամեն երեկո հարյուր հազարավոր մարդիկ հաճախում են կինո, թատերական, երաժշտական ներկայացումներ: Մշտապես գործում են 11 պետական թատրոն, ավելի քան 600 կինոթատրոն: Ամեն երեկո հարյուր հազարավոր մարդիկ դիտում են հեռուստատեսային հաղորդումները: Հայաստանը վաղուց դարձել է համատարած ռադիոֆիկացիայի երկիր: Պրոֆեսիոնալ դերասանների, ռեժիսյորների, երաժիշտների բազմահազարանոց մի բանակ զբաղված է աշխատավորների կուլտուրական սպասարկմամբ:

Սովետահայ մտավորականություն հասկացողությունն այսօր չափազանց ընդգրկուն է, լայն: Գրողների, նկարիչների, երաժիշտների, դերասանների, ճարտարապետների, գիտնականների, ինժեներների ու տեխնիկների հարյուր հազարանոց հսկայական բանակն է այդ, որն իր ուսերի վրա է կրում մեր հանրապետության կուլտուրական ու տնտեսական առաջընթացի հիմնական հոգսը: Եվ այսօր որոշակի մի սահման տեսնել մտավորականության և ժողովրդական մնացած զանգվածների միջև՝ չափազանց դժվար է: Լենինյան կուլտուրական հեղափոխության մի այլ կարևոր նվաճումն է այս:

Եվ ես պատմում եմ արգենտինացի իմ ազգակցին՝ Խաչատուր Ցավրյանին. սոցիալիստական երկրի յուրաքանչյուր տարին նշանակում է՝ աշխատավորների կուլտուր-կենցաղային կարիքների ավելի ու ավելի լրիվ բավարարում, մեր մարդկանց կենսամակարդակի և կուլտուրայի նոր վերելք: Տարեցտարի բարե-



լավվող կենսապայմանները հնարավորություն են ընձեռում աշխատավորներին՝ ավելի շատ ժամանակ հատկացնելու իրենց կրթական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը, կենցաղում, կյանքում առավել չափով օգտվելու արդի գիտության ու տեխնիկայի շնորհած հարմարավետություններից: Եվ, եթե մեր բանվորը, կոլտնտեսականն իմանում են, որ ընթացիկ՝ 1970 թվականին, բանվորների ու ծառայողների տարեկան միջին աշխատավարձը կավելանա 3, հնգամյակի վերջում՝ 29 տոկոսով, իսկ կոլտնտեսականներինը՝ 1,4 անգամ, երբ նրանք իմանում են, որ բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն այս տարի կավելանան 6,5 տոկոսով, կենցաղային ծառայությունների ծավալը՝ 16,7 տոկոսով, իսկ հնգամյակի վերջում՝ 2,2 անգամ, ընդ որում՝ գյուղական վայրերում համապատասխանաբար՝ 23,4 տոկոսով և՝ 4,7 անգամ, նրանք հավատում են այդ ամենին, համոզված են, որ այդպես կլինի: Երբ մեր բանվորը կամ կոլտնտեսականը կարդում կամ լսում է, թե ընթացիկ տարում քաղաքներում և գյուղերում շահագործման կհանձնվեն մեկ միլիոն 266 հազար քառակուսի մետր տարածությամբ բնակելի տներ, ապա նա անվերապահորեն հավատում է դրան, որովհետև այդպես է եղել և անցյալ տարի՝ 1969 թվականին, և անցյալ 50 տարիներից յուրաքանչյուր խաղաղ տարում: Որովհետև մեր պատմությունն այսօր աշխատավորների կենսական ու կուլտուրական մակարդակի անշեղ բարձրացման պատմություն է:

Մենք եղանք Հայաստանի մի քանի շրջաններում— եղանք Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատում, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանում, Լենինականի մի քանի խոշոր գործարաններում, կուլտուրայի տներում ու պալատներում...

— Այս ամենը եթե չտեսնեի, հրաշք պիտի համարեի, ո՞վ գիտե, թերևս չհավատայի: Ուսումնական այսքա՞ն շատ հաստատություններ, կուլտուրայի օջախներ...

— Ի՞նչ է սա աղվոր շենքը, նորահարսի պես գեղեցիկ այս վայրում:

Արագասույր մեր մեքենան հասել է Արաքսի ափին գտնվող Արմաշ գյուղին: Տարիներ առաջ հայրենի հողի այս մասում ոտք դրեց բոկոտն, ընչազուրկ իրանահայը և կառուցեց իր ունևոր կյանքը նորակերտ գյուղում. իրոք նորահարս. ընդամենը 20—24 տարեկան է այն՝ ջահել, նոր...

— Գյուղի հիվանդանոցն է սա, տեխնիկայի վերջին խոսքով կահավորված: Հիվանդների նկատմամբ ցուցաբերվող հոգատարությամբ, առողջապահական գործի գիտական դրվածքով հիվանդանոցը լայն ճանաչում է գտել ո՛չ միայն մեր հանրապետությունում, այլև ողջ Միությունում: Առողջանալու հավատով լեցուն, այստեղ բուժվելու են գալիս նաև մոտակա շրջաններից: Այն դարձել է մի տեսակ բժշկագիտական թանգարան: Ինչպես մեր ողջ երկրում, Արմաշում ևս պատմության գիրկն են անցել շատ ու շատ հիվանդություններ՝ տրախոման, դիֆտերիան, մալարիան: Եվ այդ ամենը շնորհիվ առողջապահական, բուժսպասարկման գործի լավ դրվածքի, սովետական բժիշկների բազմահազարանոց բանակի, որի շարքերում է և այս հիվանդանոցի հիմնադիրն ու այժմյան ղեկավարը՝ բժիշկ Արսեն Հայրիյանը: Ինստիտուտն ավարտելուց հետո այստեղ է իր գործունեությունն սկսել, ապա գիտական աստիճանի արժանացել նա: Հայրիյանը կազմել է մեծարժեք մի աշխատություն՝ *Հայաստանի գյուղական առողջապահության անցյալը*, որը հստակ պատկերացում է տալիս Սովետական Հայաստանի առողջապահության գործի դրվածքի մասին:

Ատլասն արժանացել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի Ոսկե մեդալին:

Ես պատմում եմ այս ամենը Արգենտինայից եկած իմ ազգակցին ու ինքս հիանում իմ ժողովրդի կուլտուրայով, արվեստով ու գիտությամբ...

Աստեղամետ Արագածի լանջին, Բյուրականի աշխարհահռչակ աստղադիտարանում ենք: Մեսրոպ Մաշտոցի գերեզմանի ուխտավոր ազգակիցս, հմայված տեղանքի վմայլելի տեսարանով, կանգնել է գիտության մեծահամբավ կոթողի առաջ, հպարտ իր ժողովրդի երկնախույզ մտքով, միտք, որին թռիչքի թևեր տվին լենինաստեղծ կարգերը՝ հովանավոր ու պահապան կարգերը:

— Մեր կուսակցությունն ու կառավարությունը բարձր են գնահատում Բյուրականի աստղադիտարանի՝ գիտությանը մատուցած ծառայությունները: Երեք տարի առաջ այն պարգևատրվեց Լենինի շքանշանով, իսկ նրա պետական բարձր մրցանակների արժանացած ղեկավարին՝ Վիկտոր Համբարձումյանին, շնորհվեց Սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում:

Պատմելով մեծ նվաճումների հասած աստղադիտարանի մասին, հիշում եմ իր՝ հանրահռչակ գիտնականի խոսքերը, որոնք տոգորված են պատասխանատվության, իր և աշխատակիցների նկատմամբ խստապահանջության վգացումով, կատարած գործի մեծության խոր գիտակցությամբ:

— Աստղադիտարանի հաջողությունների բարձր գնահատականը միայն կանխավճար է հետագա աշխատանքների համար, իսկ անելիքներ, չլուծված գիտական խնդիրներ դեռևս շատ կան:

Այսպիսին է սովետական մարդը— միշտ հայրենիքին տալիք ունենալու գիտակցությամբ համակված:

Պատմում ու մտածում եմ. այս ամենի հիմնաքարերը դրվեցին դեռևս 1920 թվականի մշուշապատ աշնանը, իմ ժողովրդի մոխրակույտերի վրա. այդ ամենի հիմնաքարերը դրեցին նրանք, ովքեր Հայաստանում առաջինը պարզեցին լենինյան նոր հասարակարգի կարմիր դրոշը: Հայ ժողովուրդը իր հարգանքի ու երախտագիտության արժանին պիտի մատուցի նրանց՝ դեռ եկող շատ ու շատ հարյուրամյակներ շարունակ:


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵՎՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции. — Ереван-33
Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*ՎՖ 03084 Պատվեր 651 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 12600 Գինը 25 կոպ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 3/IV 1970 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյանի փող. № 28:*


